# ՄԵՐ ՀԵՂԻՆԱԿՆԵՐԻՆ

«Լենինյան ուղիով» ամսագրի խմբագրությունը խնդրում է հոդվածներ ուղարկելիս ճշտորեն պահպանել հետևյալ կանոնները. տեսական բնույթի հոդվածները՝ 18 մեքենագրական էջից ոչ ավելի, պրակտիկ աշխատանքը և առաջավոր փորձը լուսաբանող հոդվածները՝ 8—10, նամակներն ու թղթակցությունները՝ 4—6, գրախոսականները և մամուլի տեսությունները՝ 6—8 էջ։

Անդրկովկասի ու Հայաստանի հեղափոխական շարժման թեմաներով գրված և Հայաստանում մարքսիզմ-լենինիզմի տարածմանը նվիրված հոդվածները պետք է ունենան ռուսերեն ամփոփում՝ 8 տողի չափով։

Հոդվածները պետք է մեքենագրված լինեն երկու ինտերվալով, երկու օրինակից, հեղինակի կողմից ստորագրված, նշելով հեղինակի լրիվ անունը, հայրանունը և ազգանունը, հասցեն, աշխատանքի վայրն ու հեռախոսի համարը։ Խմբագրությանը հանձնված հոդվածներից մեկը պետք է լինի մեքենագրվածի առաջին օրինակը։ Հոդվածում անհրաժեշտ է ցույց տալ մեջբերումների և թվական տվյալների աղբյուրները։

Մարքսիզմ-լենինիզմի կլասիկների, կուսակցության և սովետական պետության ղեկավարների, միջազգային բանվորական ու կոմունիստական շարժման ականավոր գործիչների աշխատություններից, պաշտոնական փաստաթղթերի ժողովածուներից վերցված քաղվածքները, վկայակոչումները պետք է լինեն երկերի հատորյակների կամ աշխատությունների հայերեն, իսկ եթե այդպիսիք չկան՝ ռուսերեն վերջին հրատարակությունից։

Տեսական և գիտական բնույթի հոդվածների վերջում պարտադիր է նշել օգտագործված աղբյուրների համառոտ ցանկը։

Սույն պահանջները խախտողների հոդվածները չեն տպագրվի։ Ներկայացված հոդվածն անհետևանք կմնա, եթե այն ամբողջովին կամ հապավումներով հրապարակված լինի մամուլի և ինֆորմացիայի որևէ օրգանում։

Խմբագրությանն ուղարկված հոդվածները չեն վերադարձվում։


# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

5

ՄԱՅԻՍ, 1980

ՀՐԱՏԱՐԱԿՎՈՒՄ Է 1922 Թ.
ИЗДАЕТСЯ С 1922 Г.

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԿԿ-Ի ՏԵՍԱԿԱՆ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ
**«ЛЕНИНЯН УГИОВ»** («По ленинскому пути») — **теоретический и политический журнал ЦК КП Армении**


## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ

## С О Д Е Р Ж А Н И Е







# ԽԱՂԱՂՈՒԹՅԱՆ ԱՆԽՈՆՋ ՄԱՐՏԻԿԻՆ

## ԼԵՆԻՆՅԱՆ ՄՐՑԱՆԱԿԻ ՀԱՆՁՆՈՒՄԸ ՍՄԿԿ ԿԵՆՏԿՈՄԻ ԳԼԽԱՎՈՐ ՔԱՐՏՈՒՂԱՐ, ՍՍՀՄ ԳԵՐԱԳՈՒՅՆ ՍՈՎԵՏԻ ՆԱԽԱԳԱՀՈՒԹՅԱՆ ՆԱԽԱԳԱՀ Լ. Ի. ԲՐԵԺՆԵՎԻՆ

*«Մալայա զեմլյա», «Վերածնունդ», «Խոպան» գրքերի համար, խաղաղության անդուլ պայքարի համար ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար, ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության նախագահ Լ. Ի. Բրեժնևին շնորհված է լենինյան մրցանակ։*

*Մարտի 31-ին Կրեմլում տեղի ունեցավ Մոսկվայի աշխատավորության ներկայացուցիչների հանդիսավոր ժողով՝ նվիրված այդ մրցանակի հանձնմանը Լեոնիդ Իլյիչ Բրեժնևին։*

*Պատվավոր պարգևի առթիվ Լ. Ի. Բրեժնևին ջերմորեն շնորհավորեցին ՍՍՀՄ Մինիստրների խորհրդին առընթեր գրականության, արվեստի և ճարտարապետության լենինյան և ՍՍՀՄ պետական մրցանակների կոմիտեի նախագահ Գ. Մ. Մարկովը, Մալայա զեմլյայի մարտերի մասնակից, 18-րդ բանակի քաղբաժնի պետի նախկին տեղակալ, պաշտոնաթող գնդապետ Ս. Ս. Պախոմովը, սոցիալիստական աշխատանքի հերոս, Ցելինոգրադի մարզի Աթբասարի շրջանի «Շույսկի» սովխոզի տրակտորային-դաշտավարական բրիգադի բրիգադավար Մ. Ե. Դովժիկը, լենինյան մրցանակի դափնեկիր, ՍՍՀՄ գիտությունների ակադեմիայի փոխպրեզիդենտ, ակադեմիկոս Յու. Ա. Օվչիննիկովը, սոցիալիստական աշխատանքի հերոս, լենինյան մրցանակի դափնեկիր, բանաստեղծ Է. Բ. Մեժելայտիսը։*

*Հանդիսավոր ժողովում ճառով հանդես եկավ լենինյան մրցանակի դափնեկիր, ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար, ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության նախագահ Լ. Ի. Բրեժնևը։*

## ԸՆԿԵՐ Լ. Ի. ԲՐԵԺՆԵՎԻ ՃԱՌԸ

*Թանկագին ընկերնե՛ր։*

*Նախ և առաջ թույլ տվեք լենինյան մրցանակների կոմիտեին խորին շնորհակալություն հայտնել այն բարձր պարգևի համար, որն ինձ շնորհվել է։ Շնորհակալություն եմ հայտնում նաև այսօր ելույթ ունեցած ընկերներին նրանց ասած բարի խոսքերի համար։* (Ծափահարություններ)։

*Սույն լենինյան մրցանակը գրական մրցանակ է։ Ինչպես գիտեք, ես ոչ թե գրող եմ, այլ կուսակցական աշխատող։ Բայց, ինչպես ամեն մի կոմունիստ, ինձ համարում եմ կուսակցական պրոպագանդայով մոբիլիզացված, իմ պարտքն եմ համարում ակտիվորեն մասնակցել մեր մամուլի աշխատանքին։*

*Վ. Ի. Լենինը կուսակցական աշխատողներին սովորեցնում էր մշտապես սրել իրենց գրիչը, օգնել «գրելու արդիականության պատմությունը» և այնպես գրելու, որ դա ուժերի ներածին չափ օգնի կուսակցության և բանվոր դասակարգի պրակտիկ գործին։ Եվ ես գրել եմ, ինչպես կարողացել եմ, գործարանային բազմատպաքանակ թերթերում, ռազմաճակատային թերթերում, հան-*

դես եմ եկել մարզային, հանրապետական, կենտրոնական հրատարակություններում, ձգտելով դրանով օգնել մեր ընդհանուր կուսակցական գործին։ Եվ հետո, ահա, որոշեցի վերջապես մի տեսակ ի մի հավաքել մտքերս այն ամենի մասին, ինչ վիճակվել է ապրել։

Ես ամենից քիչ կուզենայի, որ «Մալայա զեմլյա», «Վերածնունդ», «Խոպան» գրքերը ընդունվեն որպես հուշագրություններ։ Աշխատելով իմ գրառումների վրա, ես մտածել եմ ոչ իմ մասին, և նույնիսկ, թերևս, ոչ այնքան անցյալի մասին, որքան այն մասին, թե անցյալի փորձը ինչով կարող է մարդկանց օգտակար լինել այսօր։

Կյանքում ինձ վիճակվել է ամեն ինչ տեսնել։ Ես մեծացել եմ բանվորական միջավայրում, աշխատել եմ սկսել գործարանային կոլեկտիվում և միշտ շնորհակալությամբ կվերհիշեմ այդ ժամանակը։ Ինձ վիճակվել է աշխատել նաև գյուղում, ճանաչել գյուղացիական կյանքը և հողագործի աշխատանքը։ Դե, իսկ մեր քաջարի բանակի ռազմիկների հետ միասնական շարքում մեկ հազար կիլոմետր չէ, որ անցել եմ։ (Երկարատև ծափահարություններ)։

Եվ այս ամենն ինձ սովորեցրեց բարձր գնահատել ու խորապես հարգել աշխատավոր սովետական մարդուն՝ նրա համեստությունն ու համբերությունը, համառությունն աշխատանքում և խիզախությունը մարտում, բարությունը մարդկանց նկատմամբ և անսահման նվիրվածությունը լենինյան մեծ գործին՝ ժողովրդի երջանկության գործին։

Ինձ դաստիարակել է մեր լենինյան կուսակցությունը։ Իմ ամբողջ գիտակցական կյանքում ես գտնվում են կոմունիստների շարքում։ Ուստի և ես ամենից առաջ գրել եմ նրանց մասին՝ ակտիվ մարտիկների մասին, նրանց գաղափարական համոզվածության, հոգևոր գեղեցկության մասին։

Իհարկե, հաճելի է, որ «Մալայա զեմլյա», «Վերածնունդ», «Խոպան» գրքերն արժանացան ընթերցողների ճանաչմանը մեր երկրում և արտասահմանում։ Օգտվելով առիթից, ուզում եմ շնորհակալություն հայտնել բոլոր նրանց, ովքեր ինձ գրել են գրքերից ստացած իրենց տպավորությունների մասին։ Ես երախտագիտություն եմ հայտնում կուսակցական կոմիտեներին, ստեղծագործական և մյուս հասարակական կազմակերպություններին, որոնք անցկացրին դրանց քննարկում։ Երախտապարտ եմ մեր գրողներին բարի արձագանքների համար։ Սրտագին շնորհակալություն ռազմաճակատի, խաղաղ գործերի իմ հին ընկերներին, որոնք նույնպես արձագանքեցին այդ աշխատությունների առթիվ։

Ժամանակն արագ է թռչում, այն անկարելի է կանգնեցնել։ Դա մեզ վրա հատուկ պատասխանատվություն է դնում աճող սերնդի համար։ Հանդիպելով երիտասարդ բանվորների, կոլտնտեսականների, ուսանողների, զինված ուժերի ռազմիկների հետ, ես երբեմն մտածում եմ այն մասին, որ այդ, ըստ էության ոչ այնքան հեռավոր իրադարձությունները, նրանց համար լեգենդար են։

Հասուն տարիքն են թևակոխել նաև նրանք, ովքեր ոչ միայն Հայրենական մեծ պատերազմը, այլև խոպանի էպոպեան կարող են տեսնել միայն կինոյում։

Մեր օրերի երիտասարդությունը նույնպես պրակտիկայում անցնում է կոմունիստական ստեղծարարության գիտությունը։ Նա այդ գիտությունը տիրապետում է իրենց թափով աննախընթաց հարվածային կառույցներում, արդեն առասպելական ԲԱՄ-ը գցելիս, յուրացնելով Սիբիրի գանձերը և ոչ սևահողային գոտու հարստությունները, առաջ մղելով գիտությունն ու տեխնիկան։

Բայց հարկ է, որ պատանիներն ու աղջիկները հաղորդակցվեն նաև սոցիալիստական հասարակական հարաբերությունների կազմավորման ակունքներին։ Նրանք պետք է լավ պատկերացնեն, թե ինչպես էր ստեղծվում պետության տնտեսական ու հոգևոր վիթխարի պոտենցիալը։ Մեր գործերի հաջորդականության գիտակցությունը կօգնի ավելի լավ հասկանալու թե՛ այսօրվա խնդիրները, թե՛ այն գործերը, որ մեր ժողովրդին սպասում են վաղը։

Ուստի լավ է, որ աճող սերնդի դաստիարակության գործին ակտիվորեն մասնակցում են վետերանները՝ առաջին հնգամյակների հարվածայինները, մեծ Հայրենականի մարտիկները, հետպատերազմյան վերածնության հերոս-



ները։ Շնորհակալություն նրանց հայրենասիրական մեծ աշխատանքի համար, դա շատ հարկավոր և օգտակար է։ (Երկարատև ծափահարություններ)։

Ընթերցողներից իմ ստացած շատ նամակներում ցանկություն է հայտնվում, որ հեղինակը շարունակի իր հուշերը։ Ի՞նչ պատասխանել դրան։

Մենք, ըստ իս, պարտավոր ենք նոր սերունդներին հաղորդել այն ողջ արժեքավորը, ինչ կա մեր սեփական փորձի մեջ։ Այս մասին ես շարունակում եմ մտածել և, եթե ժամանակ գտնեմ, եթե կարողացա, ապա հուշագրությունները կշարունակեմ։ (Ծափահարություններ)։ Համարեցեք, որ այսօր ինձ հանձնված պարգևը ես դիտում եմ նաև որպես ապագայի ողջերթ։

Եվ նորից միտքս անդրադառնում է կուսակցական հրապարակախոսության խնդիրների վերաբերյալ լենինյան խոսքերին՝ արդիականության մասին գրել այնպես, որպեսզի քո գրչով ուժերի ներածին չափ օգուտ բերես մեր կուսակցության, մեր ժողովրդի պրակտիկ գործին։ Չէ որ դա հիմա էլ մեր հրապարակախոսության, մեր մասսայական պրոպագանդայի, կուսակցության ամբողջ գաղափարադաստիարակչական աշխատանքի գլխավոր խնդիրն է։ Իսկ ավելի լայն պլանով՝ նաև առհասարակ մեր գեղարվեստական գրականության և արվեստի խնդիրը։

Թափանցել պրակտիկ կյանքի մեջ, օգնել ժողովրդին՝ ավելի պարզ հասկանալու այդ կյանքի իմաստը և նրա հոսանքի ուղղությունը, օգնել այդ կյանքն ավելի լավացնելու, դարձնելու ավելի ճիշտ, ավելի պայծառ, ավելի հարուստ ոչ միայն նյութապես, այլև հոգեպես՝ ինչը կարող է ավելի կարևոր և ավելի ազնիվ լինել։ Կուսակցությունը այսպիսի չափանիշով է մոտենում գաղափարախոսական աշխատանքի բոլոր ձևերին։ Ես նույնպես այդ չափանիշով եմ մոտեցել այդ մեծ գործի մեջ իմ համեստ ներդրմանը։

Որքան մենք առաջ ենք գնում կոմունիստական շինարարության ուղիով, որքան ուժեղանում է մեր էկոնոմիկան և որքան ապահով է դառնում մարդկանց կյանքը, այնքան մեծ նշանակություն են ստանում մարդկանց հասարակական-քաղաքական, կուլտուրական, բարոյական, գեղագիտական դաստիարակության խնդիրները։ Նյութական և հոգևոր զարգացման մեջ խզում չի կարելի թույլ տալ, դա կսպառնար շատ աղետներով։

Եվ որքան կրթված են դառնում սովետական մարդիկ, որքան ընդլայնվում է նրանց գիտելիքների շրջանակը, այնքան մեծ նշանակություն են ձեռք բերում գաղափարախոսական աշխատանքի մակարդակը, որակը։

Այստեղ ամենաահավոր թշնամին, ըստ իս, անհոգի և անմիտ ձևամոլությունն է, շաբլոնների և բառային ճարճատյունի հակումը։ Ամենաանհրաժեշտ բանն է՝ ամբողջ դաստիարակչական, ինֆորմացիոն, պրոպագանդիստական աշխատանքին բոլոր աստիճաններում և ուղղություններում տալ կենդանի, ստեղծագործական բնույթ։

Ինչ-որ մի անգամ ես արդեն առիթ ունեցել եմ խոսելու այդ մասին։ Անհրաժեշտ է կանոն դարձնել մարդկանց հետ խոսել պարզ ու մատչելի լեզվով, անկեղծորեն և գործնականորեն։ Ժամանակն է հրաժարվելու ճոռոմ խոսքերից, ձևամոլությունից և մեխանիկական կրկնություններից։ Հարկավոր է սովորել գրել՝ ամեն մի նախադասության մեջ դնելով սեփական կենդանի միտքը, սեփական զգացմունքները։

Թվում է, թե անվիճելի բան է, բայց որքա՜ն դժվար է դրան հասնել։

Ինչպես գիտեք, կուսակցության Կենտրոնական կոմիտեն գաղափարախոսական, քաղաքական-դաստիարակչական աշխատանքի բարելավման հարցերի վերաբերյալ անցյալ գարնանն ընդունեց հատուկ ծավալուն որոշում, իսկ աշնանն անցկացվեց գաղափարախոսական ճակատի աշխատողների համամիութենական մեծ խորհրդակցություն։ Արդեն քիչ բան չի արված ընդունված որոշումների կենսագործման համար։ Սակայն, ըստ երևույթին, սխալ կլիներ կարծել, թե արվածը բավական է։ Այստեղ ոչ մի կերպ չպետք է հանգստանալ։ Դեռ հսկայական և հաստատակամ աշխատանք պետք է կատարվի Կենտկոմի որոշման մեջ նշված բառացիորեն բոլոր ուղղություններում, որպեսզի գաղափարախոսական աշխատանքն իսկապես նոր մակարդակի բարձրացվի և հա-

*մապատասխանի ժամանակի պահանջներին ու սովետական մարդկանց կարիքներին։*

*Ընկերնե՛ր։ Մեր երկիրը թևակոխել է տասներորդ հնգամյակի եզրափակիչ տարին։ Դա կուսակցության XXVI համագումարի ակտիվ նախապատրաստության տարին է, որը կսահմանի կոմունիստական շինարարության ուղիով մեր հետագա առաջընթացի ստրատեգիան։ Դա նաև Վլադիմիր Իլյիչ Լենինի ծննդյան 110-ամյակի տարին է, և լենինյան հոբելյանը նոր խթան է ծառայում կուսակցության և ժողովրդի ամբողջ աշխատանքի համար։ Մենք զինված ենք հեղափոխական, մարտական և աշխատանքային բազմահարուստ ավանդույթներով։ Բայց մենք օրավուր ձեռք ենք բերում նաև նոր փորձ։*

*Մենք մեզ հաշիվ ենք տալիս, որ ամբողջությամբ վերցրած 80-ական թվականները, որոնք արդեն իրենց առաջին ամիսներն են համրում, մեր էկոնոմիկայի, գիտության և կուլտուրայի, հասարակական հարաբերությունների հետագա զարգացման բազմապիսի ու բարդ հարցերի լուծման տարիներ են։ Մենք ամեն ինչ ունենք այդ խնդիրները կատարելու, թերություններից ազատվելու և ժողովրդի կյանքը է՛լ ավելի լավացնելու համար։ Արդյունքը կախված կլինի հենց մեզանից՝ գործարանների, դաշտերի, ֆերմաների, գիտական լաբորատորիաների և կառավարման մարմինների միլիոնավոր աշխատավորներից։ Արդյունքը կախված կլինի սովետական յուրաքանչյուր մարդու կարգապահությունից, բարեխղճությունից և ջանասիրությունից այն տեղամասում, ուր նա աշխատում է։ Հաջողության ուրիշ ճանապարհ չկա։*

*Մեր կուսակցության ամբողջ պատմությունը ծառայությունն է աշխատավոր ժողովրդի շահերին։ Կոմունիստների ամբողջ գործունեության իմաստը պայքարն է աշխատավորների երջանկության համար։ Եվ, իհարկե, մեր սահմանադրությամբ վավերագրված նրանց իրավունքների և ազատությունների պաշտպանությունը։ Ամբողջ կուտակված փորձը, ստեղծվող միջազգային իրադրությունը, հատկապես վերջին ժամանակվա փաստերը, մեզ պարտավորեցնում են վառոդը չոր պահել, հաստատակամ ու հետևողական լինել խաղաղության գործի պաշտպանության ասպարեզում, հիշել մեր պատմական պատասխանատվությունը հայրենիքի և ամբողջ մարդկության բախտի համար։*

*Իմ կողմից ես այսուհետև էլ ինձանից կախված ամեն բան կանեմ, որպեսզի հաջողությամբ կենսագործվի մեր կուսակցության լենինյան քաղաքականությունը՝ ժողովրդի կենսամակարդակի անշեղ բարձրացման, երկրի խաղաղության և անվտանգության ապահովման, կոմունիստական ապագայի կառուցման քաղաքականությունը։*

*Հանուն դրա արժե ապրել և պայքարել, հանուն դրա կարելի է չխնայել ոչ ժամանակ, ոչ ուժ։* (Բուռն, երկարատև ծափահարություններ։ Բոլորը ոտքի են կանգնում)։

---

## Ինֆորմացիոն հաղորդագրություն

# ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԿԵՆՏՐՈՆԱԿԱՆ ԿՈՄԻՏԵԻ ՊԼԵՆՈՒՄԻ ՄԱՍԻՆ

1980 թվականի ապրիլի 15-ին տեղի ունեցավ Հայաստանի կոմունիստական կուսակցության Կենտրոնական կոմիտեի հերթական պլենումը։

Պլենումը քննարկեց «ՍՄԿԿ Կենտկոմի 1978 թվականի հուլիսյան պլենումի որոշումների լույսի ներքո հանրապետությունում անասնապահության վիճակի և նրա հետագա զարգացման միջոցառումների մասին» հարցը։

Զեկուցումով հանդես եկավ Հայաստանի կոմունիստական կուսակցության Կենտրոնական կոմիտեի առաջին քարտուղար ընկ. **Կ. Ս. Դեմիրճյանը**։

Զեկուցման շուրջը ծավալված մտքերի փոխանակությանը մասնակցեցին ՀԿԿ Հրազդանի շրջկոմի առաջին քարտուղար ընկ. **Մ. Կ. Հարությունյանը,** Ծաղկունյաց շրջանի Ծաղկունյաց անվան կոլտնտեսության կթվորուհի ընկ. **Ա. Մ. Սահակյանը,** Հայկական ՍՍՀ գյուղատնտեսության մինիստր ընկ. **Հ. Վ. Թարջումանյանը,** Հոկտեմբերյանի շրջանի Հոկտեմբեր գյուղի կոլտնտեսության ոչխարաբուծական ֆերմայի վարիչ ընկ. **Մ. Զ. Զավոյանը,** ՀԿԿ Նաիրիի շրջկոմի առաջին քարտուղար ընկ. **Ն. Կ. Այվազյանը,** Հայգյուղտեխպետկոմի նախագահ ընկ. **Ս. Ս. Հովհաննիսյանը,** անասնաբուծության և անասնաբուժության գիտահետազոտական ինստիտուտի դիրեկտոր ընկ. **Վ. Բ. Ոսկանյանը,** ՀԿԿ Սպիտակի շրջկոմի առաջին քարտուղար ընկ. **Հ. Ս. Հակոբյանը,** Հայկական ՍՍՀ մթերումների մինիստր ընկ. **Օ. Տ. Հովակիմյանը,** ՀԿԿ Սիսիանի շրջկոմի առաջին քարտուղար ընկ. **Ծ. Բ. Դավթյանը,** Հայկական ՍՍՀ մսեղենի և կաթնեղենի արդյունաբերության մինիստր ընկ. **Ս. Հ. Վարդանյանը**։

Քննարկված հարցի առթիվ պլենումն ընդունեց ծավալուն որոշում։

Պլենումը լսեց «Հայկական ՍՍՀ-ում ոռոգելի հողագործության հետագա զարգացման և արդյունավետության բարձրացման միջոցառումների վերաբերյալ ՍՄԿԿ Կենտկոմի և ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի որոշման կատարման ընթացքի մասին» ինֆորմացիոն զեկուցումը։

Այդ հարցի առթիվ պլենումում հանդես եկավ Հայկական ՍՍՀ Մինիստրների խորհրդի նախագահ ընկ. **Ֆ. Տ. Սարգսյանը**։

Ինֆորմացիոն զեկուցման վերաբերյալ ընդունվեց համապատասխան որոշում։

Պլենումում եզրափակման խոսքով հանդես եկավ Հայաստանի կոմունիստական կուսակցության Կենտրոնական կոմիտեի առաջին քարտուղար ընկ. **Կ. Ս. Դեմիրճյանը**։

Դրանով պլենումն ավարտեց աշխատանքը։

Հայաստանի կոմկուսի Կենտկոմի պլենումի աշխատանքին մասնակցում էր ՍՄԿԿ Կենտկոմի սեկտորի վարիչ ընկ. **Ն. Մ. Տիշչենկոն**։

# ԸՆԿԵՐ Կ. Ս. ԴԵՄԻՐՃՅԱՆԻ ԶԵԿՈՒՑՈՒՄԸ

Ընկերնե՛ր:

Կոմունիստական կուսակցության ղեկավարությամբ սովետական ժողովուրդը հետևողականորեն և հաջողությամբ կենսագործում է ՍՄԿԿ XXV համագումարի պատմական որոշումները: Մեր երկիրը զգալի առաջ է ընթացել տնտեսական և սոցիալական զարգացման, ժողովրդի կյանքի նյութական և կուլտուրական մակարդակի հետագա բարձրացման, իր պաշտպանական հզորության ամրապնդման գործում:

Կոմունիստական շինարարության բոլոր էտապներում մեր կուսակցությունը հսկայական ուշադրություն է նվիրում գյուղատնտեսական արտադրության զարգացմանը, նրա արդյունավետության բարձրացմանը, գյուղի սոցիալական և կուլտուրական զարգացման հարցերին: Այդ առումով կարևորագույն ուղենիշներ եղան ՍՄԿԿ Կենտկոմի 1965 թվականի մարտյան և 1978 թվականի հուլիսյան պլենումները:

ՍՄԿԿ Կենտկոմը, Կենտկոմի քաղբյուրոն, անձամբ ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար ընկեր Լ. Ի. Բրեժնևը լենինյան խորաթափանցությամբ են լուծում գյուղատնտեսության զարգացման արմատական պրոբլեմները, արդի խնդիրները:

ՍՄԿԿ-ի ագրարային քաղաքականության հետևողական իրականացման շնորհիվ ապահովվել է գյուղատնտեսության արտադրողական ուժերի հզոր զարգացումը, բարձրացել է գյուղի աշխատավորների կենսամակարդակը, մեծացել են հողագործության և անասնապահության արտադրանքի տարեկան միջին ծավալները, բարձրացել են դաշտերի բերքատվությունը և ֆերմաների մթերումների ծավալները: Այս ամենը նկատելիորեն նպաստել է սովետական մարդկանց բարեկեցության բարձրացմանը, աճել են գյուղատնտեսական մթերքների սպառման ծավալները, բարելավվել է սննդի կառուցվածքը, ավելացել է գյուղատնտեսական հումքի վերամշակման վրա հիմնված արդյունաբերական արտադրանքի արտադրությունը:

Կուսակցության ագրարային քաղաքականության հաջող իրականացման գործում հանրապետության կուսակցական կազմակերպության համար վճռական նշանակություն ունեցան Հայաստանի կոմկուսի Կենտկոմի 1975 թվականի հունվարյան և հուլիսյան, 1977 թվականի ապրիլյան, 1978 թվականի հուլիսյան պլենումները, Հայաստանի կոմկուսի XXVI համագումարը, որոնք մշակեցին գյուղատնտեսության հետագա զարգացման, գյուղատնտեսական արտադրության ընդհանուր մակարդակի բարձրացման ծրագիրը:

Այդ ծրագրի հետևողական իրականացման շնորհիվ հանրապետության գյուղատնտեսության զարգացման գործում զգալի հաջողություններ են ձեռք բերվել: Գյուղատնտեսության համախառն արտադրանքի տարեկան միջին ծավալի աճը տասներորդ հնգամյակի անցած չորս տարիներին հնգամյա պլանով նախատեսված 21,1 տոկոսի փոխարեն կազմել 23,6 տոկոս: Իններորդ հնգամյակի տարեկան միջին ցուցանիշների համեմատությամբ հացահատիկային կուլտուրաների բերքատվությունը հանրային սեկտորում ավելացել է 22 տոկոսով, շաքարի ճակնդեղինը՝ 37 տոկոսով, խաղողինը՝ 28, պտղինը՝ 12, բանջարեղենինը՝ 8, կարտոֆիլինը՝ 18 տոկոսով: Ամեն տարի կատարվում են հիմնական գյուղատնտեսական մթերքների արտադրության և պետությանը դրանց վաճառքի պլանները:

Տպագրվում է հապավումներով:



Մենք որոշակի հաջողությունների ենք հասել նաև անասնապահության զարգացման գործում: Հնգամյակի չորս տարիների մսի արտադրության պլանը հանրապետությունում կատարվել է 103,9 տոկոսով, կաթի արտադրությանը՝ 110,8, բրդի արտադրությանը՝ 103,1 տոկոսով, իսկ այդ մթերքների գնումների պլանը կատարվել է համապատասխանաբար՝ 102, 109,2 և 103,4 տոկոսով: Այդ նույն ժամանակահատվածում մսի արտադրության տարեկան միջին ծավալը, նախորդ հնգամյակի միջինի համեմատությամբ, ավելացել է 23,8 հազար տոննայով կամ 23 տոկոսով, կաթի արտադրության ծավալը՝ 67,6 հազար տոննայով կամ 16,8 տոկոսով, ձվինը՝ համապատասխանաբար 101 միլիոն հատով կամ 33 տոկոսով, բրդինը՝ 315 տոննայով կամ 7,1 տոկոսով, իսկ գնումները համապատասխանաբար աճել են. մսինը՝ 30,6 տոկոսով, կաթինը՝ 25, ձվինը՝ 64,4 տոկոսով և բրդինը՝ 7,5 տոկոսով:

Կոլտնտեսություններում և պետտնտեսություններում մեկ կովի կաթնատվությունն ավելացել է 306 կիլոգրամով և 1979 թվականին կազմել 1.993 կիլոգրամ, պետությանը վաճառված խոշոր եղջերավոր անասունների միջին քաշն ավելացել է 50 կիլոգրամով և կազմել 294 կիլոգրամ:

Ձեռք բերվածը ավելի ցայտուն պատկերացնելու համար նշենք, որ ութերորդ և իններորդ հնգամյակների ընթացքում, այսինքն՝ նախորդած 10 տարում կովերի միջին կաթնատվությունն ավելացել է ընդամենը 247 կիլոգրամով, պետությանը վաճառված խոշոր եղջերավոր անասունների միջին քաշը՝ 24 կիլոգրամով:

Հանրապետության գյուղատնտեսության և մասնավորապես անասնապահության ասպարեզում, հիրավի, քիչ բան չի արված: Այդ ամենը հնարավորություն ստեղծեց էապես բարելավելու բնակչությանը պարեն, գյուղատնտեսական մթերքներ մատակարարելու գործը:

Այս հաջողությունները հանրապետության կուսակցական, սովետական և գյուղատնտեսական մարմինների նպատակասլաց, հետևողական աշխատանքի, գյուղի աշխատավորների, բանվոր դասակարգի և մտավորականության, բոլոր նրանց հերոսական աշխատանքի արգասիքն են, ովքեր օգնել են գյուղին նրա առջև կանգնած խնդիրների լուծման գործում:

Ընթացիկ հնգամյակում գյուղի աշխատավորների ոգեշունչ և հայրենասիրական աշխատանքը երկու անգամ արժանացավ ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար ընկեր Լ. Ի. Բրեժնևի ողջույնին և բարձր գնահատականին: Եվ հանրապետության՝ տասներորդ հնգամյակի բոլոր չորս տարիներին համամիութենական սոցիալիստական մրցությունում հաղթող ճանաչվելու, ՍՄԿԿ Կենտկոմի, ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի, ՀԱՄԿԽ-ի և ՀամԼԿԵՄ Կենտկոմի փոխանցիկ կարմիր դրոշին արժանանալու գործում խոշոր է դաշտերի ու ֆերմաների հերոսների, մեխանիզատորների, մելիորատորների, ինժեներների, գիտնականների, գյուղի բոլոր աշխատավորների հսկայական բանակի ավանդը:

Ընկերնե՛ր: ՍՄԿԿ Կենտկոմի 1978 թվականի հուլիսյան պլենումում նշվեց, որ երկրի էկոնոմիկայի զարգացման ամբողջ ընթացքը, ժողովրդի կյանքի նյութական մակարդակի անշեղ աճը այժմ առաջին պլան են մղում անասնապահության առավել արագ վերելքի՝ ժողովրդին պարենամթերքով ապահովելու պրոբլեմի առանցքային խնդիրը: Հետևաբար, անասնապահության հետագա ինտենսիվ զարգացումը տնտեսական, սոցիալ-քաղաքական կարևոր խնդիր է:

Հայաստանի կոմկուսի Կենտկոմի հերթական պլենումի քննարկմանը դնելով անասնապահության հետագա զարգացման հարցերը, նկատի է առնվում ՍՄԿԿ XXV համագումարի և ՍՄԿԿ Կենտկոմի 1978 թվականի հուլիսյան պլենումի պահանջների լույսի ներքո քննադատաբար վերլուծել այդ ասպարեզում տիրող իրավիճակը, ձեռք բերված արդյունքները, մշակել այդ կարևոր ճյուղի հետագա ինտենսիվ զարգացման կոնկրետ կոմպլեքսային ծրագիր:

Հանրապետության անասնապահության իրավիճակի վերլուծությունը ցույց է տալիս, որ վերջին տարիներին այն բավական դինամիկ և կայուն կերպով է զարգանում: Ամրապնդվում է կերի բազան, աշխատանք է կատարվում անաս-

նապահությունը արդյունաբերական հիմքի վրա փոխադրելու, առաջավոր տեխնոլոգիաներ արմատավորելու բնագավառում: Բարելավվում են աշխատանքի որակական ցուցանիշները, ավելանում է անասունների մթերատվությունը:

Քննադատաբար գնահատելով անասնապահության վիճակը, մենք այսօր պետք է արձանագրենք նաև, որ գյուղատնտեսության այդ կարևորագույն ճյուղում կան լուրջ թերություններ, վրիպումներ և չլուծված հարցեր, որ ճյուղի տնտեսական և արտադրական մեծ պոտենցիալն ու լայն հնարավորությունները դեռևս սակավարդյունավետ են օգտագործվում: Դեռևս անբավարար է անասնապահության ինտենսիվացման նպատակով տարվող աշխատանքը. կան չօգտագործված ռեզերվներ:

Եթե ասվածին ավելացնենք, որ դեմոգրաֆիական կանխահաշվարկների համաձայն մինչև 2000 թվականը հանրապետության բնակչությունը կկազմի մոտավորապես 4,5 միլիոն մարդ, և խիստ կաճի քաղաքային բնակչության տեսակարար կշիռը, ապա պարզ կդառնա տվյալ հարցի կարևորությունն ու սրությունը:

Հայկական ՍՍՀ գյուղատնտեսությունը բարենպաստ պայմաններ ունի ընդհանուր միութենական մասնագիտացմամբ նախատեսված ճյուղերի՝ խաղողագործության, պտղաբուծության, բանջարաբուծության զարգացման և այդ բազայի վրա գինու-կոնյակի ու պահածոների արդյունաբերության զարգացման համար: Իսկ երկրում այդ մթերքների պահանջարկն այսուհետ ևս կբարձրանա: Ուստի և մեր հանրապետությունը հետագայում էլ պետք է ակտիվորեն մասնակցի դրանց արտադրությանը:

Առաջադրելով այսպիսի խնդիր, մենք անպայման պետք է հաշվի առնենք մեր հանրապետության առանձնահատկությունները: Մեզ մոտ անհանդուրժելի է գյուղատնտեսության զարգացման էքստենսիվ եղանակը: Եվ գյուղատնտեսության, հատկապես անասնապահության զարգացման մեջ մենք շեշտը պետք է այսուհետ ևս դնենք աճի ինտենսիվ գործոնի վրա, որի հնարավորությունները մենք բնավ էլ լրիվ չենք իրացնում:

Ելնելով անասնապահության զարգացման առկա ռեալ հնարավորություններից, մենք պետք է մեր առջև դնենք նոր նպատակ՝ գալիք հնգամյակի վերջերին կովի միջին կաթնատվությունը հասցնել 2.300—2.500 կիլոգրամի, պետությանը վաճառվող խոշոր եղջերավոր անասունների միջին կենդանի քաշը՝ 330—350 կիլոգրամի, խոզերինը՝ 100—105 կիլոգրամի, ոչխարներինը՝ 40 կիլոգրամի: Եվ մենք վստահ ենք, որ այդ ցուցանիշներին կարելի է հասնել:

Ընկ. Կ. Ս. Դեմիրճյանը հանգամանորեն անդրադառնում է անասնապահության զարգացման արմատական պրոբլեմներին: ՍՄԿԿ Կենտկոմի 1978 թվականի հուլիսյան պլենումում, ասում է նա, ընկեր Լ. Ի. Բրեժնևը շեշտեց, որ այն ամենը, ինչ մենք ուզում ենք ստանալ անասնապահությունից՝ ավելի շատ միս, կաթ և այլ մթերքներ, վերջին հաշվով, պայմանավորված է կերի, ընդ որում՝ բազմապիսի և բարձրորակ կերի բավարար քանակությամբ:

Հայաստանի կոմկուսի Կենտկոմը և հանրապետության կառավարությունը մի շարք կոնկրետ միջոցներ են ձեռնարկել կերարտադրության նյութատեխնիկական բազայի ամրապնդման համար: Ձեռնարկված միջոցների շնորհիվ տասներորդ հնգամյակի վերջին չորս տարիներին հանրապետությունում կերի արտադրությունն անընդհատ աճել է: Եթե նախորդ հնգամյակում տարեկան միջին հաշվով կուտակվում էր 423 հազար տոննա կերամիավոր, ապա տասներորդ հնգամյակի չորս տարում այն կազմել է միջին հաշվով 646 հազար տոննա: Իսկ 1979 թվականին առաջին անգամ կուտակվեց 703 հազար տոննա կերամիավոր: Ընդարձակվել են կերի կուլտուրաների ցանքատարածությունները:

Այնուամենայնիվ, հանրապետությունում դեռևս արմատապես չի լուծված անհրաժեշտ քանակությամբ և բարձրորակ կերի արտադրության պրոբլեմը: Այդ պրոբլեմն այսօր էլ շատ սուր է, իսկ դրա լուծումն՝ անհետաձգելի կարևոր խնդիր:

Կերարտադրության ետ մնալու հիմնական պատճառներն են՝ ամենից առաջ կերի կուլտուրաների ցածր բերքատվությունը, ցանքատարածությունների կառուցվածքի անկատարությունը, հյութալի կերի ցածր տեսակարար կշիռը,



սպիտակուցի մեծ պակասը, խոզանացան և միջանկյալ կուլտուրաների ցանքերի անբավարար կիրառումը, բնական կերահանդակների ցածր արդյունավետությունը, կերի կուտակման ու պատրաստման առաջավոր տեխնոլոգիաների դանդաղ արմատավորումը, դրա կուտակման, պահպանման և օգտագործման ժամանակ եղած մեծ կորուստները, կերային կուլտուրաների սերմնաբուծության ցածր մակարդակը, սննդարդյունաբերության և հանրային սննդի ձեռնարկությունների մնացուկների վատ օգտագործումը:

Շատ տնտեսություններում, շրջաններում կերի կուտակման պլանները տարեցտարի չեն կատարվում: Ազիզբեկովի, Մարտունու, Թումանյանի, Թալինի, Շամշադինի և այլ շրջանների տնտեսությունների մեծ մասում բավարար միջոցներ չեն ձեռնարկել հանրային անասնապահությունը կոշտ և հյութալի կերով ապահովելու համար: Լուրջ թերություններ կան կերարտադրության պլանավորման գործում: Հանրապետության պետպլանը և գյուղատնտեսության մինիստրությունը կերարտադրության զարգացման տեմպերը պլանավորում են անասնապահական մթերքների արտադրության ծավալների աճի փաստացի ձեռք բերված տեմպերից ցածր: Նրանք պետք է արմատապես վերանայեն հանրապետության շրջաններում և տնտեսություններում կոշտ և հյութալի կերի արտադրության պլանավորման սկզբունքները, կերի սեփական բազայի աճի տեմպերը համապատասխանեցնեն անասնապահության մթերատվության և անասունների գլխաքանակի, անասնապահական մթերքների արտադրության և մթերումների նախատեսվող աճի տեմպերին, ինչպես նաև հանրային անասնապահության կառուցվածքի փոփոխություններին:

Կենտկոմի պլենումը այսօր պետք է պահանջի, որ պետպլանը, գյուղատնտեսության, մելիորացիայի և ջրային տնտեսության, մթերումների մինիստրությունները, գյուղտեխպետկոմը, կուսակցության շրջկոմները, շրջսովետների գործկոմները, կոլտնտեսությունների և սովխոզների կուսակցական կազմակերպությունները և ղեկավարները յուրաքանչյուր տնտեսության համար մշակեն կերի կայուն բազա ստեղծելու կոմպլեքսային ծրագիր, որի կենսագործումը հնարավորություն կընձեռի լրիվ բավարարելու հանրային անասնապահության, ինչպես և կոլտնտեսականների, սովխոզների բանվորների ու ծառայողների սեփական անասունների կերի պահանջմունքները, ստեղծելու նաև կերի փոխանցվող ապահովագրական պաշարներ: Դրա համար հանրապետությունում կան անհրաժեշտ հնարավորություններ ու ռեզերվներ:

Հարկ է ինտենսիվացնել կերարտադրությունը, է՛լ ավելի ամրապնդել դրա նյութատեխնիկական բազան, վերածելով այն գյուղատնտեսության ժամանակակից մասնագիտացված ճյուղի:

Կերի կայուն բազայի ստեղծման միջոցառումների կոմպլեքսի մեջ մեր հանրապետության համար առավել կարևորը, վճռականը վարելահողերից ստացվող կերի արտադրության ավելացումն է: Այստեղ գլխավորը կերային բոլոր կուլտուրաների բերքատվության շեշտակի բարձրացումն է: Մինչդեռ, միամյա խոտաբույսերի բերքատվությունը հեկտարից միջին հաշվով կազմում է ընդամենը 32,8 ցենտներ, բազմամյա խոտաբույսերինը՝ 43,5, կերի արմատապտուղներինը՝ 215, սիլոսացու եգիպտացորենինը՝ 137, միամյա սիլոսացու խոտաբույսերինը՝ 128 ցենտներ:

Չլուծված պրոբլեմ է մնում կերային կուլտուրաների ցանքերի համար ոռոգելի հողերի օգտագործումը, որոնց փոխհատուցումը դեռևս շատ ցածր է:

Ընկ. Կ. Ս. Դեմիրճյանը քննադատական սուր խոսք է ասում համապատասխան մինիստրությունների ու գերատեսչությունների, մի շարք շրջանների կուսակցական, սովետական ու տնտեսական ղեկավարների հասցեին, որոնք պատշաճ ուշադրություն չեն նվիրում կերարտադրությունը անասնապահության այսօրվա պահանջներին համապատասխան կազմակերպելու, կերային կուլտուրաների ցանքատարածություններն ընդարձակելու, դրանց բերքատվությունը բարձրացնելու անհետաձգելի հարցերին:

1979 թվականին Ղափանի, Սևանի, Ազիզբեկովի, Շամշադինի և Աբովյանի շրջանների կոլտնտեսություններում ու սովխոզներում կերային արմատապտուղների միջին բերքատվությունը հեկտարից կազմել է ընդամենը 14,2-ից

մինչև 85,7 ցենտներ: Ապարանի, Գուգարքի, Գորիսի և Վարդենիսի շրջանների կոլտնտեսություններում հեկտարից ստացել են 46—108 ցենտներ սիլոսացու միամյա խոտաբույսեր, Ամասիայի, Արթիկի, Մասիսի և Ստեփանավանի շրջանների կոլտնտեսություններում և պետական տնտեսություններում՝ 19,4—29,9 ցենտներ միամյա խոտ, իսկ Թալինի, Աշտարակի, Շամշադինի, Շահումյանի և Կամոյի շրջանների տնտեսությունները յուրաքանչյուր ոռոգելի հեկտարից ստացել են ընդամենը 19,8—31,5 ցենտներ բազմամյա խոտ: Հիշյալ շրջանների ղեկավարները փորձում են ցածր ցուցանիշները բացատրել միայն անբարենպաստ հողակլիմայական պայմաններով: Սակայն ցածր բերքի ստացման հիմնական պատճառներն են ագրոտեխնիկայի անբավարար մակարդակը, ոռոգման ռեժիմի խախտումը և պարարտացման թույլ դոզաները:

Կուսակցական, սովետական, գյուղատնտեսական տեղական մարմինները, տնտեսությունների ղեկավարները և մասնագետները պետք է ամեն ինչ անեն, որպեսզի ամենուրեք ոռոգելի հողերի յուրաքանչյուր հեկտարից ստացվի միջին հաշվով 300—350 ցենտներ սիլոսացու եգիպտացորեն, 65—70 ցենտներ բազմամյա և 40—45 ցենտներ միամյա խոտ, 400—500 ցենտներ կերային արմատապտուղ, 250—300 ցենտներ սիլոսացու կերախառնուրդ: Դրա համար հանրապետությունում կան թե՛ բնական և թե կլիմայական բոլոր պայմանները:

Մեծ են հնարավորությունները խողանացան և միջանկյալ կերային կուլտուրաների կայուն բերք ստանալու համար, այն էլ մեծ հողատարածությունների վրա: Սակայն դա արվում է ոչ ամենուրեք: Խողանացան և միջանկյալ կուլտուրաների ցանքատարածությունները հարկավոր է հասցնել 7—10 հազար հեկտարի, իսկ կերի կուլտուրաների միջին բերքատվությունը՝ հեկտարից 250—300 ցենտների:

Ամեն տարի հանրապետությունում չօգտագործված է մնում հազարավոր հեկտար վարելահող: Անհրաժեշտ է կոնկրետ խնդիր դնել, որպեսզի հենց այս գարնանից յուրաքանչյուր տնտեսությունում չօգտագործվող բոլոր հողերը հատկացվեն կերի կուլտուրաներին:

Պետպլանը, գյուղատնտեսության մինիստրությունը, շրջսովետների գործկոմները անհապաղ պետք է ձեռնամուխ լինեն հանրապետության յուրաքանչյուր շրջանում ցանքատարածությունների կառուցվածքի վերանայմանը՝ այն հաշվով, որ տասնմեկերորդ հնգամյակում ամեն շրջան, ամեն տնտեսություն արդեն ունենա ցանքատարածությունների գիտականորեն հիմնավորված կառուցվածք, գյուղատնտեսական կուլտուրաների ու բազմամյա խոտաբույսերի բոլոր սորտերի և դրանց տեսակային կազմի հստակ պատկերը: Լուրջ աշխատանք պետք է կատարվի բազմամյա խոտաբույսերի՝ առվույտի, կորնգանի, երեքնուկի և հատիկաընդեղեն մյուս կուլտուրաների ցանքատարածություններն ավելացնելու համար: Հանրապետության պայմաններում ոռոգելի կերարտադրության գլխավոր կուլտուրան առվույտն է, որն անփոխարինելի է սպիտակուցի պակասը լրացնելու առումով և այդ տեսակետից մրցակից չունի: Բայց մենք ինչպե՞ս ենք օգտագործում դրա ավելացման ռեզերվները: Տեղնուտեղը ասենք՝ շատ վատ:

Գյուղատնտեսության մինիստրությունը, կուսակցության շրջկոմները, շրջգործկոմները պետք է հասնեն այն բանին, որ ոռոգելի հողերում, այնտեղ, ուր հնարավոր է, կորնգանի և մյուս խոտաբույսերի փոխարեն պարտադրաբար մշակվի առվույտ: Հարկավոր է կազմակերպել սերմնաբուծական հատուկ տնտեսություններ, այն հաշվով, որ լրիվ բավարարվեն հանրապետության պահանջմունքները: Իսկ ոչ ոռոգելի երկրագործության մյուս բոլոր գոտիներում առաջնությունը պետք է տրվի կորնգանին, որի ցանքատարածությունները հանրապետությունում հարկավոր է հասցնել 125—130 հազար հեկտարի:

Հանրապետությունում ռեալ հնարավորություններ կան նաև երեքնուկի և մյուս բազմամյա խոտաբույսերի մշակման համար:

Դաշտային կերարտադրությունում կիրառելով մշակման բարձր ագրոտեխնիկա, արդյունավետ օգտագործելով հանքային և օրգանական պարարտանյութերը, ոռոգելի ջուրը, կարելի է շեշտակի ավելացնել բազմամյա խոտաբույսերի արտադրությունը: Դա էապես կվերափոխի կերի բազան և պրոտեինի



զգալի պարունակության շնորհիվ հուսալի աղբյուր կծառայի կերի սպիտակուցի պակասի լրացման համար:

Խոսելով եգիպտացորենի և կերային արմատապտուղների հիբրիդների մշակման՝ որպես հյութալի կերի ավելացման հիմնական աղբյուրի մասին, զեկուցողը նշում է, որ գյուղատնտեսության մինիստրությունը, նրա գիտահետազոտական ինստիտուտները և տեղական գյուղատնտեսական մարմինները որոշակի աշխատանք են կատարել հիբրիդների արմատավորման և եգիպտացորենային սիլոսի ավելացման բնագավառում: Սակայն արվածը բավարար չէ: Այժմ եգիպտացորենային սիլոսի տեսակարար կշիռը կազմում է ընդամենը 50—55 տոկոս: Հարկ է վաղահաս սորտերի ու հիբրիդների ցանքատարածությունները հասցնել 20 հազար հեկտարի, որը հնարավոր կդարձնի կուտակել տարեկան ավելի քան մեկ միլիոն տոննա եգիպտացորենային սիլոս:

Մենք պետք է մեկ կովի հաշվով ունենանք 2—2,5 տոննա կերային արմատապտուղ: Ապահովելով այդ՝ հաստատ կարելի է ասել, որ յուրաքանչյուր կովից 2.500—3.000 կիլոգրամ կաթ ստանալը ռեալ գործ է: Ուստի գյուղատնտեսության մինիստրությունը, կուսակցության շրջկոմները, շրջգործկոմները պետք է մշակեն կոնկրետ միջոցառումներ՝ ապահովելու հանրապետության կոլտնտեսություններում և սովխոզներում տարեկան 350—400 հազար տոննա արմատապտուղների արտադրությունը:

Կերի կայուն բազայի ստեղծման կարևոր ռեզերվ է բնական կերահանդակներում կերի արտադրության ավելացման և դրա որակի բարձրացման հնարավորությունների ռացիոնալ օգտագործումը: Սակայն բնական կերահանդակների, հատկապես արոտավայրերի անտնտեսվար օգտագործումը, մակերեսային և արմատական բարելավման միջոցառումների կոմպլեքսի ձևական կիրառումը հանգեցրել են դրանց արդյունավետության էական նվազման: Հանրապետության արոտավայրերի յուրաքանչյուր հեկտարի միջին բերքատվությունը չի անցնում 10—12 ցենտներ կանաչ զանգվածից, իսկ խոտհարքների հեկտարի բերքատվությունը վերջին տասը տարում չի անցնում 15 ցենտներից:

Հեկտարից 35—40 ցենտներ խոտ և արոտավայրերում՝ 25—30 ցենտներ չոր զանգված. հենց այդպիսի մակարդակի հասնելու խնդիր պետք է դնի պլենումը հանրապետության տեղական կուսակցական, սովետական և գյուղատնտեսական մարմինների առջև:

Լեռնային խոտհարքների և արոտավայրերի սակավարդյունավետ օգտագործման հիմնական պատճառներից մեկն այն է, որ բավարար ուշադրություն չի ցուցաբերվում անասնապահների աշխատանքի ու կենցաղի պայմանների բարելավման նկատմամբ: Հիմնական պատճառներից է նաև ճանապարհների ու մերձատար ուղիների վատ վիճակը, իսկ երբեմն էլ դրանց լրիվ բացակայությունը:

Առավել էժան և սննդարար կերի խոշոր աղբյուրներից մեկը մշակովի ոռոգելի արոտավայրերի ստեղծումն է: Սակայն այդ բնագավառում գործերը բարեհաջող չեն: Բնական կերահանդակների արդի վիճակը և դրանց օգտագործումը արմատապես բարելավելու շահերը հրամայաբար պահանջում են մշակել խոտհարքների և արոտավայրերի արդյունավետ օգտագործման կոմպլեքսային ծրագիր: Այդ ծրագրի հաջող իրագործման համար, ըստ երևույթին, նպատակահարմար կլիներ հանրապետությունում ունենալ մարգագետինների մելիորացման և հակաէրոզիոն միջոցառումների անցկացման մասնագիտացված ծառայություն, որտեղ կկենտրոնացվեն բոլոր անհրաժեշտ օղակները, ստորաբաժանումները և նյութատեխնիկական միջոցները, պարարտանյութերը, հերբիցիդները և այլն:

Կերի կուլտուրաների բերքատվության և բնական կերահանդակների արդյունավետության բարձրացման պրոբլեմի հետ ուղղակի ու անմիջական կապ ունի պարարտանյութերի պրոբլեմը: Հայտնի է, որ հանրապետությանն ամեն տարի հատկացվում են 430 հազար տոննա հանքային պարարտանյութեր: Բավարար քանակությամբ պարարտանյութերի առկայության պայմաններում Ազիզբեկովի, Ղուկասյանի, Թալինի, Վարդենիսի, Գորիսի և այլ շրջաններում կերային կուլտուրաների մեկ հեկտարին տրվում է նորմայից 2,5—3 անգամ

հիմնարկությունների ու կազմակերպությունների անասնապահական մթերքների արտադրության օժանդակ տնտեսությունների կազմակերպման ու դրանց նորմալ գործունեության հարցերին և միջոցներ ձեռնարկել այստեղ եղած մեծ հնարավորություններն օգտագործելու համար:

Անասնապահության հետագա զարգացման բոլոր նախատեսված միջոցառումները ցանկալի արդյունք չեն տա՝ առանց անասնաբուժական-սանիտարական պատշաճ սպասարկման: Անասնաբուժական ծառայության աշխատանքի հիմնական թերություններից մեկն այն է, որ այսօր հանրապետությունում չկա բրուցելյոզի դեմ մղվող պայքարի ամբողջական սիստեմ: Պետք է ուղղակի ասել, որ հանրապետության շատ շրջաններում այդ հիվանդությունը կրիտիկական վիճակ է ստեղծել կաթնային անասնապահության մեջ:

Լուրջ թերություններ կան թռչնաբուծության և խոզաբուծության անասնաբուժական սպասարկման գործում, հատկապես պետական համալիրներում: Մեր անասնաբուժական ծառայությունը վճռականություն հանդես չի բերում կենդանիների հիվանդությունների դեմ մղվող պայքարում:

Հայաստանի կոմկուսի Կենտկոմը հատուկ ուշադրություն է նվիրում գյուղական շինարարության ընդլայնմանը և դրա որակի բարձրացմանը՝ որպես գյուղատնտեսության նյութատեխնիկական բազայի ամրապնդման կարևորագույն օղակի:

Սակայն գյուղական շինարարության մեջ դեռ կան շատ թերություններ և լուրջ վրիպումներ: Բանն այն է, որ այդ նպատակին հատկացվող միջոցները լրիվ չափով չեն իրացվում, փոշիացվում են: Դրա հետևանքով վիժեցվում են օբյեկտների գործարկման ժամկետները, մեծանում է անավարտ շինարարության ծավալը, մի բան, որն զգալի վնաս է հասցնում անասնապահության զարգացմանը: Մենք քանիցս ասել ենք և այսօր նորից կրկնում ենք. անթույլատրելի է, որ գյուղական շինարարության մինիստրությունը, որն ստեղծվել է հատկապես գյուղատնտեսական օբյեկտների կառուցման համար, ամեն տարի ընդհանուր առմամբ գերակատարելով կապալային աշխատանքների պլանները, սիստեմատիկաբար ձախողում է գյուղատնտեսական օբյեկտների գործարկման պլանը: Եվ դա այն պայմաններում, երբ մինիստրությունն օգտվում է դիրեկտիվ մարմինների կողմից հատկապես գյուղատնտեսական կառույցների համար սահմանված նյութատեխնիկական ապահովման բոլոր արտոնություններից:

Մյուս կողմից գյուղատնտեսության մինիստրությունը, նրա համապատասխան նախագծային ինստիտուտը, շրջանային կազմակերպությունները, կոլտնտեսություններն ու պետտնտեսությունները շարունակում են վատ կատարել պատվիրատուի պարտականությունները, շինարարներին ժամանակին չեն ապահովում նախագծային-նախահաշվային փաստաթղթերով և կառուցահարմար հողամասերով, ձգձգում են կառույցների կոմպլեկտավորումը, խախտում են տեխնոլոգիական և մյուս սարքավորումների մատակարարման ժամկետները: Գյուղական շինարարությանն անբավարար ուշադրություն են նվիրում նաև գյուղտեխպետկոմը, մոնտաժային և հատուկ շինարարական աշխատանքների գլխավոր վարչությունը և հանրապետության այլ կազմակերպություններ, որոնք սիստեմատիկաբար ձգձգում են համեմատաբար ոչ մեծածավալ մոնտաժային աշխատանքների կատարումը: Գյուղական շինարարության հարցերով վատ են զբաղվում շրջանային կուսակցական, սովետական և գյուղատնտեսական մարմինների շատ ղեկավարներ: Անհրաժեշտ է արմատապես բարելավել անասնապահական օբյեկտների կառուցման գործը, լիովին և արդյունավետորեն իրացնել այդ նպատակներին հատկացված կապիտալ ներդրումները:

Պետշինը, պետպլանը, գյուղատնտեսության և շինարարական մինիստրությունները պետք է կարճ ժամանակամիջոցում մշակեն և իրականացնեն միջոցառումներ, որոնք կապահովեն օբյեկտների կառուցումը կարճ ժամկետներում, ավելի նվազ ծախսումներով: Անհրաժեշտ է անասնապահական շենքերը նախագծելիս և կառուցելիս հաշվի առնել թե՛ շրջանների բնակլիմայական



առանձնահատկությունների և թե անասնապահական ճյուղերի զարգացման հեռանկարները:

Անասնապահական մթերքների արտադրության աճն արագացնելու նպատակով գործադրվող միջոցառումների համակարգում առաջնակարգ նշանակություն ունի արտադրապրոցեսների մեքենայացումը: Վերջին ժամանակներս անասնապահական ֆերմաների և համալիրների տեխնիկական զինման գործում քիչ բան չի արվել: Դրա հետ մեկտեղ խնդիր է դրվում է՛լ ավելի բարձրացնել մեքենազինվածության մակարդակը, աշխատատար պրոցեսների մեքենայացման աստիճանը, խորացնել պահանջկոտությունը ֆերմաների ամբողջ տեխնիկայի օգտագործումը բարելավելու բնագավառում:

Սակայն շրջանային գյուղատնտեսական մարմինների, կոլտնտեսությունների և պետական տնտեսությունների ղեկավարների անպատասխանատու վերաբերմունքի պատճառով շատ տնտեսությունների ֆերմաներում տեխնիկան անգործության է մատնված: Օրինակ, հանրապետության կոլտնտեսությունների և պետական տնտեսությունների ֆերմաներում չեն գործում 26 հազար գլուխ կովեր կթելու ագրեգատները, 40 հազար գլուխ անասունների համար նախատեսված կերաբաշխիչները, կերավերամշակման մեծ թվով մեքենաներ և այլ տեխնիկա: Ըստ երևույթին, մեր շատ տնտեսական ղեկավարներ չեն հասկանում, որ այդ ամենը թանկացնում է անասնապահական մթերքների ինքնարժեքը, մեծ վնաս է հասցնում տնտեսությունների էկոնոմիկային, նպաստում է կադրերի հոսունությանը: Ժամանակն է վերջ դնել դրան:

Պետպլանը, գյուղատնտեսության մինիստրությունը, գյուղտեխպետկոմը և շրջգործկոմները պետք է մշակեն կոլտնտեսություններում ու պետական տնտեսություններում անասնապահության մեջ աշխատատար պրոցեսների մեքենայացման կոմպլեքսային հնգամյա պլաններ:

Հայգյուղտեխպետկոմը և «Հայգյուղմեխանիզացիա» գիտահետազոտական ինստիտուտը պետք է կոնկրետ միջոցներ ձեռնարկեն՝ ապահովելու անասնապահական ֆերմաներում օգտագործվող մեքենաների ու սարքավորումների համակարգի հետագա կատարելագործումը, դրանց արտադրողականության բարձրացումը:

Անհրաժեշտ է կոլտնտեսություններում ու սովխոզներում, անասնապահական համալիրներում, թռչնաֆաբրիկաներում անասնաբուժական ծառայությունն ամրապնդել որակյալ մասնագետներով, նրանց համար ստեղծելով նորմալ արտադրակենցաղային պայմաններ, ինչպես նաև անասնաբուժական ծառայության հիմնարկությունները հագեցնել անհրաժեշտ նյութատեխնիկական միջոցներով:

Անասնապահական մթերքների արտադրության ծավալների մեծացման հետ մեկտեղ մեծ նշանակություն ունի արտադրվող մթերքների որակը: Պետք է, ասում է ընկ. Կ. Ս. Դեմիրճյանը, շեշտել, որ վերջին տարիներին հանրապետությունում քիչ բան չի արվել այդ բնագավառում: Բայց հարկ է նշել նաև, որ շատ կոլտնտեսություններում ու սովխոզներում պատշաճ ուշադրություն չի նվիրվում այդ կարևոր գործին: Ահա արդեն մի քանի տարի է, ինչ պետությանը վաճառված կաթի միջին յուղայնությունը չի անցնում 3,5—3,6 տոկոսից: Ցածր է նաև պետությանը վաճառվող բրդի որակը:

Մսեղենի և կաթնեղենի արդյունաբերության, մթերումների և գյուղատնտեսության մինիստրությունների ցածր պահանջկոտության հետևանքով մթերող առանձին ձեռնարկություններ, կոլտնտեսություններ ու պետական տնտեսություններ հաճախ չեն պահպանում կաթի անհրաժեշտ որակը, ընդունվող անասունների կոնդիցիան որոշելու սահմանված ստանդարտները և կարգը: Իսկ մսեղենի և կաթնեղենի արդյունաբերության մինիստրության առանձին ձեռնարկություններ կաթնամթերքներն ու մսամթերքները թողարկում են սահմանված ստանդարտների խախտումներով:

Ժամանակն է, որ պետպլանը, մսեղենի և կաթնեղենի արդյունաբերության, գյուղատնտեսության և մթերումների մինիստրությունները լուծեն անմիջականորեն կոլտնտեսություններից ու պետական տնտեսություններից ար-

տադրանքի ընդունման և փոխադրման հարցը, ամրապնդեն մթերող կազմակերպությունների նյութատեխնիկական բազան։

Նշելով անասնապահության հետագա զարգացման, դրա բուռ ամենայնի ինտենսիվացման գործում գիտական որոնման արդյունավետության, գիտատեխնիկական առաջընթացի նվաճումների գործնական կիրառման նշանակությունը, զեկուցողն ասում է, որ զոոտեխնիկական և անասնաբուժական գիտությունների զարգացումը առայժմ չի համապատասխանում անասնապահության արդյունավետության բարձրացման հարաճուն պահանջներին։ Ետ են մնում կերի կուլտուրաների, հատկապես սպիտակուցի մեծ պարունակություն ունեցող կուլտուրաների, մարգագետնաարոտավայրային խոտաբույսերի նոր, ինտենսիվ կերարտադրության պահանջներին համապատասխանող սորտերի մշակման աշխատանքները։ Խիստ դանդաղ են մշակվում անասնապահությունը արդյունաբերական հիմքի վրա դնելու և դրա մթերատվությունը բարձրացնելու պրոբլեմները։ Թերություններ կան նաև գիտահետազոտական աշխատանքների պլանավորման-կոորդինացման գործում, որոնք հանգեցնում են դրանց անհարկի կրկնորդման, գիտական հիմնարկությունների ուժերի ու միջոցների փոշիացման, պրոբլեմների լուծման ժամկետների ձգձգման։ Առանձին գիտական հիմնարկություններ, որոնք կոչված են ապահովելու անմիջական կապը գյուղատնտեսական արտադրության հետ, կոլտնտեսություններին, պետական տնտեսություններին և մյուս գյուղատնտեսական ձեռնարկություններին պատշաճ օգնություն ցույց չեն տալիս նրանց աշխատանքի արդյունավետությունը բարձրացնելու գործում։ Մի՞թե զոոտեխնիկական և անասնաբուժական գիտության ետ մնալու, արտադրության հետ նրա թույլ կապի մասին չեն վկայում խոշոր եղջերավոր անասունների, ոչխարների, խոզերի ցեղայնության չափազանց դանդաղ բարելավման փաստերը, մանավանդ որ գործարկված են մասնագիտացված անասնապահական խոշոր համալիրներ և ֆերմաներ։ Կամ մի՞թե դրա վկայությունը չէ նաև կոլտնտեսությունների և պետական տնտեսությունների ֆերմաների մեծ մասի անասնաբուժական-սանիտարական վատ վիճակը։ Հատուկ մտահոգության առարկա է այն, որ հանրապետությունում չկա արտադրության մեջ գիտության նվաճումների ներդրման գործուն համակարգ։ Ավելին, գիտության և առաջավոր փորձի նվաճումները չեն կիրառվում նույնիսկ փորձնաարտադրական, փորձարարական և ուսումնական տնտեսություններում։

Պետպլանը, գիտությունների ակադեմիան, գյուղատնտեսության, մելիորացիայի և ջրային տնտեսության մինիստրությունները, գյուղտեխպետկոմը պետք է վճռական միջոցներ ձեռնարկեն բարձրացնելու գյուղատնտեսական գիտահետազոտական հաստատությունների և բուհերի պատասխանատվությունը կոլտնտեսային ու սովխոզային արտադրության գիտատեխնիկական առաջընթացն արագացնելու համար, մշակեն գյուղատնտեսական արտադրության մեջ գիտության նվաճումների և առաջավոր փորձի պլանաչափ արմատավորման համակարգ, հատուկ ուշադրություն դարձնեն հետազոտությունների կազմակերպման, դրանց ռացիոնալ կոորդինացման հարցերին, գիտության ուժերը և միջոցները կենտրոնացնեն գյուղատնտեսական արտադրության զարգացման, դրա ինտենսիվացման նպատակային ծրագրերի մշակման վրա, որոնք ընդգրկեն տեխնիկական, տեխնոլոգիական, տնտեսական, կազմակերպական և սոցիալական հարցերի ողջ միագումարը։

Գյուղատնտեսության հաջողությունները մեծապես կանխորոշվում են մասնագետ կադրերի հետ տարվող աշխատանքով, կոլտնտեսային ու սովխոզային արտադրության զարգացման գործում նրանց դերի բարձրացման նկատմամբ հոգատարությամբ։

Հայաստանի կոմկուսի Կենտկոմի 1975 թվականի հունվարյան և հուլիսյան պլենումները գյուղատնտեսական ձեռնարկությունների ղեկավարների և կուսակցական կազմակերպությունների ղեկավարների և տնտեսությունների ու սովխոզների առջև խնդիր դրեցին բարելավել կոլ- սերի և ամենից առաջ բաժանմունքների, բրիգադների, ֆերմաների և արտադրության միջին օղակի մյուս ստորաբաժանումների գործունեությունը, դրանք



ամրապնդել մասնագետ կադրերով։ Սակայն ամենուրեք չէ, որ վճռական քայլեր են արվում՝ անհրաժեշտ պայմաններ ստեղծելու, որ մասնագետները աշխատանքի անցնեն որպես արտադրական ստորաբաժանումների ղեկավարներ, որ բարոյապես ու նյութապես խրախուսվի նրանց աշխատանքը։

Իսկ դա շատ անհրաժեշտ է, քանի որ անասնապահական ֆերմաների վարիչների ընդհանուր թվի մոտ 50 տոկոսը պրակտիկ աշխատողներ են և չունեն մասնագիտական գյուղատնտեսական կրթություն։

Սևանի շրջանում պրակտիկ աշխատողներ են ֆերմաների վարիչների 85 տոկոսը, Արագածի շրջանում՝ 72, Սպիտակի շրջանում՝ 77, Գուգարքի շրջանում՝ 70, Կալինինոյի շրջանում՝ 64, Թալինի շրջանում՝ 46, Ստեփանավանի շրջանում՝ 51, Ամասիայի շրջանում՝ 71 տոկոսը։

Համապատասխան մարմինների խնդիրն է՝ գործուն միջոցների դիմել կոլտնտեսությունների և պետտնտեսությունների մասնագետներին տեղերում ամրացնելու համար, մշտապես հոգ տանել նրանց բնակարանային և կուլտուր-կենցաղային պայմանների բարելավման մասին, կատարելագործել անասնապահության համար կադրեր պատրաստելու սիստեմը, մասսայական պրոֆեսիաների կադրերի պատրաստման ու վերապատրաստման համար ավելի արդյունավետ օգտագործել գյուղատնտեսական ինստիտուտների հնարավորությունները, բարելավել տնտեսագիտական պարտուսի, որակավորման բարձրացման դպրոցների ու դասընթացների աշխատանքը, զգալիորեն ակտիվացնել առաջավոր փորձի ուսումնասիրումն ու տարածումը։

Հանրապետության տնտեսություններում նախրապանների, հովիվների, կթվորուհիների պակաս է զգացվում։ Կադրեր քիչ են պատրաստվում արդյունաբերական անասնապահության համար։ Պետք է ասել ևս մի արատավոր միտումի մասին, որը նկատվում է մեր կոլտնտեսություններում և պետտնտեսություններում։ Խոսքը վերաբերում է նշված կատեգորիաների աշխատողների, այսպես կոչված՝ «հրավիրմանը» հարևան շրջաններից, իսկ հաճախ նաև հանրապետություններից։ Բանը հասել է այնտեղ, որ հանրապետությունում միջավորապես երեք նախրապանից, հովվից մեկը հրավիրված անձ է, ժամանակավոր աշխատող։

Անասնապահության ընդհանուր վերելքի ապահովման գործում զեկուցողը շեշտում է շեֆական աշխատանքի կարևորությունը։ Մենք, ասում է նա, պետք է այդ գործը դնենք լուրջ հիմքի վրա, հասնենք այն բանին, որ յուրաքանչյուր ձեռնարկություն, յուրաքանչյուր կազմակերպություն, կառույց իր հնարավորությունների չափով մասնակցի գյուղատնտեսության, մասնավորապես անասնապահության զարգացմանը։

Անասնապահության հետագա վերելքի համար մղվող պայքարի նոր փուլը պահանջում է կուսակցական ղեկավարման ավելի բարձր մակարդակ, կազմակերպչական ու քաղաքական աշխատանքի ավելի կատարյալ մեթոդներ։ Հանրապետության անասնապահության ինտենսիվացման նախատեսվող ծրագրի իրագործումը հեռանկարային գործ է, որն իրականացվելու է պլանաչափորեն, հետևողականորեն և մտածված կերպով։ Կուսակցության գյուղական շրջկոմները պետք է դառնան անասնապահությունը որակապես նոր աստիճանի վրա բարձրացնելու պայքարի իսկական շտաբներ, հմտորեն ուղղություն տան և կոորդինացնեն գյուղի պետական, հասարակական և գյուղատնտեսական բոլոր կազմակերպությունների գործունեությունը, այն ենթարկելով միասնական նպատակի։ Անասնապահության զարգացման վերջին տարիների հաջողությունները մեծապես պայմանավորված են նրանով, որ շրջանային կուսակցական կոմիտեները շարունակ կատարելագործում են կուսակցական, կազմակերպչական և քաղաքական աշխատանքը գյուղում։ Զեկուցողն այդ առումով նշում է կուսակցության Հրազդանի, Ախուրյանի, Էջմիածնի, Նաիրիի, Կրասնոսելսկի, Սիսիանի, Սպիտակի, Ղուկասյանի, Արտաշատի և այլ շրջկոմների դրական աշխատանքը, որոնք սկսել են ավելի խոր ու բազմակողմանի զբաղվել անասնապահության զարգացման, գյուղատնտեսության հետագա վերելքի ասպարեզում կուսակցության նախատեսած խնդիրների կատարման հարցերով։

Կուսկազմակերպությունների մեծամասնությունը պատշաճ ուշադրություն է նվիրում կուսակցական որոշումների կատարման վերահսկողությունն ու ստուգումը բարելավելուն, դրանց իրականացման նպատակով կազմակերպչական աշխատանքն ուժեղացնելուն: Դրա հետ մեկտեղ գյուղատնտեսության ղեկավարման ասպարեզում կուսակցության գյուղական շատ շրջկոմների աշխատանքի մակարդակը դեռևս լիովին չի համապատասխանում արդի պահանջներին: Բնավ ոչ բոլոր շրջկոմներն են ինչպես հարկն է զբաղվում անասնապահության զարգացման հարցերով, խորամուխ լինում տնտեսական ցուցանիշներում: Կուսակցության՝ Ազիզբեկովի, Թումանյանի, Մարտունու, Ապարանի, Գորիսի, Ամասիայի շրջանային կոմիտեները դեռևս անհրաժեշտ մակարդակով և ինչպես հարկն է չեն ղեկավարում անասնապահության զարգացման գործը, սեփական որոշումները չեն ամրապնդում կազմակերպչական ակտիվ աշխատանքով: Հիշյալ շրջանների կոլտնտեսություններում և պետական տնտեսություններում անասնապահության մեջ աշխատող կոմունիստների թիվն աննշան է:

Հայաստանի կոմկուսի Կենտկոմի 1975 թվականի հունվարյան և 1978 թվականի հուլիսյան պլենումներում ամենայն սրությամբ դրվեց կարգապահության ամրապնդման, գործերի վիճակի համար կադրերի պատասխանատվության բարձրացման հարցը: Հարկավոր է այդ մասին ասել նաև այսօր: Դա անասնապահության հետագա վերելքի կարևորագույն պայմաններից մեկն է: Ցավոք, մի շարք շրջաններում կուսակցական կազմակերպությունները պատշաճ ուշադրություն չեն հատկացնում անասնապահության առկա վիճակի համար մարդկանց պատասխանատվությունը բարձրացնելու, թերությունների նկատմամբ անհանդուրժողականություն դաստիարակելու, պետական և պլանային կարգապահությունն ըստ ամենայնի ամրապնդելու հարցերին: Հենց դրանով է մեծապես բացատրվում այն փաստը, որ պետությանը անասնապահական մթերքներ վաճառելու պլանները սիստեմատիկաբար չեն կատարում Ամասիայի, Ղափանի, Մեղրու, Եղեգնաձորի, Թալինի; Գուգարքի և մի քանի այլ շրջանների շատ տնտեսություններ:

Հարկավոր է ամենուրեք հաստատել աշխատանքի իսկական կուսակցական ստեղծագործական ոճ, որն անհամատեղելի է ինքնապահովագրման, պատասխանատվությունն ուրիշների վրա գցելու ձգտման հետ, կադրերին դաստիարակել աշխատանքի արդյունքների նկատմամբ քննադատական վերաբերմունքի ոգով, կազմակերպչական ու քաղաքական ներդաշնակ աշխատանքով գործունեության բոլոր օղակներում հասնել բարձր կազմակերպվածության, կարգապահության, գործարարության և պատասխանատվության:

Հայաստանի կոմկուսի Կենտկոմի պլենումը կուսակցական, սովետական և գյուղատնտեսական մարմիններից, տնտեսությունների սկզբնական կուսկազմակերպություններից ու ղեկավարներից պահանջում է, որ յուրաքանչյուր կոլտնտեսություն, սովխոզ, ֆերմա և բրիգադ ո՛չ միայն կատարի, այլև գերակատարի 1980 թվականի համար սահմանված պլանները: Սկզբնական կուսակցական, արհմիութենական և կոմերիտական կազմակերպությունները պետք է է՛լ ավելի բարձրացնեն սոցիալիստական մրցության դերն ու նշանակությունը, վճռականորեն ազատվեն այդ կարևոր գործում ձևամոլության ռեցիդիվներից:

Անասնապահության հետագա վերելքի կոմպլեքսային ծրագրի իրականացման գործում կոչված են մեծ դեր խաղալու սովետական, արհմիութենական և կոմերիտական կազմակերպությունները, ժողովրդական վերահսկողության մարմինները: Այն պահանջում է ըստ ամենայնի բարելավել գաղափարադաստիարակչական աշխատանքը: Հանրապետական և տեղական մամուլը, հեռուստատեսությունն ու ռադիոն պետք է լայնորեն պրոպագանդեն անասնապահության առաջավոր փորձը, ակտիվորեն պաշտպանեն ստեղծագործական նախաձեռնությունները, ամենայն սրությամբ քննադատեն թերությունները:

Անդրադառնալով հնգամյակի եզրափակիչ տարվա առաջին եռամյակի արդյունքներին, ընկ. Կ. Ս. Դեմիրճյանն այնուհետև գյուղական կուսակցական, սովետական, արհմիութենական և կոմերիտական կազմակերպությունների



առջև խնդիր է դնում ակտիվացնել աշխատանքը դաշտերի ու ֆերմաների աշխատավորների շրջանում, նրանց ուժերը մոբիլիզացնել՝ հաջողությամբ ավարտելու անասունների ձմեռումը; կազմակերպված և կարճ ժամկետներում անցկացնելու գարնան դաշտային աշխատանքները, դնելու 1980 թվականի բարձր բերքի հիմքերը:

1980 թվականը, ինչպես նշեց ընկեր Լ. Ի. Բրեժնևը ՍՄԿԿ Կենտկոմի 1979 թվականի նոյեմբերյան պլենումում, ո՛չ միայն ներկա հնգամյակի եզրափակիչ տարին է, այլև այն բազան, որի վրա կառուցվում է հաջորդ հնգամյակը: Դա կուսակցության XXVI համագումարի ակտիվ նախապատրաստության տարին է: Հենց այդ դիրքերից պետք է գնահատել կատարված աշխատանքը և 1980 թվականի խնդիրները:

Մի քանի օրից սովետական ժողովուրդը, ամբողջ առաջադեմ մարդկությունը կնշեն մեծ Լենինի ծննդյան 110-րդ տարեդարձը: Մեր հանրապետության աշխատավորները, ամբողջ հայ ժողովուրդը կնշեն Հայաստանում սովետական իշխանության հաստատման և Հայաստանի կոմկուսի կազմավորման 60-ամյակը: Այդ հոբելյանների արժանավայել նշանավորումը դարձել է հանրապետության բանվոր դասակարգի, կոլտնտեսային գյուղացիության, ժողովրդական մտավորականության, բոլոր աշխատավորների ջերմ ձգտումը, որոնք աշխատանքային և քաղաքական մեծ խանդավառությամբ գործի են վերածում հանրապետության տնտեսական ու սոցիալական զարգացման պլանները:

Ընկեր Կ. Ս. Դեմիրճյանը վերջում հավաստիացնում է ՍՄԿԿ լենինյան Կենտկոմին, ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար ընկեր Լ. Ի. Բրեժնևի գլխավորած Կենտկոմի քաղբյուրոյին, որ հանրապետության կոմունիստները, բոլոր աշխատավորները 1980 թվականը կդարձնեն հայրենանվեր գործերի, լենինաբար աշխատելու տարի, հաջողությամբ կեզրափակեն տասներորդ հնգամյակը և նոր մեծագործություններով կդիմավորեն ՍՄԿԿ XXVI համագումարը:

# ՔԱՂԱՔԱՑԻԱԿԱՆ ԱԿՏԻՎՈՒԹՅԱՆ ՀԶՈՐ ԱԶԴԱԿԸ

Մ**ԵՐ ԵՐԿՐԻ ՊԱՏՄՈՒԹՅՈՒՆԸ** հարուստ է համաժողովրդական հերոսության վառ դրվագներով։ Ավելի ճիշտ՝ այն մասսայական սխրագործությունների մի շարունակական պրոցես է, որի ընթացքում յուրաքանչյուր սերունդ, իրագործելով նոր հասարակարգի կառուցման տվյալ փուլի կոնկրետ խնդիրները, իր անգնահատելի ավանդն է ներդնում երկրի բարգավաճման ընդհանուր գործում։

Սովետական մարդկանց տարբեր սերունդների մաքառման հավաքական արդյունքը զարգացած սոցիալիստական հասարակարգի ստեղծումն է։ Եվ իրոք, եթե պատկերավոր ասելու լինենք, այդ հասարակարգի դիմանկարի վրա սովետական մարդկանց յուրաքանչյուր սերունդ թողել է իր անջնջելի դրոշմը։ Տարբեր են դրանք, ճիշտ այնպես, ինչպես որ տարբեր են այդ սերունդների ապրած ժամանակները, նրանց առջև ծառացած խնդիրները, կյանքի ու աշխատանքի պայմանները։ Բայց կա մի էական բան, որը բնորոշ է բոլոր այդ սերունդների համար և որի խոր կնիքը կրում են մեր անցյալի ու ներկայի բոլոր մեծագործությունները։

Դա սովետական մարդու հայրենասիրությունն է։

Ծնվել է այն Հոկտեմբերի բարիկադներում ու քաղաքացիականի բոցերում, թրծվել է առաջին հնգամյակների շինարարական հրապարակներում, դիմացել է Մեծ հայրենականի դաժան փորձություններին, հարստացել, նոր երանգներ է ձեռք բերել մեր ժամանակներում։ Այդուհանդերձ, իր գլխավոր հատկանիշներով նա մնացել է նույնը՝ անսահման նվիրվածություն սոցիալիստական հայրենիքին, նրա որդեգրած գաղափարներին ու նպատակներին։

Հայրենասիրական պարտքի ըմբռնման ու կատարման հիանալի օրինակ են տվել նրանք, ովքեր դրել են սոցիալիզմի կառուցման հիմնաքարերը։ Աշխատանքի նկատմամբ նոր վերաբերմունքը, որ մշակել են այժմ արդեն հանգստի անցած ավագ սերունդները, մենք ընդունում ենք որպես սոցիալական ու բարոյական չափանիշ, որով այսօր էլ ստուգվում է ընդհանուր գործի հանդեպ մեզանից յուրաքանչյուրի դրսևորած վերաբերմունքը։ Առաջին հնգամյակների հերոսների սխրանքը բնավ էլ պատմական անցյալ չէ մեզ համար։ Հասարակական պարտքի բարձր գիտակցումը, որն այնպես հատուկ էր նրանց, այժմ կենսագործունեության նորմ է դարձել սովետական մարդկանց վիթխարի մեծամասնության համար։

Մեր այսօրվա կյանքը, իհարկե, շատ բանով արդեն նման չէ ո՛չ միայն 20-ական, այլև նույնիսկ 50-ական թվականների կյանքին։ Լուծվել են մեծ թվով պրոբլեմներ, որ անցյալում հուզում էին մեզ, կատարվել են վիթխարի սոցիալ-տնտեսական տեղաշարժեր, անհամեմատ բարձրացել է մեր կենսամակարդակը։ Մենք ինքներս արդեն այն չենք, ինչ սրանից մի երեք տասնամյակ առաջ էինք. բարձրացել է մեր ընդհանուր կուլտուրան, ամրապնդվել է գաղափարական համոզվածությունը, աճել է սոցիալական ակտիվությունը։ Բայց մենք երբեք չենք մոռանում, որ այսօրվա մեր ձեռքբերումները ուղիղ գծով կապված են այն նույն հիմնաքարերի հետ, և որ դրանք Հոկտեմբերի



նյութականացված գաղափարներն են։ Ճիշտ այդպես էլ շարունակական է սովետական մարդու հայրենասիրությունը։

Իր վրա կրելով մեր տնտեսական, սոցիալական ու կուլտուրական վերելքի ազդեցությունը, այդ ամենից ներառելով առավել բարձրն ու վսեմը, սովետական հայրենասիրությունն իր հերթին խթանում է մեր առաջընթացը, դառնում նրա շարժիչ ուժերից մեկը։ Սերնդե-սերունդ անցնող այդ զգացման մեջ ամեն մի սերունդ դնում է իր հոգու լավագույնը, օժտում է նրան իր ժամանակի երանգներով, հարստացնում այն բանական ու հուզական նոր լիցքերով։

Բարոյաքաղաքական վիթխարի ուժով է տոգորված սովետական հայրենասիրությունը։ Լինելով մարդու հոգևոր զարգացման բարձրագույն դրսևորումներից մեկը, այն միլիոնների համար դարձել է կոմունիստական իդեալի իրականացման անսխալ գնահատման չափանիշ։ Մենք մեզ ստուգում ենք նրա պահանջներով և, անշուշտ, գոհ ենք լինում, երբ կատարվածը ներդաշնակում է այդ պահանջներին, իսկ շեղումների դեպքում ջանում ենք շտկել դրությունը, գունվել նրա չափանիշների բարձրության վրա։

Սովետական հայրենասիրության հիմքն այն է, որ նրա մարմնավորողը ողջ ժողովուրդն է, և որ նա սնվում է մարքս-լենինյան գաղափարախոսության մաքուր ակունքներից։ Սովետական հայրենասիրությունը, իբրև բարոյաքաղաքական ֆենոմեն, բոլորովին նոր որակ է և չունի իր նախադեպը։ Հայտնի է, որ բուրժուազիան իր շահադիտական նպատակներին հասնելու համար ամենանդպատակա ձևով ի չարն է գործադրում մասսաների հայրենասիրական զգացումները։ Կապիտալիստական հասարակության պայմաններում համազգային հայրենասիրության մասին խոսք անգամ չի կարող լինել, այստեղ այն դառնում է նացիոնալիզմի ու շովինիզմի կցորդը, ամբողջովին ի սպաս դրվում շահագործող դասակարգերի նպատակներին, քանի որ «կապիտալը հայրենիքի, ժողովրդի շահերից և ամեն բանից ավելի բարձր դասում է աշխատավորների դեմ բոլոր երկրների կապիտալիստների՝ իր դաշինքի պահպանումը» (Վ. Ի. Լենին, Երկեր, հ. 27, էջ 448)։

Սովետական ժողովրդի՝ մարդկանց այդ նոր պատմական հանրության կազմավորման ու զարգացման միջավայրում ձևավորվել են նաև քաղաքական ու սոցիալ-հոգեբանական նոր արժույթներ, որոնք ընդհանուր են մեր ողջ ժողովրդի համար։ Նման արժույթներից է սովետական մարդու համազգային հպարտությունը։

Պատմական նոր հանրության մեջ ներգրավված լինելու բուն իրողությունը դաստիարակչական մեծ ներգործություն ունի անհատի վրա, այն ընդլայնում է նրա գաղափարական-քաղաքական մտահորիզոնը, հայրենասիրության նրա ըմբռնումների ու պատկերացումների ծավալը։ Սակայն օբյեկտիվ իրականության այդ ազդեցությունը միայն այն դեպքում կարող է նպատակասլաց լինել, երբ զուգակցվում է կուսակցական, հասարակական կազմակերպությունների, պետական մարմինների ու արտադրական կոլեկտիվների համակողմանի աշխատանքի հետ։ Հենց կուսակցության քաղաքականության խոր ըմբռնման, դրա իրագործման ասպարեզում ունեցած անձնական ակտիվ մասնակցության, հասարակության ընդհանուր շահերին ծառայելու մեջ է ամենից առաջ արտահայտվում մեր քաղաքացու հայրենասիրությունը։

Եվ կուսակցությունը ջանում է, որպեսզի սովետական ամեն մի քաղաքացի՝ նյութական արտադրության ոլորտում, թե գիտության կամ մշակույթի ասպարեզում, դառնա մեր սոցիալ-տնտեսական պլանների ակտիվ կենսագործողը, որպեսզի ամեն ոք ըմբռնի ու կրի ընդհանուր գործի մեջ իր անձնական պատասխանատվության բաժինը։ Սովետական հայրենասիրությունը, այսպիսով, սերտ առնչվում է քաղաքացու ակտիվ կենսադիրքորոշման հետ, դրանք էապես լրացնում են միմյանց։ Հիրավի, անկարելի է հայրենասիրության ստորոգելիների մեջ չտեսնել մարդու ամենաակտիվ, սրտացավ վերաբերմունքն ու միջամտությունն այն ամենին, ինչը առնչվում է հարազատ երկրի ու ժողովրդի բախտին, և, ընդհակառակն, ակտիվ կենսադիրքորոշումն ինքնին ենթա-

տեղ իրենց գործնական մարմնավորումն են գտնում կոմունիստական իդեալները...» (ՍՄԿԿ XXV համագումարի նյութերը, էջ 6—7)։

Սոցիալիստական հայրենասիրությունը շեշտված դասակարգային բնույթ ունի, նրա ոգուն խորթ են ազգային սահմանափակվածությունն ու շովինիստական նկրտումները։ Սոցիալիստական համագործակցության երկրների պրակտիկան ցույց է տալիս, որ ազգային և ինտերնացիոնալ շահերի ճիշտ զուգակցումն ինչպես դրանցից յուրաքանչյուրի անշեղ զարգացման, այնպես էլ ողջ համագործակցության եղբայրական դաշինքի հետագա ամրապնդման հուսալի երաշխիքն է։ Այստեղ ազգայինն ու ինտերնացիոնալը դրսևորվում են իրենց դիալեկտիկական միասնության ու փոխպայմանավորվածության մեջ։ Ազգային գործոնների հիմքի վրա զարգանում են ինտերնացիոնալ պրոցեսները, իսկ ինտերնացիոնալ գործոնների ազդեցությամբ ազգային պրոցեսները ավելի խոր սոցիալական բնույթ են ստանում։

Ամենօրյա անշահախնդիր օգնության այս պրակտիկան վիթխարի ներգործություն ունի համագործակցության երկրների ժողովուրդների գիտակցության, ինտերնացիոնալիզմի ոգով նրանց դաստիարակության վրա։ Լինելով կոմունիստական բարոյականության դրսևորումներից մեկը, սոցիալիստական հայրենասիրությունը ևս, անտարակույս, նոր ուժեր է քաղում այդ պրակտիկայից, հարստանում նրա բովանդակությամբ։

Համագործակցության երկրների կառավարող կուսակցություններն իրենց պարտքն են համարում այսուհետ նույնպես աճող սերունդներին դաստիարակել սոցիալիզմի բախտի համար բարձր պատասխանատվության, քաղաքացիական պարտքի խոր ըմբռնման ոգով։ Այս տարվա մայիսին նշվում է Վարշավայի պայմանագրի կազմակերպության 25-ամյակը։ Ահա արդեն քառորդ դար սոցիալիստական երկրների ռազմական այդ դաշինքը հուսալիորեն կանգնած է սոցիալիզմի նվաճումների պաշտպանության դիրքերում։ Նրա դերն ավելի է մեծանում մեր օրերում, երբ Արևմուտքի իմպերիալիստական շրջանները ԱՄՆ-ի գլխավորությամբ համառորեն ջանում են ետ շրջել վերջին տասնամյակների համաշխարհային զարգացման բնականոն ընթացքը, աշխարհը կրկին վերադարձնել սառը պատերազմի մռայլ ժամանակները։

ՆԱՏՕ-ի երկրները, վկայակոչելով «սովետական սպառնալիքի» հնամաշ պատրվակը, եռանդուն կերպով մեծացնում են իրենց ռազմական բյուջեները, փորձում աշխարհը նորից ներքաշել սպառազինությունների մրցավազքի մեջ։ Բնորոշ է այս առումով ԱՄՆ-ի ռազմական բյուջեի աճի դինամիկան։ Վերջին տասը տարում այն կրկնապատկվել է, իսկ 1981 թ. Վաշինգտոնը մտադիր է իր միլիտարիստական նկրտումների համար ծախսել 160 միլիարդ դոլար, կամ երկրի բյուջեի ավելի քան 25 տոկոսը։ Դրանից ընդամենը չորս տարի հետո՝ 1985 թվականին, ԱՄՆ-ի ռազմական ծախսերը կավելանան ևս շուրջ 100 միլիարդ դոլարով։

Միջազգային իմպերիալիզմի ռազմաշունչ պլաններին սովետական երկիրն ու նրա դաշնակիցները հակադրում են լարվածության թուլացման, խաղաղության ամրապնդման իրենց հետևողական քաղաքականությունը։ Սոցիալիզմն ամենից առաջ խաղաղության կարիք ունի։ Մենք ոչ ոքի չենք սպառնում մեր ռազմական հզորությամբ։ Բայց և ոչ ոքի թույլ չենք տա սպառնալիքի ու թելադրանքի լեզվով խոսել մեզ հետ։

ՀԱՅՐԵՆԻՔԻ ՊԱՇՏՊԱՆԱԿԱՆ ՀԶՈՐՈՒԹՅՈՒՆԸ միշտ ժամանակի պահանջների մակարդակի վրա պահելու մտահոգությամբ կոմունիստական կուսակցությունը առանձնահատուկ ուշադրություն է դարձնում երիտասարդության ռազմահայրենասիրական դաստիարակությանը։ Սովետական բանակը կյանքի դպրոց է երիտասարդության համար, այստեղ կարծես ավարտվում է քաղաքացու լինելության պրոցեսը։ Հազիվ թե հարկ կա ապացուցել, որ զինվորական ծառայության բովով անցած երիտասարդը սովորաբար կյանքում ևս իրեն ամենալավ կողմերով է դրսևորում։

Ի դեմս երիտասարդության, սովետական զինված ուժերն ամեն տարի ար-



ժանի համալրում են ստանում։ Ժամանակակից երիտասարդը կրթական բարձր մակարդակի շնորհիվ արագորեն տիրապետում է ռազմական բարդ տեխնիկային, ծառայության առաջին իսկ տարում աչքի ընկնում մարտական ու քաղաքական պատրաստականությամբ։

Հայրենիքի երիտասարդ պաշտպանների թվում իրենց արժանի տեղն ունեն մեր հանրապետության տասնյակ հազարավոր պատանիները։ Զինվորական կոմիսարիատների, արտադրական կոլեկտիվների, հարազատների հասցեներով զորամասերից ստացվող բազմաթիվ նամակները վկայում են, որ հանրապետության կրթադաստիարակչական օջախները, հասարակական կազմակերպությունները համակողմանի աշխատանք են կատարում պատանիներին զինվորական ծառայության նախապատրաստելու, նրանց մեջ բարոյակամային անհրաժեշտ հատկություններ դաստիարակելու նպատակով։

Խնդրի կարևորությունը պահանջում է այսուհետ ևս ամեն կերպ բարելավել այդ գործի համար պատասխանատու կազմակերպությունների ու հաստատությունների աշխատանքը։ Իսկ դրանց թիվը փոքր չէ՝ ԴՕՍԱԱՖ, կոմերիտմիություն, արհմիություն, սովետներ, ժողովրդական կրթության մարմիններ, զինվորական կոմիսարիատներ, մասսայական ինֆորմացիայի միջոցներ, սպորտային կազմակերպություններ և այլն։ Կուսակցական մարմինները, որոնք միավորում են դրանց գործունեությունը և որոշում անելիքները, պետք է առանձնահատուկ ուշադրություն նվիրեն տարվող աշխատանքի որակական ցուցանիշների բարելավմանը։

Հարկ է՛ շեշտել հատկապես այդ աշխատանքների կոորդինացման ու սիստեմավորման անհրաժեշտությունը։ Առանձին-առանձին, մեկը մյուսից անկախ անցկացվող միջոցառումները չեն կարող տալ այն արդյունքը, ինչ միասնական պլանով, նույն նպատակակետին ուղղված ձեռնարկումների կոմպլեքսը։

Ռազմահայրենասիրական դաստիարակության կարևորագույն օղակներից է սովետական դպրոցը։ Հանրահայտ է նրա որոշիչ դերը քաղաքացու աշխարհայացքի, բարոյակամային հատկանիշների կազմավորման գործում։ Մեծապես դպրոցից է կախված, թե ինչպիսի համալրում է ստանում բանակը։ Պետք է նշել, սակայն, որ ռազմահայրենասիրական դաստիարակության ասպարեզում այստեղ դեռ քիչ թերություններ չկան։ Մի շարք դպրոցներում այդ նպատակի համար անբավարար են օգտագործվում այնպիսի առարկաների ընձեռած հնարավորությունները, ինչպիսիք են հասարակագիտությունը, պատմությունը, գրականությունը, աշխարհագրությունը։

Մշտական ուշադրություն է պահանջում հանրակրթական դպրոցներում և միջնակարգ-մասնագիտական ուսումնական հաստատություններում ռազմագիտության դասավանդման բարելավումը։ Ինչպես ամենուրեք, այստեղ ևս գործի հաջողությունը պայմանավորված է բանիմաց կադրերի առկայությամբ։ Բայց եթե ռազմական գիտության իմացության առումով դպրոցը հիմնականում ապահովված է որակյալ կադրերով, ապա նույնը չի կարելի ասել վերջիններիս մանկավարժական պատրաստության մասին։ Իրենց ճնշող մեծամասնությամբ զինղեկները բանակից զորացրված պահեստի սպաներ են, որոնք կյանքի մեծ դպրոց են անցել, լավ գիտեն ռազմական գործը, բայց ինչպես հարկն է տեղյակ չեն դեռահասների հետ տարվող աշխատանքի առանձնահատկություններին։ Իրավիճակը ինքն է թելադրում ելքը․ պետք է ամեն կերպ աջակցել այդ մարդկանց՝ բարձրացնելու իրենց մանկավարժական պատրաստականությունն ու մեթոդական վարպետությունը։

Երիտասարդության կոմունիստական դաստիարակության համակարգում առանձնահատուկ կարևորություն ունի նրա ֆիզիկական պատրաստությունը։ Երկիրը վիթխարի միջոցներ է տրամադրում ֆիզիկական դաստիարակության նյութատեխնիկական բազայի զարգացմանը, տարեցտարի ընդլայնվում է սպորտային համալիրների, հրապարակների, մարզադաշտերի, լողավազանների ցանցը, մեծ թվով մասնագետներ են ներգրավվում այդ ասպարեզում։ Սակայն փոխհատույցը, եթե գործի հաջողության մասին դատելու լինենք նրա

գլխավոր արդյունքի՝ ֆիզկուլտուրայի ու սպորտի մասսայականության չափանիշով, դեռևս բավական համեստ է։ Իսկ դա անհետևանք չի մնում նաև զինվորական ծառայության պատրաստվող կոնտինգենտի համար. զորակոչված պատանիների մեջ զգալի թիվ են կազմում նրանք, ովքեր իրենց ֆիզիկական պատրաստության մակարդակով չեն բավարարում ՊԱՊ համալիրի նորմայի պահանջները։

Ռազմահայրենասիրական դաստիարակության պրոցեսը պետք է հետամտի մի նպատակ՝ ամբողջ երիտասարդությանը ինչպես հարկն է նախապատրաստել զինվորական պարտքի կատարմանը, սպասվող դժվարությունների հաղթահարմանը։ Մեծ է այս գործում նաև սովետական ընտանիքի դերը, և մասսայական ինֆորմացիայի միջոցները պետք է ամեն կերպ օգնեն նրան՝ ժամանակակից պահանջների ոգով կատարելու իր այդ հայրենասիրական պարտքը։

Ծառայության որակը մեծապես պայմանավորված է նրանով, թե զորատեսակը որոշելիս նախապես որքանով են ճիշտ հաշվի առնվում այս կամ այն պատանու հակումները, պատրաստականությունը, ընդունակությունները։ Զինվորական կոմիսարիատները պետք է կանխեն այս բնագավառում նկատվող թերությունները և հնարավոր ամեն բան անեն, որպեսզի պատանին ծառայության մեջ կարողանա դրսևորել այն լավագույնը, ինչին ընդունակ է, պատվով կատարել հայրենիքի պաշտպանության իր սահմանադրական պարտականությունը։

ՍՈՎԵՏԱԿԱՆ ԺՈՂՈՎՈՒՐԴՆ իր սոցիալիստական հայրենիքի հզորությունը կռում, բազմապատկում է ամենօրյա ստեղծագործ աշխատանքով։ Փոխվում են սերունդները, փոխվում են նրանց մեծագործությունների մասշտաբները, բնույթը, հասցեները, բայց իրենց էությամբ, ներքին կապով ու տրամաբանությամբ 80-ական թվականները նույնքան հոգեհարազատ են 1917-ին, որքան և 20-ական թվականները։

Սովետական ժողովրդի բոլոր սերունդների համար քաղաքացիական ակտիվության, պարտաճանաչության ու բարեխղճության գերագույն դրսևորումը եղել ու մնում է գործուն մասնակցությունն այն խնդիրների լուծմանը, որ կոմունիստական շինարարության ամեն մի կոնկրետ փուլում առաջադրում է կուսակցությունը։

Մեր աճի մասշտաբներն արտացոլվում են մեր պլաններում։ Տասներորդ հնգամյակի համարձակ մտահղացումներում մարմնավորվել են նախորդ բոլոր հնգամյակների ու տարիների մեր նվաճումները, դրանց իրականացված արդյունքներում առարկայացել, իրենց խտացված արտահայտությունն են գտել ոչ միայն երկրի տնտեսական ու նյութական հնարավորությունները, այլև սինթեզվել են նրա հոգևոր ու բարոյական արժույթները։

Մենք ավարտում ենք հերթական՝ տասներորդ հնգամյակը, արդեն ուրվագծվում են նրա վերջնական արդյունքները։ Կարող ենք հպարտությամբ ասել՝ հիանալի աշխատեց սովետական ժողովուրդը. առաջընթաց մեծ քայլ է արվել կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծման, երկրի արտադրողական ուժերի զարգացման ասպարեզում։

Միութենական ընդհանուր աշխատանքային տեմպին ու ռիթմին համաքայլ են ընթանում նաև մեր հանրապետության աշխատավորները։ Նրանց եռանդով ու տաղանդով են նվաճվել այն պերճախոս արդյունքները, որոնց համար Հայկական ՍՍՀ-ն չորս տարի անընդմեջ արժանացավ համամիութենական սոցիալիստական մրցության հաղթողի կոչման։

Մարդկանց քաղաքական ու արտադրական ակտիվությամբ, ստեղծագործական նախաձեռնություններով առանձնապես աչքի է ընկնում 1980 թվականը։ Համաժողովրդական խանդավառության պայմաններում մենք նշեցինք Վ. Ի. Լենինի ծննդյան 110-ամյակը։ Հոբելյանը արժանավայել դիմավորելու ձգտումը համակել էր հարյուր հազարավոր բանվորների, կոլտնտեսականների, ծառայողների, գիտնականների... Հետևելով Մոսկվայի և Լենինգրադի



առաջավոր արտադրական կոլեկտիվների հայրենասիրական շարժմանը, հանրապետության հազարավոր աշխատավորներ, բազմաթիվ կոլեկտիվներ լենինյան հոբելյանի օրը զեկուցեցին իրենց հնգամյա պլանների կատարման մասին։ Շատ ձեռնարկություններ տնտեսված հումքի ու էներգիայի հաշվին այդ օրը երկրին տվեցին միլիոնավոր ռուբլու արտադրանք։ Հոբելյանի նախօրյակին հնգամյակն ավարտեցին Կիրովականի արդյունաբերական ձեռնարկությունները։

Հայրենասիրության վառ ցույցի վերածվեց համամիութենական լենինյան շաբաթօրյակը։ Աշխատանքի այս տոնին մասնակցեց շուրջ մեկ միլիոն 900 հազար մարդ, որից անմիջականորեն արտադրության մեջ՝ 623,8 հազար մարդ։ Հանրապետության արդյունաբերությունը թողարկեց 8,1 միլիոն ռուբլու արտադրանք, հնգամյակի ֆոնդ փոխանցվեց 1879,5 հազար ռուբլի։

Հնգամյակի ավարտական տարին մեր հանրապետության կյանքում հոբելյանական հերթափոխի տարի է. այն զուգադիպում է մի այլ կարևոր իրադարձության՝ սովետական կարգերի հաստատման և Հայաստանի կոմունիստական կուսակցության կազմավորման 60-ամյակի հետ։ Շարունակելով լենինյան հարվածային աշխատանքի հերթափոխը, արտադրական կոլեկտիվները ուշի-ուշով հնգամյակի առաջադրանքները համադրում են ձեռք բերված ցուցանիշների հետ, ջանքերն ուղղում այն նպատակին, որպեսզի հոբելյանին վայել ավարտի հասցվեն մեր բոլոր ձեռնարկումները։

Հանրապետությունը դեպի իր 60-ամյակն է գնում վստահ քայլերով, հետագա բարգավաճման պայծառ հեռանկարներով։ Հայկական ՍՍՀ ժողովրդական տնտեսության ու սոցիալական զարգացման մտահոգությամբ են թելադրված հանրապետության վերաբերյալ վերջին տարիներին ՍՄԿԿ Կենտկոմի և սովետական կառավարության ընդունած որոշումները, որոնք ռեալ նախադրյալներ են ստեղծել տնտեսության ճյուղային կառուցվածքի բարելավման, սոցիալական մի շարք հանգուցային պրոբլեմների լուծման, նյութական ու աշխատանքային ռեսուրսների առավել ռացիոնալ օգտագործման, ժողովրդի նյութական ու հոգևոր կյանքի հետագա վերելքի համար։ Հայաստանի կոմունիստական կուսակցությունը, հանրապետության կառավարությունը աշխատավորության ջանքերը հետևողականորեն նպատակամղում են այդ որոշումների անշեղ կենսագործմանը։

Սովետական ժողովուրդների լենինյան անխախտ դաշինքի մեջ է մեր ուժը, կոմունիստական կուսակցության լենինյան ազգային քաղաքականության մեջ է մեր հաջողությունների երաշխիքը։ Ռեալ սոցիալիզմի պատմական նվաճումներն իրենց վառ արտացոլումն են գտնում ինչպես մեր հետագա առաջընթացի նյութական հիմքի ամրապնդման, այնպես էլ ժողովրդի հոգևոր ու բարոյական արժույթների հարստացման մեջ։ Սովետական ժողովրդի համազգային անգնահատելի արժույթներից է սովետական մարդու հայրենասիրությունը։ Մեր բոլոր մեծագործությունների ակտիվ մասնակիցն է այն, և մեր խնդիրն է խնամքով, առավել մեծ արդյունավետությամբ գործադրել նրա հրաշագործ ուժը, նրա դեռևս կյանքի չկոչված պոտենցիալ հնարավորությունները։

# ՍՈՎԵՏԱԿԱՆ ԺՈՂՈՎՐԴԻ ԵՎ ՆՐԱ ԶԻՆՎԱԾ ՈՒԺԵՐԻ ՊԱՆԾԱԼԻ ՀԱՂԹԱՆԱԿԸ

**Ն. Ռ. ՖԻԼԻՊՈՎ**
ՍՍՀՄ պետական անվտանգության կոմիտեի
Անդրկովկասյան կարմրադրոշ սահմանապահ
օկրուգի զորքերի պետի տեղակալ, գեներալ-մայոր

*1945 ԹՎԱԿԱՆԻ ՄԱՅԻՍԻ 9-ԻՆ հաղթականորեն ավարտվեց Հայրենական մեծ պատերազմը: Այդ ժամանակվանից սովետական ժողովուրդը, նրա զինված ուժերը, ողջ առաջադեմ մարդկությունը մեծ հանդիսավորությամբ են նշում այդ օրը, որպես ֆաշիստական Գերմանիայի նկատմամբ տարած հաղթանակի տոն:*

*Տասնամյակները հաջորդում են իրար. կանցնեն դարեր, բայց մարդկությունը միշտ կհիշի սովետական ժողովրդի հերոսական սխրանքը, ժողովուրդ, որ կրեց երկրորդ համաշխարհային պատերազմի ողջ ծանրությունը և վճռական հաղթանակ տարավ համաշխարհային իմպերիալիզմի հարվածային ուժի՝ գերմանական ֆաշիզմի դեմ մղած պատերազմում:*

*Մոտ չորս տարի տևեց մարդկության պատմության մեջ չտեսնված այդ դաժան գոտեմարտը: Այդ պայքարի ընթացքում սովետական ժողովուրդը, բանակի և նավատորմի զինվորները, կոմունիստական կուսակցության ղեկավարությամբ, վիթխարի ջանքերի ու զոհերի գնով պաշտպանեցին Մեծ Հոկտեմբերի նվաճումները, սոցիալիստական հայրենիքի պատիվն ու անկախությունը, օգնեցին Եվրոպայի ու Ասիայի շատ երկրների՝ թոթափելու ֆաշիստական լուծը:*

*Միջազգային ռեակցիայի միավորված ուժերին հասցված ջախջախիչ հարվածի շնորհիվ աշխարհում հաստատվեց բազձալի խաղաղությունը: Ահա արդեն երեսունհինգ տարի է՝ սովետական մարդիկ ապրում և աշխատում են խաղաղ պայմաններում, կառուցում կոմունիստական հասարակության հոյակապ շենքը: Ըստ էության, սովետական ժողովրդի հետպատերազմյան տարիներին նվաճած պատմական նոր հաղթանակն է այդ՝ կոմունիստական կուսակցության ղեկավարությամբ: «Մեր նպատակը,— հայտարարեց ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար, ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության նախագահ Լ. Ի. Բրեժնևը,— կայուն խաղաղությունն ու անվտանգությունն է սովետական ժողովրդի համար, կայուն խաղաղությունն ու համագործակցությունը աշխարհի բոլոր պետությունների միջև: Եվ այդ նպատակին հասնելու համար մենք անդուլ կպայքարենք, չխնայելով ուժ ու եռանդ»:*

*Երկրորդ համաշխարհային պատերազմը ժողովրդի հիշողության մեջ կմնա իբրև ողջ մարդկության, սովետական մարդկանց ծանր փորձության անմոռաց դաս: Ժամանակն ավելի ու ավելի է ընդլայնում այդ հրաբորբ տարիների մեր տեսադաշտը, ավելի խոր ենք հասկանում գերմանական ֆաշիզմի նկատմամբ սովետական ժողովրդի տարած մեծ հաղթանակի կարևորությունը, հաղթանակ, որը վճռական նշանակություն ունեցավ և ամրապնդեց համաշխարհային ողջ պատմության ներկա ընթացքը:*



*Հայրենական մեծ պատերազմը սովետական պետության և նրա զինված*
*ուժերի ամրության, հաստատունության ամենադաժան փորձությունը եղավ:*
*Մեր կուսակցությունը կանխատեսում էր իմպերիալիզմի ռեակցիոն ուժերի հետ*
*ռազմական ընդհարման հնարավորությունը: Հավատարիմ լենինյան պատ-*
*գամներին, նա վճռական ու նպատակային պայքար էր ծավալում հանուն*
*խաղաղության՝ գործադրելով բոլոր ուժերը կոլեկտիվ ապահովության հուսալի*
*սիստեմի ստեղծման, ֆաշիստական ագրեսիայի դեմ կոլեկտիվ հակահարված*
*կազմակերպելու համար: Սակայն հանուն խաղաղության և ժողովուրդների*
*անվտանգության մղած ընդհանուր պայքարում ծառանում էին մի շարք ան-*
*հաղթահարելի դժվարություններ, որոնցից հարուցում էին իմպերիալիստական*
*շրջանները: Կուսակցության Կենտրոնական կոմիտեն և սովետական կառավա-*
*րությունը գիտակցում էին, որ քառասնական թվականների սկզբին ստեղծված*
*հակասությունների և միջազգային ծանր իրադրության (հատկապես Եվրոպա-*
*յում) պայմաններում ՍՍՀՄ-ը ֆաշիզմի համաշխարհային տիրապետության*
*նկրտումների ճանապարհին ծառացած գլխավոր խոչընդոտն է, որ հիտլերյան*
*Գերմանիայի հարձակումը Սովետական Միության վրա կդառնա միջազգային*
*իմպերիալիզմի երկրորդ փորձը՝ ռազմական ճանապարհով ոչնչացնելու ողջ*
*առաջավոր մարդկության փարոսը, բոլոր ճնշված ժողովուրդների հույսը՝ աշ-*
*խարհում առաջին սոցիալիստական երկիրը: Հասկանում էին, որ պատերազմը*
*չի լինի սոսկ երկու կոալիցիաների զինված ուժերի բախում, այն կհանդիսանա*
*երկու հակադիր սոցիալական սիստեմների՝ սոցիալիզմի և իմպերիալիզմի*
*անզիջում, իր մասշտաբներով ու դաժանությամբ աննախադեպ պայքար: Կու-*
*սակցությունը ժողովրդին ու երկիրը համակողմանի պատրաստում էր պաշտ-*
*պանության: Ամենից մեծ ուշադրություն էր նվիրվում տնտեսական, գաղա-*
*փարական և ռազմական պատրաստականությանը:*

*Կենսագործելով սոցիալիզմի կառուցման լենինյան պլանը՝ կոմունիստա-*
*կան կուսակցությունը պատմական կարճ ժամանակամիջոցում նախկին հե-*
*տամնաց Ռուսաստանը դարձրեց առաջավոր արդյունաբերական-կոլտնտեսա-*
*յին տերություն: Մեր կյանքի օբյեկտիվ ընթացքով ստեղծվում էր սովետական*
*հասարակության բարոյաքաղաքական միասնությունը, ամրապնդվում էր ժո-*
*ղովուրդների բարեկամությունը, կոփվում բանվոր դասակարգի և կոլտնտեսա-*
*յին գյուղացիության դաշինքը: Առաջին հնգամյակների տարիներին ստեղծ-*
*վեցին մեր պետության պաշտպանունակության ամրապնդման տնտեսական,*
*սոցիալ-քաղաքական և գաղափարախոսական վճռական հիմքերը: Կուսակ-*
*ցությունը հատուկ ուշադրություն էր նվիրում զինված ուժերի զարգացմանն ու*
*տեխնիկական հագեցվածությանը, նրանց մարտունակության ու ռազմական*
*պատրաստականության մակարդակի բարձրացմանը:*

*Նախապատերազմյան երեք տարիների ընթացքում մոտ երեք անգամ ավե-*
*լացավ մեր զինվորների թիվը: Երկրի ցամաքային զորքերը, ռազմաօդային*
*ուժերը, ռազմածովային նավատորմը և սահմանապահ զորքերն ստացան ժա-*
*մանակակից ռազմական տեխնիկա ու զենք: Ամրապնդվում էին ՍՍՀՄ-ի պե-*
*տական սահմանները: Մեծ ուշադրություն էր նվիրվում պաշտպանական ար-*
*դյունաբերության ձեռնարկությունների տեղաբաշխմանը: 1941 թ. ամռանը*
*արևելյան շրջաններում էր գտնվում Սովետական Միության բոլոր ռազմական*
*գործարանների մոտ հինգերորդ մասը: Ձեռնարկվում էին երկրի պաշտպանու-*
*նակության ամրապնդման այլ միջոցներ ևս, սակայն չհաջողվեց իրականացնել*
*դրանք: Բայց կուսակցությունն ու ժողովուրդը կատարեցին գլխավորը. ՍՍՀՄ-ը*
*դարձրին սոցիալիստական հզոր պետություն, ունակ ո՛չ միայն դիմանալու*
*իմպերիալիստական ներխուժմանը, այլև ջախջախելու ամեն մի ագրեսորի:*

*Ֆաշիստական Գերմանիան ՍՍՀՄ-ի վրա հարձակվեց այն պահին, երբ մեր*
*զինված ուժերը վերակազմավորվում և վերազինվում էին, իսկ արևմտյան նոր*
*սահմաններում պաշտպանական աշխատանքներ էին ծավալվում:*

*Սահմանապահ ռազմական շրջանների զորքերը դեռևս չունեին լիակատար*
*ռազմական պատրաստականություն: Օգտագործելով հանկարծակի, ուխտա-*
*դրուժ հարձակման ժամանակավոր առավելությունները, հիտլերյան ղեկավա-*

րությունը հույս ուներ հաղթանակի հասնել մեկ «կայծակնային» ռազմական կամպանիայի միջոցով և պատերազմն ավարտել մինչև ձմեռ։

Չի կարելի մոռանալ, որ արևմտյան երկրների հրահրմամբ ու անմիջական թողտվությամբ հիտլերյան Գերմանիան ՍՍՀՄ-ի վրա հարձակվելուց առաջ կուտակել էր ռազմական արդյունաբերության հզոր պոտենցիալ, ստեղծել հսկայական ռազմական մեքենա և ուներ զենքի ու ռազմական տեխնիկայի վիթխարի պաշար։ 1941 թվականի հունիսի սկզբին ֆաշիստական բանակն ամբողջովին մոբիլիզացվել էր. ուներ հարձակողական խոշոր գործողություններ վարելու ռազմական փորձ։ Հիտլերյան ղեկավարությունը մեր արևմտյան սահմաններին էր մոտեցրել վերմախտի բոլոր հիմնական ուժերը՝ մոտ հինգ միլիոն զինվոր ու սպա, ավելի քան 42 հազար թնդանոթ ու ականանետ, ավելի քան 4 հազար տանկ, ռազմաօդային ուժերի մոտ 90 տոկոսը, վիթխարի օդային նավատորմ՝ մոտ 4 հազար ինքնաթիռով։ Հիտլերյան բանակի հետ մեկտեղ ՍՍՀՄ-ի դեմ սկսված պատերազմի մեջ էին ներքաշվել ֆաշիստական բլոկի մասնակից հինգ պետությունների զինված ուժերը ևս։ Սովետական ժողովուրդը Հայրենական մեծ պատերազմն սկսեց շատ բարդ, դժվարին, հույժ աննպաստ պայմաններում։

Կոմունիստական կուսակցության կոչով ու ղեկավարությամբ սովետական ժողովուրդը ոտքի ելավ՝ պայքարելու թշնամու դեմ, հանուն սոցիալիստական հայրենիքի պատվի ու անկախության, ոտքի ելավ պաշտպանելու Հոկտեմբերի նվաճումները։ Ողջ երկիրը դարձավ միասնական ռազմական ճամբար։

Ռազմաճակատի ու թիկունքի ջանքերը միավորելու նպատակով կուսակցության Կենտկոմի Քաղբյուրոյի որոշմամբ 1941 թվականի հունիսի 30-ին կազմվեց արտակարգ օրգան՝ Պաշտպանության պետական կոմիտե, որի ձեռքում էր կենտրոնացված երկրի ողջ իշխանությունը։ Սովետական ժողովրդի զինված պայքարի ստրատեգիական ղեկավարման նպատակով ստեղծվեց Գերագույն գլխավոր հրամանատարության ռազմակայան, որի նախագահը և գերագույն գլխավոր հրամանատարն էր ՀամԿ(բ)Կ Կենտկոմի գլխավոր քարտուղար, ժողովրդական կոմիսարների խորհրդի նախագահ Ի. Վ. Ստալինը։

Պատերազմի ընթացքում կուսակցությունը ղեկավարում էր սովետական ժողովրդի պայքարի բոլոր ձևերը։ Նա կազմակերպեց ու միավորեց մեր երկրի տասնյակ միլիոնավոր մարդկանց, նրանց եռանդը, կամքն ու գործունեությունը մղեց մի նպատակի՝ հաղթանակի։ Կուսակցության Կենտկոմը այն շտաբն էր, որ իրականացնում էր ռազմական գործողությունների քաղաքական և ստրատեգիական ղեկավարությունը։

Պատերազմի առաջին օրերից իսկ պաշտպանական կատաղի մարտերում սովետական զորքերը վիթխարի կորուստներ պատճառեցին թշնամուն, ջնջախորտակեցին, ուժասպառ արեցին նրա ընտիր դիվիզիաները։

Սմոլենսկի հայտնի ճակատամարտում նրանք բացեցին առաջին ճեղքվածքը «կայծակնային պատերազմի» ֆաշիստական դոկտրինայում։ Այստեղ ծնվեց սովետական գվարդիան՝ մեր զինված ուժերի ընտրանին։ Մոսկվայի տակ տեղի ունեցած պատմական ճակատամարտը հօդս ցնդեցրեց գերմանաֆաշիստական բանակի «անպարտելիության» առասպելը, վերջնականապես ձախողեց «կայծակնային պատերազմի» հիտլերյան պլանը, փոխեց պատերազմի ընթացքը։ Մեկ տարի անց սովետական զինված ուժերը գերմանաֆաշիստական զորքերին ջախջախիչ հարված հասցրին Ստալինգրադի տակ։ Ինչպես Մոսկվայան, այս ճակատամարտը ևս ռազմական ու քաղաքական վիթխարի նշանակություն ունեցավ։ Այն արագացրեց Հայրենական մեծ պատերազմի և ողջ երկրորդ համաշխարհային պատերազմի ընթացքի արմատական բեկումը, էական ազդեցություն գործեց Եվրոպայի օկուպացված երկրների դիմադրական շարժման վրա։ Ստրատեգիական նախաձեռնությունը կրկին անցավ սովետական բանակի կողմը։

1943 թվականին, օգտվելով Եվրոպայում երկրորդ ռազմաճակատի բացակայությունից, հիտլերյան ղեկավարությունը նոր փորձ ձեռնարկեց արևելյան ռազմաճակատում ստրատեգիական հարձակում կազմակերպելու համար։ Ընդորում, եթե 1941 թ. գերմանաֆաշիստական զորքերը հարձակվում էին սովետա-գերմանական ռազմաճակատի ողջ երկայնքով՝ Բարենցի ծովից Սև ծով, ապա 1942 թվականին ստրատեգիական հարձակում նրանք կարող էին ծավալել նրա հարավային թևում, իսկ 1943 թ.՝ մեկ ուղղությամբ միայն— Կուրսկի աղեղի շրջանում։ Սովետական բանակն արգելեց թշնամուն իրականացնել այդ մտահղացումը։ Նրա հանգամանորեն նախապատրաստած հարձակումն ավարտվեց լիակատար ձախողմամբ։ Դա հարձակողական ստրատեգիայով պատերազմի ելքը վճռելու նրա վերջին փորձն էր։

Սովետական զինված ուժերը վերջնականապես իրենց ձեռքը վերցրին ստրատեգիական նախաձեռնությունը և ֆաշիստական Գերմանիայի բանակը հասցրին կործանման շեմին։ 1943 թվականի ամռանն ու աշնանը Կուրսկի տակ տեղի ունեցած պաշտպանական մարտում, հակահարձակման և ընդհանուր ստրատեգիական հարձակման ընթացքում սովետական զորքերը ջախջախեցին թշնամու ավելի քան 120 դիվիզիա, ոչնչացրին վերմախտի ավելի քան 1,5 միլիոն զինվոր ու սպա, 1943 թ. Հայրենական մեծ պատերազմի և ողջ համաշխարհային երկրորդ պատերազմի ընթացքի մեջ հաստատվեց վերջնական արմատական բեկում։

1944 թվականին սովետական բանակը մի շարք փայլուն հաղթանակներ տարավ Լենինգրադի տակ, Ուկրաինայում, Մոլդավիայում, Բելոռուսիայում, Մերձբալթիկայում, Զապոլյարիեում։ Այդ տարվա կարևորագույն իրադարձությունը եղավ վիթխարի ճակատամարտը բելոռուսական հողում, ուր երկու կողմից մասնակցեց մոտ 4 միլիոն մարդ. ճակատամարտն ավարտվեց թշնամու ամենաուժեղ ռազմական խմբավորումներից մեկի՝ գերմանաֆաշիստական «Կենտրոն» բանակախմբի ջախջախմամբ։ Այն պաշտպանում էր հիտլերյան Գերմանիայի որջի՝ Բեռլինի մատույցները արևելքից։ Սովետական բանակն ազատագրեց ողջ Բելոռուսիան, Ուկրաինայի հյուսիս-արևմտյան շրջանները, Մերձբալթիկայի մի մասը։

Հետապնդելով թշնամուն՝ սովետական զինվորը մտավ ֆաշիստական զավթիչների կողմից օկուպացված երկրների տերիտորիան և հասավ Արևելյան Պրուսիայի սահմաններին։ Սակայն այստեղ նա հայտնվեց ոչ որպես նվաճող, այլ որպես ֆաշիստական լծից Եվրոպայի կեղեքվող ժողովուրդների ազատարար։ Սովետական երկրի ազատագրմամբ Հայրենական մեծ պատերազմում սկսվեց նոր փուլ՝ սովետական զինված ուժերի ազատագրական մեծ առաքելությունը։

Կատարելով իրենց ինտերնացիոնալ պարտքը՝ սովետական զորքերը 1944—1945 թթ. մի շարք հարձակողական խոշոր գործողություններ ծավալեցին Լեհաստանի, Չեխոսլովակիայի, Հունգարիայի, Գերմանիայի, Ռումինիայի, Բուլղարիայի, Ավստրիայի, Հարավսլավիայի, Նորվեգիայի տերիտորիաներում։ Այդ երկրների ազատագրման համար ծավալված գործողություններին մասնակցեցին մոտ 7 միլիոն սովետական զինվորներ։ Այդ վիթխարի գոտեմարտի ավարտը Բեռլինի ստրատեգիական հարձակողական գործողությունն էր։ Այն թշնամուն հասցված վերջին մահացու հարվածն էր։ 1945 թվականի ապրիլի 30-ին ընկավ ռայխստագը։ Մայիսի 2-ին զենքը ցած դրեց բեռլինյան խմբավորումը, իսկ մայիսի 8-ին հիտլերյան Գերմանիան ստորագրեց անվերապահ կապիտուլյացիայի ակտը։ Ֆաշիստական ագրեսորների դեմ սովետական ժողովրդի մղած Հայրենական մեծ պատերազմն ավարտվեց լիակատար հաղթանակով։

Ֆաշիստական Գերմանիայի ջախջախմամբ վերացավ երկրորդ համաշխարհային պատերազմի գլխավոր օջախը Եվրոպայում։ Սակայն դեռևս շարունակում էր բոցավառվել պատերազմի կրակը Ասիայում և Խաղաղ օվկիանոսում։ 1945 թ. օգոստոսի 8-ին սովետական կառավարությունը, կատարելով դաշնակցի իր պարտականությունները, պատերազմ հայտարարեց միլիտարիստական Ճապոնիային։ Օգոստոսի 9-ին սովետական զինված ուժերը ջախջախիչ հարված հասցրին կվանտունյան միլիոնանոց բանակին։ 25 օրվա ընթացքում նրանք գլխովին ջախջախեցին նրա հիմնական խմբավորումները, ազատագրեցին Հյուսիս-արևելյան Չինաստանը, Հյուսիսային Կորեան, Հարավային Սախալինն ու Կուրիլյան կղզիները։ Ճապոնիան զրկվեց իր ցամաքային

տոգորված են նրա բարեկեցության ու բարգավաճման նկատմամբ լենինյան հոգածությամբ:

Հասարակության զարգացման ներկա փուլը բնութագրվում է միջազգային ասպարեզում դասակարգային պայքարի ուժեղացմամբ: Իմպերիալիստական ագրեսիվ ուժերը սանձազերծում են սպառազինությունների մրցավազք, որը լրջորեն վտանգում է խաղաղության և ժողովուրդների անվտանգության գործը, փորձում են ամեն կերպ խանգարել լարվածության թուլացմանը: Միջազգային ռեակցիայի կենտրոնը վաղուց ի վեր փոխադրվել է Ամերիկայի Միացյալ Նահանգներ: Բացահայտորեն հավակնելով աշխարհի միահեծան տիրակալի դերը՝ ամերիկյան իմպերիալիզմն ամեն կերպ մեծացնում է իր ռազմական պոտենցիալը: Դրա ցայտուն վկայությունն է նրա 1979 թ. ռազմական բյուջեն, որը հասնում է 140 միլիարդ դոլարի՝ ամենամեծը երկրի ողջ պատմության ընթացքում:

Խաղաղությանը լուրջ վտանգ են սպառնում չինական այժմյան ղեկավարության հեռացումը հակաիմպերիալիստական դիրքերից և նրա վարած անզուսպ հակասովետիզմի, զավթողականության, շովինիզմի, հեգեմոնիզմի քաղաքականությունը: Պեկինն անմիջական կապի մեջ է մտել ԱՄՆ-ի, Ճապոնիայի, ԳՖՀ-ի իմպերիալիստների հետ, բացահայտորեն դավաճանել է այն սկզբունքներին, որոնց հիման վրա տասնամյակներ առաջ չին ժողովուրդն սկսեց կառուցել իր ժողովրդական հանրապետությունը:

Անցած պատերազմի դասերը աշխարհի ժողովուրդներին հուշում են զգոն լինել: Կատարելով Լենինի պատգամները՝ կոմունիստական կուսակցությունը և սովետական կառավարությունը մշտապես չթուլացող ուշադրություն են նվիրում մեր երկրի պաշտպանունակության ամրապնդմանը: ՍՄԿԿ XXV համագումարի առաջադրանքների հաջող կատարումը, մեր տնտեսական հզորության աճը սովետական պետության պաշտպանական պոտենցիալի ամրապնդման երաշխիքն են:

Երկրի պաշտպանունակության ամրապնդումը սոսկ զինված ուժերի հոգածության առարկան չէ, այն համաժողովրդական խնդիր է: ՍՍՀՄ սահմանադրությունը հռչակում է. «Սոցիալիստական հայրենիքի պաշտպանությունը պետության կարևորագույն ֆունկցիաներից է և ամբողջ ժողովրդի գործը»: Երեքուկես տասնամյակ է, ահա, ինչ մեր երկիրն ապրում է խաղաղ, ստեղծարար աշխատանքով: Նման պայմաններում են աշխատում և սոցիալիստական համագործակցության երկրների ժողովուրդները: Այդ տարիներին մարդկությունը պատնեշված է եղել հրթիռամիջուկային զենքի սարսափներից: Եվ դա առաջադեմ, հակաիմպերիալիստական բոլոր ուժերի պատմական խոշոր հաղթանակն է ու ամենից առաջ սովետական ժողովրդի, կոմունիստական կուսակցության, նրա Կենտրոնական կոմիտեի և Լ. Ի. Բրեժնևի գլխավորած քաղբյուրոյի քաղաքականության հաղթանակը: Այդ գործում մեծ է մեր փառապանծ զինված ուժերի և Վարշավայի պայմանագրի մասնակից եղբայրական երկրների բանակների ծառայությունը:

Կասկածից վեր է, որ սովետական զինված ուժերն ամեն ինչ կանեն կատարելու համար իրենց վսեմ պարտքը կուսակցության, ժողովրդի, հայրենիքի հանդեպ. հուսալիորեն կպաշտպանեն սովետական մարդկանց խաղաղ, ստեղծագործ աշխատանքը, եղբայրական բանակների հետ մեկտեղ կապահովեն սոցիալիստական համագործակցության երկրների սահմանների անձեռնմխելիությունը: Այդ ամենը կատարելու համար նրանք ունեն ողջ անհրաժեշտը— լենինյան կուսակցության փորձված ղեկավարություն, զարգացած սոցիալիզմի նյութատեխնիկական հզոր բազա, կոմունիզմի գործին նվիրված անձնակազմ, ժամանակակից զենք ու ռազմական տեխնիկա, Հայրենական մեծ պատերազմի փորձով հարստացած սովետական առաջավոր ռազմական գիտություն և արվեստ:

# ԼԵՆԻՆՅԱՆ ՊԱՏԳԱՄՆԵՐԻՆ ՀԱՎԱՏԱՐԻՄ

**Հ. Հ. ՄԱՐՏԻՐՈՍՅԱՆ**
Պաշտոնաթող գեներալ-մայոր, պատերազմի վետերանների սովետական կոմիտեի Երևանի սեկցիայի նախագահ

ՄԵՐ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅՈՒՆԸ մշտապես մեծ ուշադրություն է նվիրել երկրի պաշտպանունակության ամրապնդմանը, զինված ուժերի կատարելագործմանը:

Չնայած լարվածության թուլացման գործում շոշափելի հաջողություններին, իմպերիալիստական շրջանների մեղքով միջազգային իրադրությունը շարունակում է մնալ բարդ ու հակասական: Այս պայմաններում իր անվտանգության հուսալի պաշտպանության նպատակով Սովետական Միությունը ձեռնարկում է կենսականորեն անհրաժեշտ միջոցառումներ: Դրանք մշակվում և կենսագործվում են սոցիալիստական հայրենիքի պաշտպանության վերաբերյալ լենինյան ուսմունքի, կուսակցության ու պետության ռազմական քաղաքականության սկզբունքների հիման վրա:

Կուսակցության ռազմական քաղաքականությունը Վ. Ի. Լենինը մշտապես քննարկել է նրա ընդհանուր քաղաքականության, գլխավոր ծրագրային նպատակների հետ անքակտելի կապի մեջ: Մինչհոկտեմբերյան ժամանակաշրջանում այդ քաղաքականության հիմնական բովանդակությունը պրոլետարական հեղափոխությանը նախապատրաստելու նպատակով զինվորների ու նավաստիների շրջանում բոլշևիկների ծավալած աշխատանքն էր: Հետագայում՝ քաղաքացիական պատերազմի և իմպերիալիստական զինված ինտերվենցիայի տարիներին, ռազմական քաղաքականության նպատակն էր աշխարհում առաջին սոցիալիստական պետության պաշտպանությունը:

Պրոլետարական հեղափոխության հաղթանակից հետո կոմունիստական կուսակցության ռազմական քաղաքականությունը պետական բնույթ ձեռք բերեց՝ հենվելով սոցիալիստական հայրենիքի պաշտպանության լենինյան ուսմունքի վրա:

Վ. Ի. Լենինը պատմական նոր պայմաններում ստեղծագործաբար զարգացրեց ռազմական հարցերի վերաբերյալ մարքսիզմի տեսությունը, ցույց տվեց, որ սոցիալիզմի հաղթանակն սկզբում մեր երկրում պետք է «առաջ բերի ո՛չ միայն բախումներ, այլև մյուս երկրների բուրժուազիայի ուղղակի ձգտումը՝ ջախջախելու սոցիալիստական պետության հաղթական պրոլետարիատին: Այս դեպքում պատերազմը մեր կողմից օրինական և արդարացի կլիներ: Այդ կլիներ պատերազմ սոցիալիզմի համար...» (Վ. Ի. Լենին, Երկեր, հ. 23, էջ 94): Միաժամանակ նա ամենայն որոշակիությամբ առաջադրեց տարբեր սոցիալական կարգ ունեցող պետությունների խաղաղ գոյակցության հարցը:

Լենինն արդարացիորեն շեշտում էր, որ սոցիալիզմի նվաճումների զինված պաշտպանությունը պատմականորեն անխուսափելի է և անհրաժեշտ, հարկ է լրջորեն վերաբերվել երկրի պաշտպանունակության խնդրին: Սոցիալիստական հայրենիքի պաշտպանության նպատակով, նշում էր նա, պատե-

բազմին պետք է պատրաստվել երկար ժամանակ, լրջորեն, սկսած երկրի տնտեսական վերելքից, երկաթուղիների կարգավորումից, ամենուրեք հաստատելով խիստ, հեղափոխական կարգապահություն: Առաջնորդը կոչ էր անում բանվոր դասակարգին «կազմակերպվել ինքնապաշտպանության նպատակով»:

Վ. Ի. Լենինը խորապես բացահայտել է սոցիալիզմի պաշտպանության ինտերնացիոնալ էությունը, համոզիչ կերպով ցույց տվել, որ զարգացման սոցիալիստական ուղի թևակոխած ժողովուրդներին անպայմանորեն հարկավոր է ռազմական ու տնտեսական սերտ միություն: Այդ համախմբվածությունը խախտելու ամեն մի փորձ Լենինը համարում էր միանգամայն անթույլատրելի, դավաճանություն միջազգային իմպերիալիզմի դեմ բանվոր դասակարգի մղած պայքարի շահերին:

Երկրի պաշտպանունակության և սովետական զինված ուժերի ամրապնդման հարցերը միշտ գտնվել են ՍՄԿԿ ուշադրության կենտրոնում, դարձել համագումարների, կոնֆերանսների և Կենտկոմի պլենումների քննարկման առարկա: Կարմիր բանակի ամրապնդման գործում հատուկ տեղ ունի ՍՄԿԿ VIII համագումարը, որը մեծ ուշադրություն նվիրեց ռազմական քաղաքականության հարցերին: Համագումարի որոշման մեջ ասված է. «... կարմիր բանակի գոյության պատմական իմաստն այն է, որ նա պրոլետարիատի ու գյուղական չքավորության սոցիալիստական ինքնապաշտպանության գործիքն է, նրանց պաշտպանը օտարերկրյա իմպերիալիզմի կողմից աջակցություն գտնող կուլակային-բուրժուական բռնապետության վտանգի դեմ» (ՍՄԿԿ-ն... բանաձևերում ու որոշումներում, I մաս, Հայպետհրատ, 1954, էջ 555):

Իր ճառում Լենինը հատկապես անդրադարձավ կարմիր բանակում երկաթյա կարգապահություն հաստատելու խնդրին ու մեթոդներին: Նա շեշտեց. «Առանց երկաթյա կարգապահության այստեղ ոչինչ անել հնարավոր չէ»: Դրան դեմ ելնել— «նշանակում է կտրել այն ճյուղը, որի վրա է հենվում ամեն ինչ» (Ленинский сборник, т. XXXVII, Политиздат, М. 1970 г. стр. 137): Նա «բացարձակորեն ճիշտ» և անհրաժեշտ էր համարում բանակում պարտադիր կանոնագրքային նորմերի արմատավորումը: Կանոնավոր բանակ ստեղծելու գործում վճռորական մասնագետներին ներգրավելու լենինյան առաջարկն արժանացավ կուսակցության մեծամասնության հավանությանը և ամրակայվեց VIII համագումարում ընդունված ՍՄԿԿ ծրագրում:

Կուսակցության VIII համագումարի ընդունած բանաձևը սահմանեց ՍՄԿԿ-ի ռազմական քաղաքականության հիմունքները, սովետական ռազմաշինարարության հերթական խնդիրներն ու սկզբունքները, որտեղ հատուկ ուժով շեշտվում էր կոմունիստական կուսակցության ղեկավար դերը: Համագումարը հաստատեց ԲԳԿԲ-ն ղեկավար կազմով համալրելու կուսակցության Կենտկոմի և սովետական կառավարության կուրսի ճշտությունը և որոշեց առաջիկայում հրամանատարական ու վարչական պաշտոններում ներգրավել հին բանակի ռազմական մասնագետներին: Միաժամանակ համագումարը հանգեց այն եզրակացության, որ կարմիր բանակի շինարարության հիմքը պետք է լինի դասակարգային սկզբունքը և առաջարկեց մեծացնել բանվորներից ու գյուղացիներից պատրաստվող հրամանատարների թիվը:

Համագումարը գաղափարապես ջախջախեց «ռազմական օպոզիցիայի» կուսակցության ու ժողովրդի շահերի հետ անհամատեղելի հայացքները, վճռականորեն հանդես եկավ կուսակցության ռազմական քաղաքականության հարցում Տրոցկու աղավաղումների դեմ, ամրապնդեց ԲԳԿԲ-ի կազմակերպման ու ղեկավարման լենինյան սկզբունքները, մշակեց գործնական միջոցառումներ զինված ուժերի մարտական հզորության բարձրացման նպատակով: Կուսակցությունը, կենսագործելով լենինյան սկզբունքները, բարձրացրեց զինված ուժերի մարտական հզորությունը:

Հայտնի է, որ կուսակցության X համագումարը շեշտեց երկրի պաշտպանության ամրապնդման խնդրի կարևորությունը և ռազմական հարցի վերաբերյալ ընդունեց ծավալուն որոշում: 1921 թ. դեկտեմբերի 23-ին Սովետների



համառուսաստանյան IX համագումարում Լենինը հանդես եկավ «Հանրապետության ներքին ու արտաքին քաղաքականության մասին» Կենտգործկոմի և Ժողկոմխորհի հաշվետվությամբ: Զեկուցման մեջ նա մասնավորապես ասաց. «... ձեռնամուխ լինելով մեր խաղաղ շինարարությանը, մենք բոլոր ուժերը կգործադրենք այն առանց ընդհատումների շարունակելու համար: Միաժամանակ, ընկերնե՛ր, պատրաստ և զգո՛ւյշ եղեք, աչքի լույսի պես պահպանեցե՛ք մեր երկրի և մեր կարմիր բանակի պաշտպանունակությունը և հիշեցե՛ք, որ մենք իրավունք չունենք մի վայրկյան անգամ թուլացնելու մեր ուշադրությունը մեր բանվորների ու գյուղացիների և նրանց նվաճումների նկատմամբ» (Երկեր, հ. 33, էջ 166—167): Սովետների IX համագումարը լիովին հավանություն տվեց ներքին ու արտաքին քաղաքականության բնագավառում Լենինի գլխավորած բանվորագյուղացիական կառավարության գործունեությանը:

Ռազմական հարցի վերաբերյալ ՍՄԿԿ XI համագումարի որոշումները հաստատեցին կուսակցության մշակած կուրսը, նկատի առան կուտակած փորձը, որը հանդիսացավ կարմիր բանակի ու կարմիր նավատորմի հետագա ամրապնդման ու կատարելագործման կոնկրետ պլան:

ՍՍՀՄ պաշտպանության մինիստր, Սովետական Միության մարշալ Դ. Ֆ. Ուստինովը սովետական բանակի 60-ամյակի առթիվ իր զեկուցման մեջ շեշտեց, որ կուսակցությունը խստիվ հետևում է Լենինի ցուցումին՝ տնտեսական, գիտատեխնիկական, բարոյաքաղաքական և ռազմական կարողությունների՝ որպես պետության պաշտպանական հզորության հիմնական գումարելիների, դիալեկտիկական միասնության վերաբերյալ:

Երկրի տնտեսական կարողությունը մշտապես բարձրացնելու խնդիրները լուծելիս առաջնակարգ նշանակություն ունի պլանային սոցիալիստական տնտեսության առավելությունների օգտագործումը: Այդ հարցին սկզբունքային մոտեցում էր պահանջվում դեռևս ժողտնտեսության զարգացման առաջին հնգամյա պլանի կազմման վերաբերյալ կուսակցության XV համագումարի դիրեկտիվներում, որտեղ ասված է. «Հաշվի առնելով պատմության մեջ պրոլետարական առաջին պետության վրա կապիտալիստական պետությունների ռազմական հարձակման հնարավորությունը, անհրաժեշտ է հնգամյա պլանը մշակելիս առավելագույն ուշադրություն դարձնել ընդհանրապես ժողովրդական տնտեսության և մասնավորապես արդյունաբերության այն ճյուղերի ամենաարագ զարգացմանը, որոնք կոչված են պատերազմի ժամանակ կատարելու երկրի պաշտպանությունն ու տնտեսական կայունությունն ապահովելու գլխավոր դերը» (ՍՄԿԿ-ն... բանաձևերում ու որոշումներում, II մաս, Հայպետհրատ, 1955, էջ 572):

Նախապատերազմյան տարիներին, ՍՍՀՄ-ի համար պատերազմական վտանգի ուժեղացման պայմաններում, կուսակցության որոշմամբ ստեղծվեց հատուկ ռազմաարդյունաբերական հանձնաժողով, որի գլխավոր պարտականությունն էր մոբիլիզացնել ու նախապատրաստել ինչպես պաշտպանական, այնպես էլ ոչ պաշտպանական արդյունաբերությունը՝ սպառազինության միջոցներ արտադրելու և դրանք ԲԳԿԲ-ին և նավատորմի ժողկոմատին տրամադրելու նպատակով:

Հայրենական մեծ պատերազմի տարիներին կուսակցությունն իր հետևողական ռազմական քաղաքականությամբ, մարդկային ուժերի և նյութական անհրաժեշտ պաշարների կուտակման շնորհիվ թշնամու նկատմամբ ապահովեց ռազմատնտեսական հաղթանակ: Ռազմաճակատի կարիքների համար մոբիլիզացվեց բոլոր արդյունաբերական ձեռնարկությունների 68 տոկոսը, ռազմական նպատակներով տրամադրվում էր ազգային եկամտի 57 տոկոսը:

Արդի պայմաններում հարաճուն մեծանում է երկրի տնտեսական կարողությունը: Կուսակցության XXV համագումարը, սահմանելով ՍՍՀՄ ժողովրդական տնտեսության զարգացման հիմնական ուղղությունները տասներորդ հնգամյակում, պատշաճ ուշադրություն դարձրեց նաև երկրի անվտանգության ապահովմանը: ՍՄԿԿ-ի ռազմական քաղաքականությունում կարևորվում են

երկրի գիտատեխնիկական կարողության մակարդակի բարձրացման հարցերը: Իմպերիալիստական երկրներում գիտական հայտնագործությունների ու գյուտերի չտեսնված ռազմականացման պայմաններում սովետական գիտության աննշան ետ մնալը կամ ռազմական գործում դրա հասումների ներդրման ուշացումը հղի կլիներ լուրջ հետևանքներով: Այդ իսկ պատճառով հատուկ կարևորություն ունի երկրի գիտատեխնիկական առաջընթացի մշտական արագացումը և ՍՄԿԿ XXV համագումարի առաջադրած դրույթն այն մասին, թե գիտական հասումների գործնական ներդրումը պակաս կարևոր խնդիր չէ, քան դրանց մշակումը:

Այժմ կոմունիստական կուսակցությունը, սովետական պետությունը առավել արդյունավետությամբ են կոորդինացնում գիտության և արդյունաբերության համագործակցությունը, ապահովում զինված ուժերի և ամբողջությամբ վերցրած երկրի պաշտպանության հետագա ամրապնդման շահերին ծառայող ձեռնարկությունների ու հիմնարկությունների փոխադարձ սերտ կապը: Այժմ մեր երկիրն ունի բոլոր պայմանները զենքի կատարելագույն տեսակների ստեղծման համար: Ինչպես նշում է ընկեր Լ. Ի. Բրեժնևը, պակաս նշանակություն չունի նաև հասարակության բարոյաքաղաքական վիճակը, ժողովրդի հոգևոր և բարոյական կերպարը, որով մեծապես պայմանավորված է նաև մեր պետության պաշտպանական ամրությունը (տե՛ս Լենինյան կուրսով, հ. 3, «Հայաստան» հրատ., էջ 470):

ՍՄԿԿ-ի գործունեությունը խարսխվում է կազմակերպչական, սոցիալ-քաղաքական և գաղափարատեսական միջոցառումների մի ամբողջ սիստեմի վրա, որի գլխավոր խնդիրն է սովետական մարդկանց մարքս-լենինյան աշխարհայացքի կազմավորումը: Այդ պրոցեսում հատուկ նշանակություն ունեն հեղափոխական ու մարտական փառապանծ ավանդույթներով սովետական քաղաքացիների ռազմահայրենասիրական դաստիարակությունը, սոցիալիստական հասարակության բոլոր անդամների բարձր բարոյամարտական և հոգեբանական հատկանիշների կազմավորումը, բնակչության և զինված ուժերի շրջանում ռազմատեխնիկական պրոպագանդայի կազմակերպումը, միջազգային իմպերիալիզմի ագրեսիվ քաղաքականության մերկացումը, խաղաղության ու սոցիալիզմի թշնամիների հանդեպ ատելության սերմանումը: Սովետական մարդկանց բարոյաքաղաքական պոտենցիալը բարձրացնելու նպատակով ՍՄԿԿ-ի կիրառած միջոցների ողջ բազմազանությունը ներառում է նաև պայքարը անհոգության, անպատասխանատվության ու թափթփվածության ամեն մի դրսևորման դեմ:

Կուսակցության ռազմական քաղաքականությունն ապահովում է երկրի տնտեսության, սոցիալական կարգի և ռազմաշինարարության միջև օրգանական փոխադարձ կապը, զինված ուժերը ժամանակին առաջնակարգ տեխնիկայով զինելն ու բարձր պատրաստականության անձնակազմով համալրելը, նախատեսում է զինված ուժերի և ժողովրդի կապի ամրապնդման միջոցառումներ: ՍՄԿԿ-ն մշակում է զինված ուժերի հրամանատարական կազմի պատրաստման սկզբունքները, սահմանում հիմնական խնդիրները, ռազմատեսական մտքի զարգացման հիմնական ուղղությունները:

Պետության քաղաքականությունը երկրի և զինված ուժերի պատրաստականության վրա անմիջականորեն ներգործում է լենինյան ռազմական դոկտրինայի միջոցով, որն ապահովում է կուսակցական, պետական ու զինվորական մարմինների տեսակետների միասնականությունը երկրի պաշտպանունակության և զինված ուժերի մարտական պատրաստականության հարցերում: Այն նախատեսում է սոցիալիստական համագործակցության արմատական կողմերի եղբայրական բանակների հետ համատեղ զինված պայքար մղել հանուն խաղաղության ու սոցիալիզմի շահերի պաշտպանության:

Զինված ուժերի մարտական պատրաստականության վրա մեր կուսակցության ռազմական քաղաքականության անմիջական ազդեցության միջոցներից են սովետական ռազմական գիտությունը, ռազմական արվեստը, հատկապես



դրա էական բաղադրամասը՝ ռազմական ստրատեգիան: Բանակի և նավատորմի մարտական պատրաստականության վրա ստրատեգիայի միջոցով ռազմական քաղաքականության ազդեցությունը պայմանավորված է այդ քաղաքականության սոցիալ-դասակարգային բնույթով, նպատակներով:

Սովետական ռազմական տեսության սկզբունքները արտացոլվել են ՍՍՀՄ պաշտպանության պլաններում, որոնք համապատասխանում են երկրի սոցիալ-տնտեսական զարգացման մակարդակին, նյութական պաշարներին ու միջազգային դրությանը:

Երկրի պաշտպանունակության ապահովման գործում կարևոր դեր է խաղում ռազմական պատմագիտությունը, որն այդ բարդ ռազմաքաղաքական խնդիրը լուծելիս կոչված է վերլուծելու և ընդհանրացնելու հայրենական և համաշխարհային պատմական փորձը:

ՍՄԿԿ-ի ռազմական քաղաքականությունը դիմացել է ժամանակի փորձությանը և Հայրենական մեծ պատերազմում մեր հաղթանակի վճռական աղբյուրներից մեկը հանդիսացավ: Կուսակցության իմաստուն քաղաքականության շնորհիվ արդեն չորրորդ տասնամյակն է, ինչ սովետական մարդիկ ապրում են խաղաղ պայմաններում, իսկ սովետական զինված ուժերի մարտունակությունն ու մարտական պատրաստականությունը գտնվում են արդի պահանջներին համապատասխան մակարդակի վրա: Սովետական ռազմաշինարարության լենինյան սկզբունքները, որոնք ստեղծագործաբար զարգացրել ու հարստացրել է կոմունիստական կուսակցությունը, մինչև օրս էլ հանդիսանում են սոցիալիստական պետության ռազմական քաղաքականության հիմքը և օրենսդրորեն ամրապնդվել են ՍՍՀՄ նոր սահմանադրությունում:

Սովետական մարդիկ լենինյան կուսակցության ղեկավարությամբ հետևողականորեն ամրապնդում են մեր երկրի պաշտպանունակությունը, որը կոմունիստական շինարարության և ամբողջ աշխարհում խաղաղության ապահովման հուսալի երաշխիք է:

# ԷՋԵՐ ՎԵՐԱՊՐԱԾԻՑ

**Գ. Հ. ՍԱՀԱԿՅԱՆ**
409-րդ դիվիզիայի 964-րդ հրետանային գնդի նախկին կուսկազմակերպիչ

**1941 ԹՎԱԿԱՆԻ ՀՈՒՆԻՍ:** Մեր երկիրն ապրում էր խաղաղ, ստեղծագործ առօրյայով:

Աշխատում էի «Սովետական Հայաստան» թերթի խմբագրությունում: Ստանալով հերթական արձակուրդս՝ ընտանիքով մեկնում էի Մոսկվա: Լուսաբացին արթնացա, բացեցի լուսամուտը: Երկաթուղային Խաչմաս կայարանում էինք: Ինձ ծանոթ այդ աշխույժ և մշտապես մարդաշատ կայարանը համարյա դատարկ էր: Կառամատույցում կանգնած հատուկենտ մարդիկ իրար հետ խոսում էին կիսաձայն, անհամարձակ: Դուրս եկա վագոնի միջանցք, շտապեցի հանդիպել մեկին՝ իմանալու խորհրդավոր լռության պատճառը: Ականջիս հասնում էին հատուկենտ բառեր՝ պատերազմ, ոխտադրժություն... Մտածում էի՝ հավանաբար ֆիննական կամպանիայի մասնակիցներ են, տպավորություններ են փոխանակում: Բայց ոչ... Կանգ առա և շփոթված մարդու քաղաքավարությամբ հարցրի, թե ինչ պատերազմի մասին է խոսքը: Մարդիկ մեկեն շրջվեցին իմ կողմը, մեկը զարմացած հարցրեց.

— Ի՞նչ է, ամբողջ գիշեր քնա՞ծ եք եղել, չե՞ք տեսնում՝ գնացքում համարյա ուղևոր չկա, բոլորն իջել, վերադառնում են իրենց տները:

— Ի՞նչ է պատահել,— զարմացած հարցի ես:

— Ֆաշիստական Գերմանիայի զորքերն անցել են մեր սահմանը, բա չլսեցի՞ք, Խաչմաս կայարանում բարձրախոսները հաղորդում էին:

Պատերազմ... այն սկսվել է առանց հայտարարելու և իր հետ բերելու է արհավիրքներ, արյունահեղություն, կոտորած, որբություն, մարդկային անհատնում տառապանք...

...Ետ, դեպի տուն: Հասա Երևան և նույն օրը եղա զինկոմիսարիատում, խնդրեցի հայտնել այն զորամասի տեղը, ուր պետք է ներկայանայի ես:

— Անցեք ձեր աշխատանքին և սպասեցեք կանչի,— պատասխանեցին ինձ:

Ուրեմն, ինձ բախտ չվիճակվեց գտնվելու առաջինների շարքերում, դժկամությամբ մտածեցի ես ու քայլերս ուղղեցի թերթի խմբագրություն:

Իմ աշխատանքային ընկերներից շատերն արդեն մեկնել էին ռազմաճակատ: Մնացածները տխրադեմ էին, անհանգիստ, լարված...

Թերթի պատասխանատու խմբագիր, հանգուցյալ Հովհ. Մամիկոնյանի աչքերում ես կարդացի հոգեկան այն ծանր ապրումները, որ այդ օրերին համակել էին մեր հայրենիքի քաղաքացիներին:

— Լավ է, որ եկար, Գևո՛րգ,— ասաց նա,— ապարատի շատ աշխատողներ մեկնել են ռազմաճակատ. գիտեմ, դու էլ երկար չես մնա, բայց, քանի դեռ չեն կանչել, հարկավոր է գործել: Այստեղ մեզ համար նույնպես ռազմաճակատ է:

Այո՛, պետք էր գործել, գործել նոր ձևով, վերակառուցել ողջ աշխատանքը պատերազմական ժամանակի պահանջներին համապատասխան:

Հունիսի 30-ին ինձ հրավիրեցին Հայաստանի կոմկուսի Կենտկոմ և առաջարկեցին մեկնել Ստեփանավան՝ կուսակցության շրջկոմում իբրև պրոպագանդայի և ագիտացիայի բաժնի վարիչ աշխատելու համար:: Բայց այստեղ էլ վիճակված չէր երկար մնալ:

Պատերազմը մոլեգնում էր: Քաջարի կարմիր բանակի զորամասերը հերոսական պաշտպանական մարտեր էին մղում գերմանաֆաշիստական հորդաների դեմ, կյանքով ու արյամբ պաշտպանում սովետական ամեն մի թիզ հողը, ամեն մի գյուղն ու քաղաքը, գործարանն ու կոլտնտեսությունը:

Երկրի համար ստեղծված օրհասական այդ օրերին Պաշտպանության պետական կոմիտեի որոշմամբ կազմավորվում էին նոր զորամիավորումներ: Հայաստանում ստեղծված նման միավորումներից էր 409-րդ հրաձգային դիվիզիան, որի առաջին հրամանատարը գնդապետ Արտաշես Վասիլյանն էր: Հայաստանի կոմկուսի Կենտկոմը մեծ հոգատարությամբ և աչալանջ (sic) ուշադրությամբ էր հետևում դիվիզիայի կազմակերպմանը: Այդ օրերին դիվիզիայում քաղաքական աշխատանքի ուղարկվեցին մեծ թվով կուսակցական ու սովետական աշխատողներ, արվեստի, գրականության գործիչներ, որոնցից շատերը Մեծ հայրենականի ճամփաներով Կովկասյան նախալեռներից հասան մինչև Պրագա:

Պաշտպանության պետական կոմիտեն, Անդրկովկասյան զինվորական օկրուգի հրամանատարությունը, Հայաստանի կոմկուսի Կենտկոմն ու կառավարությունը հնարավոր ամեն ինչ անում էին դիվիզիայի մարտական-քաղաքական պատրաստականության մակարդակը բարձրացնելու, նրա ռազմական հանդերձավորումն ապահովելու համար: Այս ասպարեզում արդյունավետ աշխատանք էր ծավալում դիվիզիայի այդ ժամանակվա հրամանատար, գնդապետ Արտաշես Վասիլյանը: Անձնական մեծ հմայք, ռազմական խոր, համակողմանի գիտելիքներ ուներ կարմիր բանակի կադրային այդ սպան, խստապահանջ էր իր, դիվիզիայի զինվորների նկատմամբ, բայց և՝ շատ մարդկային, սրտացավ:

**1942** թ. ամռանն արդեն դիվիզիան լիովին մարտունակ էր և պատրաստ ռազմաճակատ մեկնելու: Այդ ցույց տվեցին մարտական իրադրությանը հավասարեցված պայմաններում տեղի ունեցած զորախաղերը և Անդրկովկասյան զինվորական օկրուգի ռազմական խորհրդի կազմակերպած ստուգումները:

**1942** թվականի վերջերին դեռևս ծանր էր մեր երկրի վիճակը: Գերմանաֆաշիստական հորդաները գտնվում էին Լենինգրադի մատույցներում, ռազմական գործողությունները ծավալվում էին Կովկասյան նախալեռներում, թշնամին ակտիվ մարտեր էր մղում Ստալինգրադը գավթելու համար:

Զնայած ռազմաճակատում կրած մարդկային ուժի և ռազմական տեխնիկայի մեծ կորուստներին, հիտլերականները, այնուամենայնիվ, այդ օրերին չէին հրաժարվում Կովկասը նվաճելու իրենց խելագնոր պլաններից: Կովկասյան նախալեռներում և Մոզդոկի ուղղությամբ կատաղի մարտեր էին մղում Գրոզնին, Մախաչկալան, ապա և Բաքուն գրավելու համար:

Ահա Կովկասի համար ստեղծված այդպիսի ծանր օրերին՝ 1942 թ. դեկտեմբերին, դիվիզիան ռազմաճակատ մեկնելու հրաման ստացավ: Բոլոր գնդերում ու ստորաբաժանումներում տեղի ունեցան կարմիրբանակայինների և սպայակազմի ժողովներ ու միտինգներ: Քաղաքական ապարատը և կուսակցական կազմակերպությունները քաղաքական-դաստիարակչական լայն աշխատանք ծավալեցին անձնակազմի շրջանում:

Գնդերում և ստորաբաժանումներում կարմիրբանակայիններից ու հրամանատարներից մասսայաբար դիմումներ էին ստացվում կուսակցության շարքերն ընդունվելու, որպես կոմունիստ ռազմաճակատ մեկնելու խնդիրքով:

Դեկտեմբերի առաջին կեսին ավարտվեց դիվիզիայի կենտրոնացումը Անդրկովկասյան ռազմաճակատի Մոզդոկի հատվածում, և դիվիզիան մտավ ռազմաճակատի հյուսիսային խմբավորման 44-րդ բանակի կազմի մեջ:

Դեկտեմբերի **15—16**-ին դիվիզիան ռազմական գործողությունների բնագիծ դուրս եկավ Մոզդոկից հյուսիս-արևելք ընկած Բեզրուկին, Կապուստին, Ծեֆատովո բնակավայրերի և այդտեղից անցնող Լենինի անվան ջրանցքի շրջանում: Ռազմական գործողությունների այս հատվածը չափազանց անբարենպաստ էր, բարդ: Տեղանքն ամբողջությամբ ավազուտային էր ու հարթ, կողմնորոշման կետեր, երթևեկությունը կարգավորող, ուղղություն ցույց տվող նշաններ չկային:

Մենք պետք է փոխարինեինք մարտից դուրս բերվող զորամասին: Պետք էր համկողմանի նախապատրաստվել ու զորամասերը մարտի մեջ մտցնել սահմանված կարգին համապատասխան: Սակայն, կռահելով մեր մտադրությունը և օգտվելով պատեհ առիթից, գերմանացիները դիվիզիայի զորամասերի ողջ տեղաշարժը վերցրին հսկողության տակ: Երբ մենք դեռ չէինք հասցրել խրամատավորվել, թշնամին իր պաշտպանության առաջին և թիկունքային գըծերից կրակ բաց արեց մեր ստորաբաժանումների վրա: Մեր դեմ ուղղվեցին և տանկերը:

Ստեղծվեց խառը իրավիճակ. դիվիզիան տըվեց կենդանի ուժի և ռազմական տեխնիկայի մեծ կորուստ: Այդ ծուղակից մեզ հաջողվեց դուրս գալ միայն մեր մարտիկների, հրամանատարների ու քաղաշխատողների տոկունության, վճռականության շնորհիվ:

Դիվիզիայի առաջին ճակատամարտն էր այդ: Առաջին անգամ վառոդի հոտ առած, բայց թշնամուն ջախջախելու վճռականությամբ լեցուն հայ մարտիկների ճակատամարտը՝ բացարձակ անհավասար պայմաններում:

Դեկտեմբերի 16-ի երեկոյան դիվիզիայի ըստորաբաժանումներն ավարտեցին խրամատավորվելու գործողությունները: Ստանալով մարդկային և քարշող ուժի, ռազմական հանդերձանքի մեծ համալրում՝ դիվիզիան ակտիվ մարտեր մղեց գերմանական առաջին տանկային բանակի ստորաբաժանումների դեմ: Ամեն օր ետ մղելով թշնամու հետևակի, տանկերի ու զրահամեքենաների տասնյակ հարձակումներ՝ դիվիզիան ոչնչացնում էր հակառակորդի մեծ

քանակությամբ տեխնիկա, մարդկային ուժ, մարտերում ցուցաբերում հերոսության վառ օրինակներ:

Այսպես, Մոզդոկի տակ, Կապուստինո գյուղի շրջանում 1942 թ. դեկտեմբերի 21-ին դիվիզիայի 677 հետևակային գնդի հրամանատար մայոր Միքայել Գրիգորյանը նկատեց, որ իրենց պաշտպանության գիծը տեղանքի առումով գերմանացիների առաջավոր գծի համեմատությամբ այնպիսին է, որ կարող է պատճառ դառնալ մեծ անախորժությունների: Պետք էր գրավել գնդի պաշտպանության գծի և հակառակորդի դիրքերի միջև ընկած երկու անանուն բարձունքները, որտեղից հնարավոր էր մշտապես հսկել թշնամու տեղաշարժերը: Բայց ինչպե՞ս: Ամենափոքր շարժումն իսկ նկատելի էր գերմանացիների համար: Նա որոշեց գիշերային մթության մեջ երկրորդ գումարտակի երկու վաշտերով աննկատ գրավել այդ բարձունքները, խրամատավորվել, կազմակերպել կրակակետեր և պատրաստ լինել պաշտպանվելու գնդի հարձակումը: Հիտլերականները, լուսաբացին նկատելով ու կռահելով այդ հանդուգն քայլի նպատակը, կրակի տակ առան բարձունքները: Դեկտեմբերի 22-ի վաղ առավոտյան կատաղի մարտ սկսվեց բարձունքների համար: Թշնամին կռվի նետեց գրահամեքենաներ, տանկեր, կրակե օղակով պաշարեց գնդի ողջ մարտակարգը: Այստեղ մեր հետևակային գնդին օգնության հասավ դիվիզիայի 964-րդ հրետանային գնդի առաջին դիվիզիոնը՝ կապիտան Անդրանիկ Ղահրամանյանի հրամանատարությամբ: Հրետանուն միացան գնդի ականանետային մարտկոցները, և համատեղ կրակը թուլացրեց գերմանական կրակի ուժը. մեր հետևակը մեծ դժվարությամբ կարողացավ վերջնականապես գրավել բարձունքները: Հետևակային 677-րդ գնդի մարտիկները անսասանորեն իրականացրին իրենց խիզախ հրամանատարի մտահղացումը:

Դուրս գալով հարմար տեղանքով բնագիծ՝ գունդը խրամատավորվեց անանուն բարձունքների շրջակայքում:

Բարձունքները ետ վերցնելու նպատակով գերմանացիները տանկերի ուղեկցությամբ, թիկունքային հրետանու օգնությամբ գրոհեցին դիվիզիայի գնդերի մարտակարգերի վրա, այս անգամ գլխավոր հարվածն ուղղելով 684-րդ հետևակային գնդի կրակակետերի դեմ:

Հեռախոսակապի միջոցով գումարտակներին հաղորդվեց գնդի հրամանատար մայոր Սահակ Դանիելյանի հատուկ կարգադրությունը. «Նշանառության վերցնել հակառակորդի տանկերը, կրակել միայն խոցելի տարածության վրա, հարձակվող տանկերից անջատել հետևակը»: Հրամանատարական գետնահյուղից գումարտակներ մեկնեցին գնդի հրամանատարի քաղգծով տեղակալ կապիտան Աշոտ Հաբությունյանը, դիվիզիայի քաղբաժնի պետի տեղակալ Գևորգ Եղիազարյանը և շտաբային ուրիշ սպաներ:

Գերմանացիների դեմ սկսեցին գործել հետևակային գնդի ականանետային և հրետանային գնդի՝ մայոր Եղիազարյանի ղեկավարած երրորդ դիվիզիոնի մարտկոցները: Հարձակվող գերմանական տանկերի և հետևակի դեմ ստեղծվեց ականանետային և հրետանային մեծ կրակապատնեշ:

Սակայն թշնամու տանկերը առաջանում էին և ընդհուպ մոտենում մեր դիրքերին: Այդ ժամանակ Դանիելյանը հրամայեց գումարտակների հրամանատարներին՝ զենքի բոլոր տեսակներից կրակ բացել տանկերի վրա, առաջին հերթին ոչնչացնել թշնամու առաջ շարժվող հետևակը: Հանդիպելով լուրջ դիմադրության՝ գերմանացիները մարտի մեջ նետեցին նոր ուժեր, նոր տանկեր, որոնց առաջխաղացումն ուղեկցվում էր ձայնային մեծ էֆեկտ առաջացնող ականանետային մարտկոցների կրակով:

Մարտն ավելի ու ավելի էր բորբոքվում: Ելքը ճակատագրական պիտի լիներ ինչպես մեզ, նույնպես և գերմնացիների համար: Պետք էր արյան գնով կասեցնել թշնամու գրոհը:

Գնդի հրամանատարը, դիվիզիայի շտաբին զեկուցելով ստեղծված ծանր իրադրության մասին, խնդրեց հակատանկային հրետանու օգնությունը:

Դիվիզիայի շտաբից գնդի հրամանատարական կետ ժամանեցին դիվիզիայի հրետանու պետ գնդապետ Հակոբ Սարգսյանը և կոմիսար, ավագ գումարտակային կոմիսար Արշալույս Հայրապետյանը, դիվիզիայի շտաբային մարտկոցի հրամանատար Արտաշես Նարինյանի, կապի ջոկի հրամանատար Մարգար Գալփոյանի, դիվիզիայի 196-րդ հակատանկային առանձին դիվիզիոնի հրամանատար Իվան Ֆիլիպովիչի, ավտոտեխնիկ Մկրտիչ Պատրիկյանի, հատուկ ծառայության կապիտան Ստեփան Փիլոսյանի հետ:

Գնդի հրամանատարի զեկույցը լսելուց և ստեղծված իրադրությունն անձամբ տեսնելուց հետո գնդապետ Հ. Սարգսյանը դիվիզիայի հրետանու կրակի վերադասավորման հրաման տվեց, իսկ հակատանկային դիվիզիոնի հրամանատար Ֆիլիպովիչին հրամայեց հրանոթները առաջ քաշել դեպի հետևակի մարտաշարքերը և ուղիղ նշանառությամբ ոչնչացնել թշնամու տանկերը:

Դիվիզիայի հրետանու պետի կարգադրությամբ գերմանական տանկերի դեմ ուղղվեց նաև հրետանային գնդի մյուս դիվիզիոնների կրակը: Մեր և գերմանացիների միջև ընկած



մարտադաշտը ծածկվեց ծուխ ու կրակով: Չորսբոլորը սպանվածներ ու վիրավորներ էին: Գերմանացիները ետ շպրտվեցին, մարտը թուլացավ, բայց ֆաշիստները փոխեցին գրոհի ուղղությունը. այս անգամ նոր ուժերով նրանք կրակն ուղղեցին գնդի ձախ թևի մարտակարգերի վրա:

Այստեղ պաշտպանական դիրք էր գրավել առաջին գումարտակը, որի զինվորները, հրամանատարի քաղաքական գծով տեղակալ, լեյտենանտ Խաչիկ Բադալյանի ղեկավարությամբ, ինտենսիվ կրակով էին դիմավորում գրոհող գերմանական զինվորներին:

Այդ ժամանակ դիմացի բարձունքներից դեպի գումարտակի խրամատները շարժվեց գերմանական տանկերի նոր հնգյակը՝ նրանց վրա նստած հետևակի ավտոմատային համազարկերի ուղեկցությամբ: Գումարտակի խրամատներում մի պահ հանկարծակիի եկան: Բայց միայն մի պահ: Հետևեց մեր գրահակիրների դիպուկ կրակը: Բոցավառվեց թշնամու առաջին տանկը: Դա քաջալերեց մարտիկներին, առաջացող տանկերի վրա սկսեցին պայթել հրետանային արկերը, բայց նրանք շարունակում էին առաջ շարժվել: Հաշված մետրեր էին մնում մեր խրամատներից մինչև տանկերը: Թվում էր՝ ամեն ինչ վերջացած է, ուր որ է, նրանք հողին կհավասարեցնեն խրամատներում կռվող զինվորներին: Ինչպե՞ս, հանձնվե՞լ: Ո՛չ: Պետք է կռվել ու շահել մարտը: Չէ՛ որ ետևում Բաքուն է, Թբիլիսին, Երևանը... սա այն վերջին բնագիծն է, որից այն կողմ չպետք է անցնեն գերմանական տանկերը: Այսպես էր մտածում ամեն մի զինվոր ու սպա:

Հաղթելու հավատով լցված, մահն աչքերն առած՝ հայ դյուցազունները շարունակում էին կռիվը թշնամու տանկերի դեմ: Խրամատներից դեպի տանկերն էին թռչում նռնակները: Դիպուկ էր մեկը, մյուսը, և ահա սկսում է բոցավառվել երկրորդ տանկը, ապա՝ երրորդը: Բարձրացող ծուխն ու բոցը փակում էին մեր մարտիկների տեսադաշտը, բայց կրակը չէր դադարում, կռիվը հետզհետե թեժանում էր, մեր հրետանու կրակապատնեշը փակում էր մնացած տանկերի և հետևակով լցված զրահամեքենաների ճանապարհը:

Թշնամին, տեսնելով իր մարդկային մեծ կորուստները, այրվող տանկերը, դադարեցրեց գրոհները և շրջվեց դեպի ելման դիրքերը ու փախուստի դիմեց: Դիվիզիայի երեք հետևակ գնդերը հրետանու կրակի ուղեկցությամբ ելան հակագրոհի և սրընթաց հետապնդեցին թշնամուն: Բոլոր կողմերից լսվող «հաղթանա՜կ, հաղթանա՜կ» բացականչություններն ու հուժկու ուռան միախառնվել էին կրակոցների խլացուցիչ ձայնին:

Չկարողանալով դիմադրել մեր հարձակմանը՝ գերմանացիները խուճապահար նահանջեցին, մարտի դաշտում թողնելով այրված չորս տանկ, զրահամեքենաներ, մարտական տեխնիկա, երկու հազարից ավելի սպանվածներ, վիրավորներ:

Դեկտեմբերի 22-ի երկրորդ կեսն ու գիշերը անցան խաղաղ: Հաջորդ օրվա լուսաբացին գերմանացիները կրկին անցան գրոհի՝ նպատակ ունենալով վերականգնել նախորդ օրվա իրենց մարտագիծը: Մեր զորամասերը, ամրանալով նոր նվաճած բնագծերում, միաժամանակ փոքր ջոկատներով գրոհում էին գերմանացիների վրա: Ամենից ծանր էր 677-րդ հետևակային գնդի վիճակը: Գերմանական դզոտներից տեղացող կրակը հնարավորություն չէր տալիս գնդի գումարտակներին տեղից շարժվելու:

Թշնամու ամրացված դիրքերը պաշտպանվում էին գերմանական հետևակի մեկ գումարտակով, ինչպես նաև հողի մեջ թաղված երկու տանկերից և թիկունքում տեղադրված ականանետային երկու մարտկոցներից տեղացող կրակով: Վաշտի հրամանատար Մեխակ Սարգսյանը, որոշելով վնասազերծել այդ թշնամական դզոտները, ամբողջ վաշտով գաղտագողի սկսեց մոտենալ գերմանական կրակակետերին: Բայց տեղատարափ գնդացրային կրակը հողին սեղմեց մարտիկներին: Նռնակներ վերցնելով՝ Սարգսյանը շարքայիններ Հակոբյանի, Դալաքյանի, Իվանովի և Ղազարյանի հետ սողաց դեպի դզոտները:

Սարգսյանին հաջողվեց վնասազերծել աջակողմյան դզոտը և երբ պատրաստվում էր իր քաջերի հետ վնասազերծել հաջորդը, ընկավ տեղատարափ կրակի տակ: Վաշտի հրամանատար Սարգսյանը մահացու վերք ստացավ, բայց նրա ընկերները կատարեցին մարտական առաջադրանքը. ոչնչացնելով հաջորդ դզոտը, հնարավորություն տվեցին վաշտին առաջ շարժվելու:

Դիվիզիայի 675-րդ հետևակային գնդում գործում էր Աղասի Գրիգորյանի ղեկավարած վաշտը: Նրա հրամանատարության տակ, նույն վաշտում կռվում էին հայրը՝ Հովսեփ Գրիգորյանը որպես գնդացրորդ, երկու մորեղբայրները, հորեղբոր տղաները, մի խոսքով, համարյա ամբողջ վաշտը արյունակիցների մարտական միավորում էր:

1943 թ. հունվարի 4-ին մարտեր էին մղվում Մոզդոկից հյուսիս ընկած սովխոզը գրավելու համար: Գրիգորյանի վաշտն առաջադրանք ստացավ գրավել սովխոզի հյուսիսային կողմում գտնվող առանձնատունը, որտեղից գերմանացիներն անընդմեջ կրակով կասեցնում էին գումարտակի հարձակումը: Աղասին որո-

շեց վաշտը բաժանել երկու խմբի և միաժամանակ մի խմբով առանձնատան վրա հարձակվել հարավից, մյուս խմբով՝ հյուսիսից:

Զբաղեցնելով հարմար կրկակակետ, Հովսեփը (որ պետք է գնդացրային կրակով ապահովեր վաշտի առաջխաղացումը) տեղատարափ կրակ բացեց առանձնատան վրա: Նրա կրակի տակ վաշտն անցավ հարձակման, բայց թշնամին ուժեղ կրակով մարտիկներին սեղմեց հողին: Այստեղ Հովսեփը չհամբերեց, գնդացիրը ձեռքին վազեց դեպի զինվորները՝ գոչելով. «Վա՜շտ, իմ հետևից մարտի՜»: Վաշտը մեկ մարդու պես առաջ սլացավ Հովսեփի գնդացրային կրակի ուղեկցությամբ և, շատ չանցած, գրավեց առանձնատունը: Հովսեփի խոսքը օրենք էր, բոլոր հարազատներն ու վաշտի մնացած զինվորներն անառարկելիորեն լսում էին նրան:

Մարտական շատ էպիզոդներ անջինջ տպավորություն են թողել Հայրենական պատերազմի մասնակցիս վրա: Հիմա էլ, երբ հիշում եմ, խորին սիրով ու հարգանքով եմ համակվում այն մարդկանց հանդեպ, ովքեր իրենց կյանքը չխնայեցին հայրենի հողը անարգ թշնամուց ազատագրելու համար:

Դիվիզիայի հրամանատարի քաղգծով տեղակալ ավագ գումարտակային կոմիսար Արշալույս Հայրապետյանն իր հուշերում գրում է, որ Մոզդոկի տակ մղված կռիվներում թշնամու հրետանային կրակից վնասվել ու ընդհատվել էր հեռախոսային կապը 675-րդ գնդի գումարտակի հրամանատար Դանիելյանի և նույն գումարտակի 6-րդ վաշտի հրամանատար Հարոյանի միջև: Կապը վերականգնելու է գնում շարքային կապավոր Խաչիկ Աղաջանյանը:

Թշնամու արկերի պայթյունները չեն կանգնեցնում զինվորին: Գիտակցելով, որ ընթացող մարտի հաջողությունը պայմանավորված է իր հմտությամբ, Խաչիկը, արհամարհելով մահը, չդադարող կրակի տակ գտնում է հեռախոսալարի կտրվածքը և միացնում:

Ապա միացնում է ապարատը, ստուգում, բայց հեռախոսագիծը կրկին չի գործում: Անվեհեր մարտիկը շարունակում է սողալ առաջ, գտնում է հեռախոսագծի երկրորդ վնասվածքը. բայց այդ վայրկյանին թշնամու ականի բեկորը մահացու վիրավորում է նրան: Ծանր վիճակում Աղաջանյանը կատարում է իր վերջին պարտքը Հայրենիքի հանդեպ: Ատամների տակ իրար միացնելով հեռախոսալարի ծայրերը, նա կարճ ժամանակով վերականգնում է գումարտակի և վաշտի հրամանատարների միջև այնքա՜ն կարևոր կապը:

Երբ մոտենում է հաջորդ կապավորը՝ շարքային Օհանյանը, Աղաջանյանին գտնում է հեռախոսալարի ծայրերը բերանում մահացած:

Այդ մարտերում իրենց խիզախությամբ ու անվեհերությամբ աչքի ընկան հարյուրավոր հետևակայիններ, զրահահարներ, հետախույզներ ու հրետանավորներ, տասնյակ հրամանատարներ ու քաղաշխատողներ: Մոզդոկի տակ մղված կռիվներում 684-րդ գնդին իր կրակով օգնում էր 964-րդ հրետանային գնդի 3-րդ դիվիզիոնը:

Այդ դիվիզիոնի հրետանավորները, մարտական շատ ծանր պայմաններում իրենց հրանոթները դասավորելով հետևակի զբաղեցրած առաջին գծում, երկօրյա ճակատամարտում բաց տարածության վրա կռվելով գերմանական տանկերի ու հետևակի դեմ, ետ էին մղում նրանց հարձակումները:

Այդ ծանր մարտերում մեջքից վիրավորվեց դիվիզիոնի հրամանատար կապիտան Վարազդատ Եղիազարյանը: Սակայն նա չհեռացավ մարտադաշտից, մնաց շարքում և շարունակեց ղեկավարել դիվիզիոնը:

Միայն հաջորդ օրը կրակագիծ եկած դիվիզիայի հրամանատարի քաղգծով տեղակալի հարկադրմամբ Եղիազարյանը փոխադրվեց թիկունք: Անձնուրաց խիզախության համար նա պարգևատրվեց Կարմիր աստղի մարտական շքանշանով:

Մոզդոկի տակ մոտ 18-օրյա համառ մարտերից հետո 1943 թ. հունվարի 3-ին Անդրկովկասյան ռազմաճակատի հյուսիսային խմբավորման զորքերը (որոնց կազմի մեջ մտնում էր և 409-րդ դիվիզիան), անցնելով հարձակման, հենց նույն օրը ազատագրեցին Մոզդոկ քաղաքը:

Մոզդոկի տակ մղված կռիվներում տարած հաղթանակը հանդիսացավ դիվիզիայի առաջին մկրտությունը, որից սկսվեց նրա մարտական ուղին՝ Կովկասյան նախալեռներից դեպի արևմուտք:

Շարունակելով հետապնդել նահանջող թշնամուն՝ դիվիզիան հունվարի 3-ից մինչև 18-ը մասնակցեց Հյուսիսային Կովկասի Գեորգևսկ, Միներալնիե Վոդի, Պրոխլադնի, Վորոշիլովսկ (Ստավրոպոլ) քաղաքների, Կուրսկայա ստանիցայի և հարյուրավոր այլ բնակավայրերի ազատագրմանը:

Խուճապահար փախչող գերմանաֆաշիստական զորքերը Հյուսիսային Կովկասում ամեն ինչ ոչնչացնում էին իրենց ճանապարհին. պայթեցնում էին երկաթուղային կամուրջները, հրդեհում պահեստներն ու խոշոր արժեք ներկայացնող հասարակական կառույցներն ու շինությունները, դպրոցներն ու մանկապարտեզները, թունավորում սննդամթերքն ու խմելու ջուրը, գերեվարում տղամարդկանց ու կանանց:



Երբեք չեմ մոռանա Գեորգևսկ քաղաքի ազատագրումը 1943 թվականի հունվարի 11-ին: Գերմանական ճիվաղները նահանջից առաջ թունավորել էին քաղաքում եղած սննդամթերքի մնացորդները: Մեր առաջապահ զորամասերն ու տեղի բնակչությունը, անտեղյակ դրան, նրանց փախուստից հետո սկսել էին օգտվել այդ մթերքներից և... Ահավոր տեսարան էր: Մարդիկ գալարվում էին տանջալից ցավերից, օգնություն աղերսում, մաքառում մահվան դեմ...

Հարձակվող մեր զորքերի թիկունքային զորամասերը, բուժսանիտարական ստորաբաժանումները, զորքերի մատակարարումը կազմակերպելու հետ միասին,ստիպված էին շատ ժամանակ ու միջոցներ ծախսել մասսայական թունավորումը կանխելու, հազարավոր մարդկանց կյանքը փրկելու համար:

Այդ ծանր պահին փրկարար օգնություն կազմակերպեց Ադրբեջանի կոմկուսի Կենտկոմը՝ Բաքվից Գեորգևսկ ուղարկելով մեծ թվով բուժաշխատողներ, տրանսպորտային միջոցներ, դեղորայք և հանդերձանք:

Փետրվար-մարտ ամիսներին, ակտիվ գործողություններ ծավալելով Կրասնոդարի երկրամասի Կուբանի շրջանում, ստրատեգիական այս ուղղության կռիվներին մասնակցող սովետական բանակի մյուս զորամիավորումների հետ մեկտեղ, մեր զորամասը մարտերով ազատագրեց Արմավիր, Նովոկուբանսկ քաղաքները, Պետրոպավլովսկայա, Գիագինսկայա, Ուստ-Լաբինսկ, Սերգեևսկայա ստանիցաները, Կրասնոդար, Կրասնոարմեյսկ քաղաքները, տասնյակ հարյուրավոր բնակավայրեր, երկաթուղային հանգուցային կայարաններ, խուտորներ, դուրս եկավ Կուբանի Պրոտոկ գետի մոտերքը Սլավյանսկ քաղաքի շրջանում՝ հասնելով մինչև Թամանյան թերակղզին:

Մարտ ամսվա վերջերին դիվիզիան դուրս եկավ մարտերից և տեղափոխվեց Ռոստովի մարզի Միլերովո քաղաքի շրջակայքը՝ կարճատև հանգստի և համալրման համար:

Հյուսիսային Կովկասի և Կուբանի ազատագրման համար մղվող կռիվներում ցուցաբերած արիության, խիզախության, անձնազոհ հերոսության համար դիվիզիայի գնդերի, ստորաբաժանումների հարյուրավոր զինվորներ, հրամանատարներ ու քաղաշխատողներ պարգևատրվեցին կառավարական բարձր պարգևներով՝ շքանշաններով ու մարտական մեդալներով:

Հայրենական մեծ պատերազմի բովով անցած հայ մարտիկները փառքով պսակեցին իրենց անցած մարտական ուղին՝ վերստին հավաստելով իրենց անդավաճան հավատարմությունը սովետական հայրենիքին:

# ԼԵԳԵՆԴԱՐ ԴԻՎԻԶԻԱՅԻ ՄԱՐՏԱԿԱՆ ԼՐԱԳԻՐԸ

**Ս. Ս. ՆԱԼԲԱՆԴՅԱՆ**
89-րդ հայկական Թամանյան դիվիզիայի «Կարմիր զինվոր» լրագրի նախկին խմբագիր, պաշտոնաթող փոխգնդապետ

**ՀԱՅԱՍՏԱՆՈՒՄ ՍՈՎԵՏԱԿԱՆ** կարգերի հաստատման և հանրապետության կարմիր բանակի կազմավորման հետ է կապված հայ զինվորական պարբերական մամուլի սկզբնավորումը: Այն հիմնադրել են Ալ. Մյասնիկյանը, Հ. Բժշկյանը (Գայ), Հ. Լազյանը, Հ. Հովսեփյանը: Այդ մամուլի առաջնեկը եղել է «Կարմիր բանակ» հնգօրյա թերթը, որը լույս է տեսել 1920 թվականի դեկտեմբերի վերջերից: 1921 թվականի հունիսից դրան հաջորդել է «Կարմիր զինվորը»: ՀՍԽՀ կարմիր բանակի քաղաքական բաժնի, ապա հայկական հավաքական բրիգադի քաղաքական բաժնի օրգանն է եղել այն, իսկ հետագայում՝ Կ. Ե. Վորոշիլովի անվան հայկական լեռնահրաձգային կարմրադրոշ դիվիզիայի լրագիրը:

«Կարմիր զինվորը» խմբագրել են Վ. Ծովյանը, Ա. Մարությանը, Ե. Զուբարը, Ս. Ասլիբեկյանը, Հ. Տեր-Դանիելյանը, Մ. Դավթյանը, Մ. Պարոնիկյանը, Ա. Ալեքսանյանը, Գ. Գյուլեցյանը, Ղ. Հովհաննիսյանը, Հ. Ղազարյանը, Ա. Նիկողոսյանը, Շ. Հովհաննիսյանը և ուրիշներ: Լրագիրը պրոպագանդել է Վ. Ի. Լենինի գաղափարները սոցիալիստական հայրենիքի պաշտպանության վերաբերյալ, կոմունիստական կուսակցության ներքին ու արտաքին քաղաքականության հարցերը, լայն տեղ է հատկացրել կարմիր բանակայինների մարտական վարպետության կատարելագործման, քաղաքական դաստիարակության խնդիրներին, ստորաբաժանումների կուսակցական ու կոմերիտական կազմակերպությունների աշխատանքի լուսաբանմանը: Հայկական հրաձգային դիվիզիայի վերակազմումից հետո՝ 1938 թվականի կեսերին, դադարում է «Կարմիր զինվորի» հրատարակությունը:

**ՀԱԶԱՐ ԻՆՆ ՀԱՐՅՈՒՐ ՔԱՌԱՍՈՒՆՄԵԿԻ** հունիսի 22-ին ֆաշիստական հորդաները առանց պատերազմ հայտարարելու ուխտադրժորեն հարձակվեցին Սովետական Միության վրա: Աշխատավորական կոլեկտիվների միտինգներում ելույթ ունեցողներն ամենուրեք արտահայտում էին մեր լայնարձակ երկրի միլիոնավոր մարդկանց սրտի խոսքը— ավելի միաձույլ համախմբվել հարազատ կոմունիստական կուսակցության շուրջը, սրբազան պատերազմի ելնել հիտլերյան զավթիչների դեմ: Սովետական ողջ ժողովրդի նշնաբանն էր՝ ամեն ինչ ռազմաճակատի, ամեն ինչ հաղթանակի համար:

Ու հիշում էին Իլյիչի խոսքերը. «Կարմիր բանակը անպարտելի է, որովհետև նա միլիոնավոր աշխատավոր գյուղացիներին միացրել է բանվորների հետ, որոնք այժմ... չեն վհատվում, փոքրիկ պարտություններից հետո կոփվում են, ավելի ու ավելի համարձակ են գնում թշնամու վրա, իմանալով, որ նրա լիակատար պարտությունը մոտ է» (Վ. Ի. Լենին, Երկեր, հ. 29, էջ 290—291):

Մեր սոցիալիստական հայրենիքը դարձավ ընդարձակածավալ մի ռազմաճակատ, սովետական բոլոր քաղաքացիները՝ ռազմիկներ: Կարմիր բանակի մարտիկներն արյունալի կռիվներ էին մղում թշնամու գերակշիռ ուժերի դեմ:

Մեծ հայրենականի առաջին օրվանից ՀամԿ(բ)Կ Կենտկոմը վճռական նշանակություն էր տալիս մասսաների հետ տարվող քաղաքական դաստիարակչական աշխատանքներին թե՛ ռազմաճակատում, թե՛ թիկունքում: Բանավոր պրոպագանդային ու ագիտացիային զուգընթաց կարևոր էր մամուլի ու մասսայական ինֆորմացիայի մյուս միջոցների դերը: Կոմունիստական կուսակցությունը մեծ ուշադրություն էր նվիրում զինվորական մամուլին, ինչպես դրա անվանացանկի ավելացման, նույնպես և քաղաքական, ռազմահայրենասիրական, պատերազմական գործողությունները, ռազմիկների քաջագործությունները լուսաբանող նյութերի գաղափարական մակարդակի բարձրացմանը: 1943 թվականի վերջերին լույս էին տեսնում կենտրոնական զինվորական երեք, ռազմաճակատների՝ 13, բանակների ու կորպուսների՝ 128, դիվիզիաների՝ մի քանի հարյուր թերթեր, ազգային լեզուներով հրատարակվում էին 64-ը: Դրանցից բացի 70 թերթ կար նավատորմում:

Պատերազմի տարիներին զինվորական մամուլի ու ժուռնալիստների դերն ըստ արժանվույն է գնահատել Լ. Ի. Բրեժնևը իր Մալայա զեմլյա հերոսապատումում:

«...Ես սովոր էի հարգել ժուռնալիստներին,— գրում է Լ. Ի. Բրեժնևը,— որովհետև գիտեի. մարտերի ժամանակ նրանք մշտապես գտնվում էին զորքերում, գնում դեսանտների, մասնակցում դիվերսիոն խմբերին, «լեզուներ» բռնելուն»:

Պատերազմի տարիներին լույս են տեսել մեկ և կես տասնյակից ավելի հայերեն զինվորական թերթեր: Դրանց գործունեությունը ճշմարտացի արտացոլված է Ա. Ն. Մնացականյանի Հայ ռազմիկների հերոսության տարեգրությունները ուշագրավ աշխատությունում:

**ՈՒԹՍՈՒՆԻՆՆԵՐՈՐԴ ՀԱՅԿԱԿԱՆ** հրաձգային Թամանյան դիվիզիայի «Կարմիր զինվոր» երկօրյա լրագիրն սկսել է լույս տեսնել զորամիավորման կազմավորման օրերին : Դիվիզիայի քաղբաժնի պետ, գումարտակային կոմիսար Ազիզ Կիրակոսյանի նախաձեռնությամբ «Կարմիր զինվորի» խմբագրությունում աշխատանքի նշանակվեցին հմուտ լրագրողներ Գուրգեն Հարությունյանը, Ներսես Ղահրամանյանը, Գեղամ Ղուկասյանը, Գրիգոր Ջոհրաբյանը, Խիկար Բարսեղյանը*:

Ցարժական տպարանի գրաշարներն էին Սամսոն Մարտիրոսյանը, Արամայիս Թերզյանը, Մկրտիչ Մինասյանը, տպագրիչը՝ Սիմոն Սահակյանը:

«Կարմիր զինվորի» առաջին խմբագիրը եղել է Գ. Հարությունյանը: 1942 թվականի նոյեմբերից նրան փոխարինել է սողերիս հեղինակը: Լրագրի առաջին համարը լույս է տեսել 1942 թվականի հունվարի 12-ին. բնաբանն էր Վ. Ի. Լենինի մարտակոչը:

«Կռվե՛ք մինչև վերջին կաթիլը, ընկերնե՛ր, պահե՛ք ամեն մի թիզ հողը, տոկո՛ւն եղեք մինչև վերջ, հաղթանա՛կը հեռու չէ, հաղթանակը մե՛րը կլինի»:

Առաջին էջում տպագրված է դիվիզիայի անդրանիկ հրամանատար գնդապետ Ս. Զաքյանի և դիվիզիայի կոմիսար, ավագ գումարտակային կոմիսար Վ. Զումակովի՝ Պատրաստ լինել մարտի համար խորագրով հոդվածը:

«...Հայրենիքի պաշտպանության համար,— ասված է այնտեղ, ոտքի է ելել բազմամիլիոն սովետական ժողովուրդը, այդ թվում ազատասեր հայ ժողովուրդը, որը վերածնվել է ռուս մեծ ժողովրդի և սովետական իշխանության օգնությամբ... Մեր առջև խնդիր է դրված կարճ ժամանակում տիրապետել մարտ վարելու արվեստին, լինել կարգապահ, զգոն ու վերադաս հրամանատարության առաջին իսկ պահանջով մեկնել մարտի դաշտ՝ կռվելու ֆաշիստական զավթիչների դեմ...»:

Մոտենում էին ռազմաճակատ մեկնելու օրերը: Դիվիզիայի գնդերին մարտական դրոշներ հանձնելու առթիվ զորահանդես էր կազմակերպված Երևանի Լենինի անվան հրապարակում: ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության անունից զորամասերին դրոշներ հանձնեց ՀՍՍՀ Գերագույն սովետի նախագահության նախագահ Մ. Պապյանը: Ընդունելով դրոշները՝ խոսք ասացին գնդերի հրամանատարներ Մ. Սիրունյանը, Կ. Մելիքյանը, Ս. Խանջյանը և Գ. Բագիրովը:

— Մարտական այս դրոշները,— երդվեցին նրանք,— մենք կտանենք փորձությունների ու հաղթանակների դժվարին ուղիներով: Մենք միշտ մեր ձեռքում բարձր ու անսասան կպահենք մեծ Լենինի պատկերը կրող այս դրոշները, որ մեզ կառաջնորդեն դեպի մեծ հաղթանակ (տե՛ս «Կարմիր զինվոր», 1942 թ., № 78):

Քառասուներկուսի ամռանը լարված վիճակ ստեղծվեց սովետագերմանական ռազմաճակատի հարավային հատվածում: Արբեցած ժամանակավոր հաջողություններով, թշնամին սողում էր դեպի Վոլգայի ափերը, դեպի Կովկասյան նախալեռներ: Այդ գերլարված օրերին Թբիլիսիում գումարվեց Ադրբեջանի, Հայաստանի, Վրաստանի ներկայացուցիչների միտինգ, ուր կոչ արվեց Անդրկովկասի բոլոր ժողովուրդներին ու ազգերին՝ Սովետական Միության բոլոր ժողովուրդների հետ ջանք չխնայել երկիրը մահաբեր թշնամուց պաշտպանելու համար:

Կովկասյան նախալեռներում հզոր կարմիր բանակի կազմում մարտնչում էին Հայկական 89-րդ, Վրացական 414-րդ, Ադրբեջանական 416 դիվիզիաները: Այդ օրերին «Կարմիր զինվորում» Ոչ մի քայլ ետ, նահանջողը հայրենիքի թշնամին է խորագրով հոդվածով հանդես եկավ դիվիզիայի զինկոմ, ավագ գումարտակային կոմիսար Ս. Հայրապետյանը: Նկարա-

* *Հետագայում, տարբեր ժամանակներում խմբագրությունում աշխատել են Քր. Թափալցյանը, Հ. Հովակիմյանը, Ա. Սարոյանը, Կ. Ալավերդյանը, Մ. Քոչարյանը, Գ. Ղարիբջանյանը, Ա. Կարապետյանը, Գ. Պետրոսյանը, Ն. Սահակյանը, Հ. Առաքելյանը, Հ. Մելքոնյանը:*

գրելով դիվիզիայի մարտական գործողությունները՝ նա գրում է. ...Մենք երդվել ենք հայ ժողովրդին, որ մեր արյամբ կփակենք Անդրկովկասի դռները գերմանաֆաշիստական բարբարոսների դեմ... Ո՛չ մի քայլ ետ, ընդհակառակը, միշտ առաջ ու առաջ գնալ: Առաջ գնալու մեջ է մեր հաղթանակը (տե՛ս «Կարմիր զինվոր», 1942 թ., № 114):

Կովկասյան նախալեռներում թեժանում էին կռիվները: Դաժան թշնամու դեմ խիզախաբար կռվում, նրանց գրոհները ետ էին մղում սովետական ռազմիկները: «Կարմիր զինվորը» նրանց սխրագործությունները էր ներկայացնում խմբագրական հոդվածներում, ակնարկներում և այլ նյութերում: Ճանաչեք հերոսանային գործի վարպետներին առաջնորդողում կարդում ենք.

...Հմուտ թնդանոթաձիգներ Ա. Բադալյանը, Ա. Բաղդասարյանը, Վ. Մելքոնյանը իրենց դիպուկ արկերով փակել են ոսոխի ճանապարհը, օժանդակել հետևակին ետ մղելու հակառակորդի գրոհները... (տե՛ս նույն տեղը, № 125):

Իրենց դիպուկ արկերով ֆաշիստների ամրությունները ու կրակակետերն ավերում էին ավագ լեյտենանտ Արտյոմ Գևորգյանի, լեյտենանտ Պարգև Պողոսյանի ստորաբաժանումների հրետանավորները: Քաջությամբ էին գործում հակատանկային հրացանակիրներ Բ. Հակոբյանը, Բ. Բարսեղյանն ու Հ. Ավագյանը:

...Հիտլերականները,— գրում է քաղղեկ Գ. Դանիելյանը,— գերակշռող ուժերով երկու անգամ գրոհի են եկել մեր ստորաբաժանման ուղղությամբ և հանդիպելով մեր ռազմիկների համառ դիմադրությանը, ետ են մղվել իրենց դիրքերը: Հակագրոհների ժամանակ աչքի են ընկել Մ. Հովհաննիսյանը, Ղ. Սարգսյանը, Ղ. Սահակյանը, Ա. Փարոյանը, Հ. Հարությունյանը, որոնք դիպուկ գնդակներով ոչնչացնում էին թշնամուն:

Դիվիզիայի հրամանատար, գնդապետ Արտաշես Վասիլյանը, քաղաքական գծով նրա տեղակալ, ավագ գումարտակային կոմիսար Խաչիկ Հակոբջանյանը, դիվիզիայի քաղաքական բաժնի պետ, գումարտակային կոմիսար Լիպարիտ Վարդանյանը հաճախ էին «Կարմիր զինվորի» խմբագրության ուշադրությունը հրավիրում այն բանի վրա, որ լրագրի էջերում ավելի համակողմանի լուսաբանվի ստորաբաժանումների մարտական գործողությունների ընթացքը, ներկայացվեն կռվի դաշտում ռազմիկների սխրանքները, կուսակցական ու կոմերիտական կազմակերպությունների գործունեությունը:

Կովկասյան նախալեռներում հիտլերյան զավթիչների դեմ խիզախորեն կռվեցին Սեպուհ Խանջյանը, Ղարիբ Ղարիբջանյանը, Ալեքսեյ Սաֆրոշկինը, Հրանտ Հակոբյանը, Պողոս Մուրադյանը և շատ ուրիշներ: Նրանք կյանքի գնով փակեցին Անդրկովկաս սողացող ֆաշիստական բորենու ճանապարհը:

Վոլգայի ափին կարմիր բանակի տարած հաղթանակի լուրն արձագանքվեց Կովկասյան նախալեռներում: Անդրկովկասյան ռազմաճակատի զորքերի մյուս միավորումների հետ թշնամու դեմ ակտիվ մարտական գործողությունների ձեռնամուխ եղան նաև 89-րդ հայկական հրաձգային դիվիզիայի զորամասերը: Մալգոբեկն ազատագրելուց հետո Սիրակ Մանասյանի, Հայկազ Ոսկանյանի, Գևորգ Հարությունյանի, Վանիկ Սկլիկյանի հրամանատարությամբ գործող և մյուս ստորաբաժանումները, ազատագրելով մի շարք բնակավայրեր ևս, Ստավրոպոլյան բարձունքների վրայով շարժվում էին դեպի արևմուտք: Ծանր, դժվարին օրեր էին, նույնիսկ օրաբաժին հացը չէր հասնում ժամանակին. բայց տանելով բոլոր զրկանքները, հաղթահարելով թշնամու դիմադրությունը, հաղթանակի հավատը սրտերում, առաջ էին շարժվում դիվիզիայի քաջարի զինվորները: Ազովի արևելյան ափերի մոտ մղված արյունահեղ ճակատամարտերում զոհվեցին դիվիզիայի հրամանատար, գնդապետ Ա. Վասիլյանը, 390-րդ գնդի հրամանատար, մայոր Գարեգին Իսախանյանը, 400-րդ գնդի հրամանատարի քաղաքական գծով տեղակալ Սուրեն Բաղդասարյանը, դիվիզիայի քաղբաժնի պետի տեղակալ Զենիկ Կիրակոսյանը և ուրիշներ: Վիրավորվեցին գնդի պրոպագանդիստ Գրիգոր Նազարյանը, ջոկի հրամանատար Վաչագան Հովհաննիսյանը, դիվիզիայի կուսհանձնաժողովի քարտուղար Հայկ Դոնոյանը և շատ ուրիշներ: 1943 թվականի փետրվարի սկզբներին էր այդ:

Անցնում էին օրեր, ամիսներ: Համալրվում էր 89-րդ հայկական դիվիզիան: Նոր նշանակված հրամանատար, գնդապետ Նվեր Սաֆարյանը, զորամիավորման քաղաքական աշխատողների և կուսակցական կազմակերպությունների հետ, գործադրում էր իր ողջ հմտությունն ու կարողությունը՝ կոփելու դիվիզիան գալիք մարտերի համար:

Ազովի ափին ստացվեց «Հայ ժողովրդի նամակը՝ ռազմաճակատի հայ մարտիկներին», որը սաստիկ հուզեց բոլոր ռազմիկներին:

«...Ձեր ազատագրական կռիվը ռազմաճակատի ո՛ր հատվածում էլ որ լինի, դա կռիվ է նաև Հայաստանի գոյության, Հայաստանի փրկության համար... Ատեցե՛ք թշնամուն ձեր հոգու ամբողջ ուժով: Թո՛ղ այդ ատելությունը ձեր կուրծքը դարձնի պողպատակուռ զրահ, ձեր բազուկներին տա անսպառ կարողություն: ...Մենք կոչ ենք անում ձեզ. ձեր սխրագործություններով ու հերոսություններով բազմապատկեցեք սովետական հզոր զենքի փառքը, եղեք մեր կարմիր բանակի արժանի մարտիկներ... ճզմեք ու ետ մղեք թշնամուն դեպի արևմուտք: Արևմուտք շարժվելով միայն դուք կարագացնեք ձեր հաղթական վերադարձը դեպի հայրենի տուն, դեպի Հայաստան...»:

Հայ ժողովրդի այդ մարտակոչն արագ տարածվեց, հասավ դիրքերը, խրամատները, գետնահյուղերը, անցավ ձեռքից-ձեռք և ռազմիկների սրտերում ավելի բորբոքեց հայրենասիրության հուրը: Նամակի արձագանքն էին «Կարմիր զինվորին» ուղարկված բազում թղթակցությունները, որոնցում հայ ռազմիկները գրում էին, որ սրբությամբ կկատարեն հայրերի, մայրերի ու քույրերի պատվիրանը, եղբայրական մյուս ժողովուրդների զավակների հետ ուս-ուսի՝ ջախջախիչ հարված կհասցնեն թշնամուն:

**ԾԱՆԿԱՏԱՄԱՐՏԸ ՄՂՎՈՒՄ ԷՐ** Նովոռոսիյսկ քաղաքի մատույցներում, Կուբան գետի ստորին հոսանքում: «Կարմիր զինվորն» ապաստանել էր անտառում: 89-րդ հայկական դիվիզիան, 18-րդ բանակի կազմում (որի հրամանատարն էր գեներալ Կ. Լեսելիձեն, քաղբաժնի պետը՝ գնդապետ Լ. Ի. Բրեժնևը), հարձակվում էր ֆաշիստների պաշտպանության «երկնագույն» գծի գլխավոր հենակետերից մեկի՝ Դոլգայա լեռան և Սախարնայա Գոլովկա բարձունքի ուղղությամբ: «Կարմիր զինվորի» էջերում փառաբանվում էին կրակի ու բոցերի միջով դեպի բարձունքները, ապա Թամանյան թերակղզու խորքը սլացող մարտիկները: Դոլգայա լեռան բարձունքը գրոհելիս, Սյունյաց աշխարհի խիզախ զավակ, ավագ սերժանտ Հունան Ավետիսյանն իր դյուցազնական արարքով կրկնեց Ա. Մատրոսովի օրինակը: Նրա քաջագործության մասին նշվեց «Կարմիր զինվորի»՝ 1943 թ. № 91-ի առաջնորդող հոդվածում, տպագրվեց հետևյալ հաղորդումը.

...Մարտ էր մղվում մի կարևոր բնագծի համար: Մեր ռազմիկները համառորեն գրոհում էին հակառակորդի դիրքերի վրա: Թշնամին սկսեց կատաղի կրակ տեղալ դզոտներից մեկից և արգելակեց դասակի առաջխաղացումը: Այդ միջոցին դասակի հրամանատարի օգնական ավագ սերժանտ Հունան Ավետիսյանը, որ բազմիցս աչքի էր ընկել իր խիզախությամբ, արհամարհելով մահը, վճռում է թեկուզ կյանքի գնով լռեցնել ֆաշիստների կրակակետը... Վիրավոր վիճակում նա սրընթաց հասավ թշնամու դզոտին և իր մարմնով փակեց գնդացրի հրակնատը: Հակառակորդի գնդացիրը լռեց: Գրոհի անցավ Միքայել Մուրադյանի գումարտակը, որը Դոլգայա բարձունքը գրավելուց հետո շարունակեց կրնկակոխ հետապնդել թշնամուն... Իր կյանքի գնով Հունանը փրկեց շատ-շատերի կյանքը, հավերժ անմահացավ:

Հուզիչ է գնդի կոմերիտական կազմակերպության քարտուղար Խիկար Բարսեղյանի ակնարկը, ուր նկարագրվում է դասակի հրամանատար Ղևոնդ Թունյանի ղեկավարած գրոհային խմբի սխրանքը: Քաջարի ռազմիկները, գրոհելով գերակշռող ուժ ունեցող թշնամու վրա, ավտոմատային կրակով ու նռնակներով պարտության են մատնում նրան, գրավում բարձունքը: Մալայա զեմլյայից հարձակվող դեսանտային զորամասերն արդեն ազատագրել էին Նովոռոսիյսկը: 89-րդ դիվիզիայի գնդերը շարունակում էին կատաղի մարտերը Դոլգայա և Սախարնայա Գոլովկա լեռների հյուսիսային լանջերով դեպի Վերխնե Բականսկի բնակավայրը:

Այդ օրերին մեր դիվիզիայում էր գործում 18-րդ բանակի քաղաքական բաժնի պատասխանատու աշխատակից մայոր Անուշավան Արզումանյանը. իր մտերմիկ, բոցաշունչ խոսքով նա քաջալերում էր ռազմիկներին: Կուրպատսկայա ավանի համար մղված մարտում ավագ սերժանտ Սուրեն Առաքելյանը կարմիր դրոշը հասցրեց բարձունքի կատարին, այնտեղ էլ դյուցազնի մահով ընկավ: Սակրավոր Ջահան Կարախանյանը կյանքը վտանգելով փրկեց կամուրջը: Նա համարձակ ականազերծում էր ճանապարհները, ուղի բացում հետևակի համար:

Սեպտեմբերի 28-ին «Կարմիր զինվորը» լույս տեսավ այսպիսի նշանաբանով. «Մոտենում է Թամանի ազատագրման ժամը: Ավելի շեշտակի՛, ավելի ուժգի՛ն հարվածենք հիտլերականներին և օր առաջ Կուբանը վերջնականապես մաքրենք ֆաշիստներից»:

Թերթի էջերում փառաբանվում են մարտի դաշտում իրենց քաջությամբ աչքի ընկած Մ. Լազյանը, Գ. Պողոսյանը, Պ. Զուևը, Ս. Մալխասյանը, Ա. Առաքելյանը, Ա. Մինասյանը, Թ. Ավթանդիլյանը և ուրիշներ: Զոհվեցին գնդի պրոպագանդիստ Մնացական Սիմոնյանը, գումարտակի հրամանատար Ցախո Օգանովը, գումարտակի կոմերիտմիության կազմակերպիչ Ալբերտ Աքսկալյանը, քաղաշխատող, նախկին լրագրող Վաղինակ Վարդանյանը: Ծանր վիրավորվեցին 526-րդ գնդի հրամանատար Դանիել Հակոբյանը, հրետանային գնդի հրամանատար Սուրեն Հակոբջանովը, քաղաշխատող Ջալիբեկ Պետրոսյանը, գնդի

հրետանու պետ Արսեն Մուքանյանը և ուրիշներ:

Հոկտեմբերի 3-ի լույս 4-ի գիշերը 89-րդի գնդերը, ջախջախիչ հարված հասցնելով իրենց դեմ գործող ֆաշիստական զորամասերին, դուրս եկան Սև ծովի ափը և ազատագրեցին Թաման քաղաքը:

Հոկտեմբերի 9-ին Թամանյան թերակղզին լրիվին ազատագրվեց ֆաշիստական զավթիչներից: Գերագույն գլխավոր հրամանատարի հրամանով մի շարք զորամիավորումների հետ մեկտեղ 89-րդ հայկական դիվիզիան ևս կոչվեց Թամանյան, գնդապետ Նվեր Սաֆարյանին շնորհվեց գեներալ-մայորի կոչում:

Կովկասի համար մղված մարտերի ընթացքում 89-րդ հայկական դիվիզիայում են եղել Անդրկովկասյան ռազմաճակատի «Боец РККА» թերթի հայերեն հրատարակության խմբագիր Արամայիս Մնացականյանը, Հյուսիսային Կովկասի «Вперед за Родину» լրագրի հայերեն հրատարակության խմբագիր Մովսես Գրիգորյանը, լրագրողներ Վախթանգ Անանյանը, Ստեփան Կուրտիկյանը, Բաբկեն Ծահունյանը, Հարություն Մկրտչյանը: Նրանք եղել են ստորաբաժանումներում, զրուցել ռազմիկների հետ և իրենց տպավորությունները արտահայտել ակնարկներում ու հոդվածներում:

1943 ԹՎԱԿԱՆԻ ՆՈՅԵՄԲԵՐԻ վերջերին Կերչի նեղուցն անցավ նաև 89-րդ Թամանյան դիվիզիան: Զինվորները հիշեցին 1942 թվականի գարունը, արյունահեղ կռիվները Կերչ թերակղզում և զոհվածներին՝ հարազատ, սիրելի մարդկանց... Սովետական այրված հողը, նահատակների արյունը թամանցիներին վրեժի էին կոչում ֆաշիստական զավթիչների դեմ: Եվ մոլեգնում էր գոտեմարտը:

Մարտադաշտից ոչ հեռու խմբագրությունն էր, շարժական տպարանը: Գ. Ղուկասյանը, Ա. Մարոյանը, Հր. Հովակիմյանը հասնում էին դիրքերը, զինթղթակիցների հետ գրում քաջ զինվորների՝ լեյտենանտ Կ. Սամախվալովի հրետանավորների, Տիգրան Սուվարյանի, սնայպեր Սաշա Հակոբյանի, կոմերիտական Սուրեն Մնացականյանի, սերժանտ Աբրահամ Աթոյանի և ուրիշների խիզախության մասին: Գրաշարներ Ս. Մարտիրոսյանը, Գ. Միրզոյանը, տպագրիչ Ս. Սահակյանը ճրագի աղոտ լույսի տակ շարում էին նյութերը, տպագրում լրագիրը: Թերթի հերթական համարի առաջնորդողի վերնագիրն էր Հանուն Ղրիմի ազատագրման:

Ղրիմի ազատագրման համար մղվող կռիվը գնալով բորբոքվում էր: Կերչ քաղաքում փողոցային մարտերում աչքի ընկան նաև դիվիզիայի մի խումբ սակրավորներ, որոնք թշնամու կրակի տակ կարողացան հետևակի համար անցուղի բացել: Մարտական առաջադրանքը օրինակելիորեն կատարողների թվում էր և կոմերիտական կազմակերպիչ Սուրեն Զաքարյանը, որն այստեղ ծանր վիրավորվեց: Իր խիզախությամբ Կերչի մարտերում աչքի ընկավ նաև գնդացրորդ Մարտին Ավետիսյանը. գնդացրային տեղատարափ կրակով նա ոչնչացրեց հակառակորդի կրակակետը և միայն ծանր վիրավորվելուց հետո նրան դուրս բերին մարտի դաշտից: Հունվարի կեսերին փողոցային մարտեր էին մղվում Կերչ քաղաքի արևելյան թաղամասերում: Հարձակվող ստորաբաժանումների հետ քայլ առ քայլ առաջ էր գնում խմբագրության աշխատակից Գ. Ղուկասյանը: Առաջին գծից նա գրում է. «Փողոցային կատաղի մարտերը շարունակվում էին ամբողջ ցերեկը, գիշերը և հաջորդ օրը. այդ ողջ ժամանակ ընկ. ընկ. Վելումյանի, Մարգարովի զինվորները մարտ մղելով, քայլ առ քայլ առաջին էին շարժվում, գրավելով Կերչի նորանոր փողոցներ...» (տե՛ս նույն տեղը, 1944 թ., № 13):

Կտրին հրամանատար Մամիկոն Խաչանյանին է նվիրված Վրեժ Կլուճենք մահախոսական-հաղորդագրությունը: Առաջին համաշխարհային պատերազմի մասնակիցը Հայրենական մեծ պատերազմից առաջ աշխատել էր Երևանի Ձերժինսկու անվան գործարանում, ռացիոնալիզատորական մի քանի առաջարկությունների հեղինակ էր: Պատերազմի առաջին օրերից 89-րդ դիվիզիայում էր, միշտ առաջին շարքերում: Քաջաբար զոհվեց նա Կերչի փողոցային մարտերում:

Կերչ քաղաքի ու ամրոցի ազատագրմանն (ապրիլի 11-ին) ակտիվ մասնակցեցին 89-րդի ռազմիկները: Դրանից հետո Մերձծովյան բանակի զորամիավորումների հետ դեպի Ղրիմի կենտրոնը, դեպի Սևաստոպոլ էին սլանում թամանցիները:

Մայիսի 7-ին, վաղ առավոտյան «կատյուշաների» համազարկերի ազդանշանով սովետական հազարավոր հրանոթներ ու ականանետներ կրակն ուղղեցին Սապուն Գորայում հաստատված հիտլերականների պաշտպանության բնագծի վրա: Փլվում էին հիտլերականների երկաթբետոնե ամրությունները:

Կատաղած ֆաշիստները պատասխան հրետանաականանետային կրակով փորձում էին խափանել մեր թնդանոթաձիգների հարձակումը: Հարձակման էր անցել և հետևակը: Սապուն Գորայի հարավային լանջերով սովետական շատ ժողովուրդների զավակների հետ դեպի Սևաստոպոլ էին գրոհում հայ թամանցիները: Առաջադրանքն էր՝ օդանավակայանի վրայով հասնել քաղաքի հարավ-արևմտյան ծովափը: Թշնամու գլխին արճճի հեղեղ թափելով առաջ էին սլանում Հ. Սիմոնյանի, Ա. Աթայանի, Գ. Աբրահամյանի, Գ. Բադալյանի ստորաբաժանումների քաջերը:

Խախտելով գոյություն ունեցող կանոնները՝ խմբագրությունն ու շարժական տպարանը ևս հասել էին թնդանոթաձիգների կրակադիրքերին: Հակառակորդի արկերից մի քանիսը պայթեցին շարժական տպարանի մոտ: Գրաշարները խուճապի չմատնվեցին: Տառարկղները անմիջապես փոխադրեցին մոտակա խրամատը, թնդանոթների որոտի տակ շարունակեցին աշխատել: Հրայրը նոր էր վերադարձել հետևակայինների մոտից: Ա. Մարոյանը միացրեց ռադիոընդունիչը, և մենք լսեցինք Մոսկվայի ձայնը:

Մայիսի 8-ին «Կարմիր զինվորը» լույս տեսավ հետևյալ լոզունգով.

«Հանուն մեր հերոս քաղաք Սևաստոպոլի ազատագրման, ավելի ուժգին հարված ֆաշիստական ավազակներին»:

Կարճ տևեց Սևաստոպոլի ազատագրման համար մղվող ճակատամարտը: Ընդհանուր հարձակումն սկսելուց 3 օր անց ազատագրվեց քաղաքը, 6 օր հետո Ղրիմը լրիվին մաքրվեց թշնամու զորքերից: Ռազմաճակատային թերթերը, դրանց թվում և «Կարմիր զինվորը» շարունակում էին լուսաբանել մեր մարտիկների՝ Արազ Բաղդասարյանի, Խաչիկ Միրոյանի, Արտաշես Պողոսյանի, Համբարձում Անոյանի, Անդրանիկ Գալստյանի, Հմայակ Ավետիսյանի, Թորգոմ Բաբայանի, Երվանդ Ստեփանյանի և շատ ուրիշների սխրանքները: Միշտ գրոհողների հետ էին 390-րդ գնդի հրամանատար Երվանդ Կարապետյանն ու 526-րդ գնդի հրամանատարի տեղակալ Սերգեյ Ղազարյանը:

Իր խորհուրդներով խմբագրությանն օգնում էր նախկին «Պրավդիստ», մեր դիվիզիայի բաղբաժնի պետ փոխգնդապետ Գրիգոր Հակոբյանը:

«Կարմիր զինվորի» ակտիվ թղթակից, կարմիրբանակային Սերգեյ Դարոնյանը գրել է. «Թեժ մարտում վիրավորվեց ավագ լեյտենանտ Հակոբյանը (Հովհաննես): Վիրավորը արյունաքամ էր լինում: Ֆաշիստներն ավտոմատներից կրակում էին այնպիսի կատաղությամբ, որ հնարավոր չէր գլուխ բարձրացնել, մոտենալ հրամանատարին, օգնել նրան... Այդ պահին սերժանտ Աբրահամյանը վճռեց ինչ գնով էլ լինի փրկել Հակոբյանի կյանքը: Վտանգելով իր կյանքը՝ նա չորեքթաթ մոտեցավ ավագ լեյտենանտին, ցույց տվեց առաջին օգնությունը, ապա կրակի տարափի տակ դուրս բերեց ուշագնաց վիրավորին, փրկեց նրան» (տե՛ս նույն տեղը, 1944, № 68):

Տեղին է հիշել շատ ու շատ բուժաշխատողների, նրանց հետ և բժիշկներ Բ. Մելքումյանին, Վ. Ազիզյանին, Խ. Մխիթարյանին, Ս. Մուսելիմյանին, Հ. Սահակյանին, Ս. Մարտիրոսյանին, Մ. Ավագյանին, բուժքույրեր Լ. Կարպովային, Ն. Միքայելյանին, Ռ. Հովհաննիսյանին, Ս. Վելիևային, Է. Հայրապետյանին, Մ. Հեքիմյանին և ուրիշների, որոնք ամենադժվարին պայմաններում փրկում էին վիրավորների կյանքը:

Ղրիմն ազատագրելուց մի քանի ամիս անց սովետական զորքերն անցան հայրենի սահմանը, շարունակեցին առաջխաղացումը դեպի արևմուտք:

ԹԱՄԱՆՑԻՆԵՐԸ ՍԻՄՖԵՐՈՊՈԼԻՑ հասան Բուգ:

Անցնելով Պուլավիի պլացդարմը (Վիսլայի վրա)՝ կռվով հասան Օդերի Ֆրանկֆուրտի մատույցները: Անհեղ մարտերում զոհվեցին դիվիզիայի հրամանատարի տեղակալ գնդապետ Գրիգոր Բլբուլյանը, հրետանային գնդի հրամանատար, փոխգնդապետ Մատվեյ Տինսկին, գումարտակի հրամանատարի տեղակալ, կապիտան Գրիգոր Զոհրաբյանը, վաշտի հրամանատար Սուրեն Եգանյանը: Զինվորների հետ էին քաղաքական կուսակցական աշխատողներ Նիկոլայ Մեժլումյանը, Գուրգեն Հարությունյանը, Ղևոնդ Դալլաքյանը, Նիկոլայ Ծահվերյանը, Արշավիր Հակոբյանը, Մնացական Միքայելյանը, Սուրեն Հովհաննիսյանը, Աշոտ Սուքիասյանը, Արտո Բաբայանը, Բագրատ Բաբայանը, գումարտակների շտաբի պետեր Լևոն Բաբայանն ու Մանվել Բաբլոյանը:

Քառասունհինգ թվականի փետրվարի 15-ի լույս 16-ի գիշերը դիվիզիայի 400-րդ և 526-րդ հրաձգային գնդերը և հրետանային ստորաբաժանումների մի մասը անցան Օդերի ձախ ափը և Ֆրանկֆուրտ քաղաքից հարավ գտնվող պլացդարմում փոխարինեցին այնտեղ դիրքեր գրաված 77-րդ դիվիզիայի զորամասերին:

Դիվիզիայի շտաբը, խմբագրությունը գետի աջ ափին էին, անտառում: Գեներալ Ն. Սաֆարյանը դիտակետ էր ընտրել գետափին գտնվող բարձունքը, որտեղից պարզ, ինչպես ափի մեջ, երևում էր ողջ ռազմադաշտը: Հաճախ, գնդակների տարափի տակ, նավակով նա անցնում էր Օդերը, հետաքրքրվում մարտիկների վիճակով, զրուցում նրանց հետ, քաջալերում...

Դիվիզիայի մարտական խնդիրն էր՝ պլացդարմում ստեղծել անխոցելի պաշտպանական ամրություններ, աներեր մնալ գրաված դիրքերում, թույլ չտալ թշնամուն առաջանալ դեպի պլացդարմը: Ամենքի համար արդեն պարզ էր.

տուն, հայրենի օջախ վերադառնալու ճամփան անցնում էր Բեռլինի վրայով: Այդ ոգով էին տոգորված և «Կարմիր զինվորի» հրապարակումները: Լրագրի 1945 թ. մարտի 21-ի համարի երկրորդ էջն ամբողջովին նվիրվեց զինվորական երդմանը: Տպագրված նյութերում դրվատվում էին Մ. Մարգարյանի, Պ. Դանիելյանի, Հ. Գրիգորյանի, Վ. Կոբիլինի, Ն. Մըկրտչյանի, Գ. Պետրոսյանի քաջագործությունները, նրանք անձնվիրաբար էին կատարում իրենց ուխտը հայրենիքի նկատմամբ: Էջը եզրափակվում է Մուրացանի դյուցազնավեպի հերոս Գևորգ Մարզպետունու երդման խոսքերով:

...Երդվում եմ, երդվում եմ իմ հայրենիքի արևով..., որ ես չեմ վերադառնալ այլևս իմ ընտանյաց գիրկը, չեմ մտնիլ իմ հարկի տակ, մինչև վերջին հագարացին չհալածեմ հայրենի սահմաններից:

Այդ օրերին էլ պլացդարմում հաճախ հրավիրվում էին դիվիզիայի կուսհանձնաժողովի նիստեր, ուր քննվում էին կուսակցության շարքերն ընդունվելու համար դիմողների գործերը, արժանավորներին ընդունում ՀամԿ(բ)Կ շարքերը: Դիվիզիայի կուսակցական հանձնաժողովի քարտուղարն էր Գ. Կարապետյանը, անդամները՝ Ա. Խառատյանը, Մ. Հակոբյանը, Ա. Բադալովը, Ս. Թանգյանը, Բ. Հարությունյանը, Հ. Գևորգյանը:

Թամանցիները, հաստատ մնալով իրենց դիրքերում, վաթսուն օր ու գիշեր եռ մղեցին հիտլերականների բոլոր գրոհները՝ ծանր կորուստներ պատճառելով նրանց: Հակառակորդի դեմ մղված համառ կռիվներում աչքի ընկան Սուրեն Սարգսյանի հետախույզները, Իսահակ Կարախանյանը, Իսրայել Ստեփանյանը, Գինեան Օպանյանը (երեքն էլ փառքի շքանշանի երեք աստիճանի ասպետներ), Սրապիոն Կարապետյանը, Ղևոնդ Ղազարյանը, Սիրական Նազարյանը, Գուրգեն Բադալյանը, Ներսես Հովհաննիսյանը, Գուրգեն Սարգսյանը, Դավիթ Հմայակյանը, Աբով Մարգարյանը և շատ ուրիշներ:

Համառորեն պաշտպանելով պլացդարմը, թամանցիները պատրաստվում էին հարձակման: Ապրիլի 16-ին Բելոռուսական ռազմաճակատի զորքերն անցան գրոհի: «Կարմիր զինվորի» ապրիլի 17-ի Առաջ տար հաղթանակի սուրդ առաջնորդողում ասված էր. «Հասել է Բեռլինի համար մղվող մարտերի վըճռական ժամը... Սովետական ռազմի՛կ, հիմա մեծ հաղթանակն սպասում է քեզ ամեն ժամ, ամեն րոպե... Խփի՛ր հիտլերյան գազանին, առաջ տար Բեռլինի վրա բարձրացրած հաղթական սուրդ: Կրկնակոխ հետապնդի՛ր ու ոչնչացրո՛ւ արյունախում հիտլերականներին և մասնակցիր Բեռլինի վրա հաղթանակի կարմիր դրոշը բարձրացնելու գրոհին»:



Այդ անհեղ գրոհի օրերին զոհվեցին Է. Մելքումյանը, Ա. Զաքարյանը, Ա. Հովհաննիսյանը (լրագրող), Պ. Ավալյանը, Ս. Մարգարյանն ու Հ. Աղաջանյանը:

Բելոռուսական առաջին ռազմաճակատի և Ուկրաինական առաջին ռազմաճակատի զորքերը ապրիլի 25-ին փակեցին Բեռլինից դեպի արևմուտք տանող բոլոր ճանապարհները: Երեք օր հետո 89-րդ Թամանյան դիվիզիան մարտեր էր մղում Բեռլինի փողոցներում: Թամանցիները հյուսիսից շարժվում էին դեպի հարավ, դեպի քաղաքի կենտրոնը:

Գեներալ Ն. Սաֆարյանն անընդհատ հետևվում էր փողոցային մարտերի ընթացքին, հըմտորեն ղեկավարում դրանք: Մարտական խընդիրներ վճռելիս նա խորհրդակցում էր քաղբաժնի պետ Ե. Դավիդովի, շտաբի պետ, գնդապետ Բելոուսովի, հրետանու պետ, գընդապետ Խ. Պայազատյանի, գնդապետ Մ. Սարգըսյանի հետ, շտաբի սպաներ Կ. Վարդապետովը, Հ. Ալանակյանը, Ա. Միքայելյանը, Ռ. Առուստամյանը, Դ. Ծավարշյանը ապահովում էին ստորաբաժանումների օպերատիվ գործողությունների հաջող ընթացքը: Փողոցային մարտերի դժվարին օպերացիաները հմտորեն էին պլանավորում գնդերի շտաբների պետեր, մայորներ Պ. Բոշնաղյանը, Ն. Օգանովը, Ա. Գրիգորյանը:

Բեռլինի փողոցային մարտերի օրերին «Կարմիր զինվորի» էջերում բազմաթիվ դըրվատական թղթակցություններ են տպագրվել մեր քաջարի մարտիկների սխրագործությունների մասին:

«ԿԱՐՄԻՐ ԶԻՆՎՈՐՈՒՄ» հրապարակվեցին Ավ. Իսահակյանի, Դ. Դեմիրճյանի, Մ. Սարյանի, Ն. Զարյանի, Ստ. Զորյանի, Գ. Սարյանի, Հ. Անառյանի ջերմ նամակները՝ ուղղված մեր հայրենիքի զինվորներին, որոնք այսօր էլ կարդացվում են մեծ հուզմունքով:

...Սովետական հսկա ժողովուրդը կանգնեցրեց գրահատանկային ճիվաղների ռազմաերթը — կարդում ենք այդ նամակներում,— վռնդեց նրանց մեր հայրենի հողից ու այժմ շարունակում է ոչնչացնել նրանց մնացորդները՝ իրենց որջում: Պատմության մեջ իր նմանը չունեցած այս դյուցազներգության մեջ դուք, հայոց քաջեր, անմահ դրվագներ գրեցիք ձեր ազնիվ արյունով... Մենք ցանկանում ենք խնդրել ձեզ, որ հայտնեք մեր երախտագիտության զգացմունքները կարմիր բանակի ձեր ռուս և այլ ժողովուրդների ծոցից ելած այն մարտական ընկերներին, որոնց անօրինակ սխրագործությունների շնորհիվ Հայաստան չհասավ ֆաշիստ ջարդարարների սկսած պատերազմը և սովետական տարիների ընթացքում վերաշինված մեր հայրենիքը չդարձավ իր զավակների արյամբ ողողված ավերակույտ, ինչպես միշտ եղել է անցյալ պատերազմների տարիներին... (տե՛ս նույն տեղը, 1945 թ., № 163):

Մայիսի 9-ին վաղ առավոտյան, Էլբայի ափին լույս տեսավ «Կարմիր զինվորի» հերթական համարը, որը հրապարակեց հիտլերյան Գերմանիայի անվերապահ կապիտուլյացման ակտը: Դիվիզիայի անձնակազմը նամակ-զեկուցագիր ուղարկեց հայ ժողովրդին, հայտնելով, որ զորամիավորումը պատվով է կատարել իր պարտքը հայրենիքի հանդեպ, թամանցիներից ինը ռազմիկներ՝ Հունան Ավետիսյանը. Սուրեն Առաքելյանը, Զահան Կարախանյանը, Սիմոն Բաղդասարյանը, Խորեն Խաչատրյանը, Հարություն Մկրտչյանը, Այդին Հարությունյանը, Վարդգես Ռոստամյանը, Հրանտ Բաբայանը արժանացել են Սովետական Միության հերոսի կոչման: Դիվիզիայի դրոշի վրա շողշողում է երեք շքանշան (տե՛ս նույն տեղը, 1945 թ., № 78):

Եռակի շքանշանակիր հայկական Թամանյան դիվիզիան փառքով պսակեց իր մարտական ուղին, որը հայրենասիրության, ռազմական հմտության ու քաջագործության ուսանելի օրինակ է ներկա ու գալիք սերունդների համար: Դիվիզիայի մարտական ուղին հավերժացվել է «Կարմիր զինվորի» չխամրող էջերում. էջեր, որ գրվել են հրի ու ծխի, գընդակների տարափի ու ահագնալի աղմուկի մեջ, ու տարիների հեռվից դեռ վառոդի հոտ ունեն դրանք, տարիների հեռվից, ասես, զգուշացնում, կոչ են անում. մարդի՛կ, պահպանե՛ք խաղաղությունը, թող իսպառ կորչի պատերազմը:

# ՄԱՅԻՍՅԱՆ ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ՀԵՐՈՍԱՄԱՐՏԸ

**Հ. Ռ. ՍԻՄՈՆՅԱՆ**
ՀԿԿ Կենտկոմի կուսակցության պատմության ինստիտուտի— ՍՄԿԿ Կենտկոմին առընթեր ՄԼԻ-ի հայկական ֆիլիալի դիրեկտոր, պատմական գիտությունների դոկտոր, պրոֆեսոր

Լ ՐԱՑԱՎ ՄԱՅԻՍՅԱՆ ՓԱՌԱՊԱՆԾ ապստամբության վաթսուն տարին:

Վեց տասնամյակ է անցել այն օրերից, երբ Հայաստանի աշխատավորները, կոմունիստական կուսակցության գլխավորությամբ, ապստամբության դրոշ բարձրացրին դաշնակցականների հակաժողովրդական տիրապետության դեմ՝ հանուն սովետական իշխանության հաղթանակի:

Մայիսյան զինված ապստամբության նպատակն էր երկրում հաստատել սովետական կարգեր, ժողովրդին փրկել ֆիզիկական բնաջնջման վտանգից, աշխատավորներին ազատել ներքին ու արտաքին կեղեքիչների ծանր լծից, հայ ժողովրդի համար ձեռք բերել ազատ զարգացման, ազգային վերածնունդի ու բարգավաճման լայն հնարավորություններ:

Մայիսյան հերոսական զինված ապստամբության հաղթանակի համար մղվող պայքարում Հայաստանի բանվորները, գյուղացիները և զինվորները նոր, անմոռաց էջեր գրեցին հայ ժողովրդի ազատագրական պայքարի պատմության մեջ:

Մայիսյան համաժողովրդական ապստամբությունը պատմական և քաղաքական մեծ նշանակություն ունեցող իրադարձություն էր հայ ժողովրդի կյանքում: Այն շատ կարևոր դրվագ էր նաև երկրամասում սոցիալիստական հեղափոխության հաղթանակի համար Անդրկովկասի աշխատավորների հեղափոխական շարժումների պատմության մեջ:

1920 թվականի Մայիսյան ապստամբության մարտերում Հայաստանի բանվորները և գյուղացիներն ստացան իրենց հեղափոխական մկրտությունը: Ճնշված ապստամբությունը պարտվեց, բայց Հայաստանի աշխատավորները հեղափոխական մեծ փորձ ձեռք բերեցին: Շատ չանցած՝ նույն տարվա նոյեմբերին նրանց հաջողվեց վերջնականապես տապալել դաշնակցականների հակաժողովրդական վարչակարգը և հաստատել սովետական իշխանություն:

## I

Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխությունը համաշխարհային պատմության շրջադարձի սկիզբ հանդիսացավ: «Կապիտալիզմի և նրա հետքերի ոչնչացումը,— նշել է Վ. Ի. Լենինը,— կոմունիստական հասարակարգի հիմքերի հաստատումը կազմում է համաշխարհային պատմության այժմ սկսված նոր դարաշրջանի բովանդակությունը» (Երկեր, հ. 31, էջ 491):

Սոցիալիստական հեղափոխության հաղթանակի, Սովետների համառուսական II համագումարի ընդունած դեկրետների, Լենինի ղեկավարած բանվորագյուղացիական կառավարության մյուս հեղափոխական ձեռնարկումների մասին լուրերն արագորեն տարածվեցին ամբողջ երկրով մեկ: Անդրկովկասի, այդ թվում Հայաստանի բանվորները, աշխատավոր գյուղացիները և կովկասյան ռազմաճակատի զինվորները ջերմորեն ողջունեցին Պետրոգրադի բանվորների, զինվորների և նավաստիների հաղթանակը, իրենց համերաշխությունը հայտնեցին Վ. Ի. Լենինի գլխավորած հեղափոխական կառավարությանը: Բոլշևիկների գլխավորությամբ նրանք պայքարի ելան երկրամասում սովետական կարգեր հաստատելու համար:

Երկրամասում պրոլետարական հեղափոխության հաղթանակը կանխելու նպատակով մենշևիկները և Անդրկովկասի հակահեղափոխական մյուս ուժերը, որոնք արտահայտում էին շահագործող դասակարգերի շահերը, միասնական ճակատ կազմեցին իմպերիալիստների և սպիտակգվարդիական գեներալների հետ: Ստեղծվեց Անդրկովկասյան կոմիսարիատը, որը ո՛չ միայն երկրամասի շահագործող դասակարգերի շահերի պաշտպանն էր, այլև օտարերկրյա իմպերիալիստների, ինչպես նաև Հյուսիսային Կովկասում արյունալի վարչակարգեր հաստատած ցարական գեներալների ու ատամանների հլու կամակատարը:

Սովետական Ռուսաստանի կառավարությունը, անձամբ Լենինը, հսկայական ջանքեր էին գործադրում Հոկտեմբերյան հեղափոխության գաղափարների հաղթանակի համար պայքարի ելած Անդրկովկասի աշխատավորներին օգնություն ցույց տալու նպատակով: 1917 թվականի դեկտեմբերի 16-ին ՌՍՖՍՀ Ժողկոմխորհը, քննարկելով Կովկասի դրության հարցը, որոշեց Ստեփան Շահումյանին նշանակել Կովկասի գործերի ժամանակավոր արտակարգ կոմիսար, մինչև երկրամասում սովետական կարգերի հաստատումը:

1918 թվականի հունվարի վերջին Ստ. Շահումյանը դիմեց Կովկասի աշխատավորներին՝ կոչ անելով երկրամասում ստեղծել սովետական իշխանություն. «Կովկասը կանգնած է անդունդի եզրին: Փրկեցե՛ք նրան: Ստեղծեցե՛ք այստեղ ինտերնացիոնալ բանվորագյուղացիական կառավարություն»: Ստ. Շահումյանն այն համոզմանն էր, որ սերտ միասնություն ստեղծելով Ռուսաստանի կառավարության հետ, Կովկասի սովետական իշխանությունը վերջ կդնի երկրամասի հակահեղափոխությանը, բանվորներին ու գյուղացիներին «կառաջնորդի դեպի լուսավոր ապագան, դեպի սոցիալիզմի թագավորությունը» (Ստեփան Շահումյան, ԵԼԺ, հ. 4, «Հայաստան» հրատ., 1978, էջ 101):

Անդրկովկասում սովետական իշխանության հաղթանակի համար մղված պայքարում հերոսական էջեր գրեց Բաքվի կոմունան:

Հեղափոխական մարտերում կոփված Բաքվի բազմազգ պրոլետարիատը երկրամասում առաջինն անցավ սովետական իշխանության կողմը և բոլշևիկների ղեկավարությամբ իշխանությունն իր ձեռքը վերցրեց:

Սակայն Անդրկովկասի հակահեղափոխական ուժերը, օտարերկրյա իմպերիալիստների հետ միասնական ճակատ կազմելով, արյան մեջ խեղդեցին Բաքվի հերոսական կոմունան: Բաքվի կոմունայի անկումը շատ թանկ նստեց երկրամասի աշխատավորներին:

Ջլատելով Անդրկովկասի աշխատավորների ուժերը, երկրամասի հակահեղափոխական կուսակցությունները դրանով իսկ նպաստավոր պայմաններ ստեղծեցին Անդրկովկասի նկատմամբ գերմանաթուրքական, իսկ այնուհետև՝ անգլիական նվաճողների զավթողական պլանների իրականացման համար:

## II

Հայաստանում դաշնակցականների տիրապետության կարճատև ժամանակաշրջանը հայ ժողովրդի պատմության մռայլ էջերից է: Արևելյան Հայաստանի աշխատավոր զանգվածները թերևս երբեք այնպիսի բացառիկ ծանր ժամանակներ չէին ապրել, ինչպես 1918—1920 թվականներին: Այդ տարիներին Հայաստանը սովի ու որբի երկիր էր: Մարդու գոյությունը դարձել էր անտեր, կյանքը՝ դժոխք: Երկրին պատել էր տագնապը: Սովն ու համաճարակը անխնա հնձում էին ժողովրդին: Ոչ մի գավառ, շրջան կամ քաղաք բացառություն չէր կազմում: Դրությունն առավել անտանելի էր դառնում ազգամիջյան կոտորածների հետևանքով:

Կոմունիստների քաղաքական ուսուցումը

# ՀԱՄՈԶՄՈՒՆՔ ԴԱՐՁԱԾ ԳԻՏԵԼԻՔՆԵՐ

**Խ. Մ. ԳԵՂԱՄՅԱՆ**
ՀԿԿ Աբովյանի շրջկոմի պրոպագանդայի և
ագիտացիայի բաժնի վարիչ

Կոմունիստների, անկուսակցական ակտիվիստների,
աշխատավորական լայն զանգվածների մարքս-լենին-
յան կրթության հարցերը մեր կուսակցության մշտական հոգատարության
առարկան են։ ՍՄԿԿ XXV համագումարի որոշումներում, Կենտրոնական կոմի-
տեի ընդունած մի շարք փաստաթղթերում առանձնահատուկ ուշադրություն է
նվիրվում հատկապես ուսուցման պրոցեսի կատարելագործման, դրա արդյու-
նավետության բարձրացման խնդիրներին։

Գաղափարախոսական աշխատանքի, այդ թվում և քաղաքական կրթու-
թյան բարելավման վերաբերյալ կուսակցության նոր պահանջները հստակորեն
ձևակերպվել են «Գաղափարախոսական, քաղաքական-դաստիարակչական աշ-
խատանքի հետագա բարելավման մասին» ՍՄԿԿ Կենտկոմի որոշման մեջ։
Այնտեղ ասված է. «Կուսակցության հեղափոխական տեսության, քաղաքակա-
նության իմացությունը սովետական մարդու մտածելակերպում պետք է վե-
րածվի կոմունիզմի համար խորթ գաղափարախոսության ամեն կարգի դըր-
սևորումների դեմ պայքարող կայուն մարտիկի համոզմունքի, նրա ակտիվ
կենսադիրքորոշման, դառնա գործողության ուղեցույց՝ զարգացած սոցիալիզ-
մի հրատապ պրոբլեմների լուծման համար»։

Իրենց գործունեության հիմքում դնելով կուսակցության կարևորագույն
ցուցումները, ՀԿԿ Աբովյանի շրջկոմը և սկզբնական կազմակերպությունները
ամենօրյա աշխատանք են ծավալում կոմունիստներին, աշխատավորական
լայն զանգվածներին մարքսիզմ-լենինիզմի ամենահաղթ գաղափարներով զի-
նելու, նրանց տնտեսագիտական գիտելիքները հարստացնելու և ընդլայնելու
նպատակով։ Դրա շնորհիվ հատկապես վերջին մի քանի տարիներին էականո-
րեն բարելավվել է քաղաքական ուսուցման և տնտեսագիտական կրթության
վիճակը, դրանք դարձել են կոլեկտիվների առջև ծառացած արտադրական խըն-
դիրների լուծման հուսալի կողմնացույց։

Ուշագրավ է, որ նկատելիորեն ընդլայնվել է ուսուցման ոլորտը։ Վերջին
հինգ տարիներին քաղդպրոցների, տեսական սեմինարների խմբակները, ինչ-
պես նաև ունկնդիրների թիվը ավելի քան քառապատկվել են։ Ներկայումս
շրջանի սկզբնական կուսկազմակերպություններում գործում են 202 տարրա-
կան, միջին և բարձրագույն տիպի քաղդպրոց, տնտեսագիտական կրթության
635 խմբակ, կոմունիստական աշխատանքի 196 դպրոց, 253 կոմերիտական
քաղխմբակ։ Ուսուցման բոլոր ձևերում ընդգրկված ունկնդիրների թիվը 28
հազարից անցնում է։ Հետզհետե ավելի մեծ հեղինակություն են վայելում ժո-
ղովրդական համալսարանները։ Շրջանում գործող 12 ժողովրդական համալսա-
րանների 65 տարբեր ֆակուլտետներում, 33 խմբերում ու բաժանմունքներում



ընդգրկված են 6500 կոլտնտեսականներ, բանվոր-ծառայողներ, մտավորակա-
նության ներկայացուցիչներ։

Ուսուցման տարբեր օղակներում ունկնդիրների թվի ավելացումը, ինչ
խոսք, դրական երևույթ է։ Սակայն նույնպես կարևոր է, թե ինչպես է կազմա-
կերպվում ուսուցումը, ապահովվում քաղաքական ուսուցման և տնտեսագի-
տական կրթության արդյունավետությունն ու ներգործունությունը։ Այդ իսկ
խնդիրների լուծման նպատակով քաղաքական ու կազմակերպական արդյու-
նավետ աշխատանք են ծավալում կուսշրջկոմն ու նրա համապատասխան բա-
ժինը, սկզբնական կուսկազմակերպությունները։

Քաղաքական ուսուցման և տնտեսագիտական կրթության հաջողությունը
հիմնականում պայմանավորված է պրոպագանդիստների տեսական և մեթոդա-
կան բարձր մակարդակով։ Պարապմունքը հետաքրքրական, աշխույժ ու ար-
դյունավետ դարձնողը գլխավորապես պրոպագանդիստն է։ Ահա թե ինչու կուս-
շրջկոմը և սկզբնական կուսկազմակերպությունները պրոպագանդիստների
ընտրությունը և դաստիարակությունը համարում են իրենց գլխավոր խնդիր-
ներից մեկը։ Այդ աշխատանքում ներգրավվում են գործը սիրող, գաղափարա-
պես կոփված ու քաղաքականապես բազմակողմանիորեն զարգացած և համա-
պատասխան կրթություն ունեցող, տարիների փորձով զինված մարդիկ։ Ներ-
կայումս շրջանի 1144 պրոպագանդիստներից 800-ն ունեն բարձրագույն, մյուս-
ները՝ թերի բարձրագույն և միջնակարգ կրթություն։ Լուրջ ուշադրություն ենք
նվիրում պրոպագանդիստական կադրերի ուսուցման ու որակավորման բարձ-
րացմանը։ Շրջկենտրոնում կազմակերպված է պրոպագանդիստների մշտական
գործող սեմինար, որն ամսական մեկ անգամ պարապմունք է ունենում։ Նրանց
համար կարդացվում են տեսական և մեթոդական զեկուցումներ, կուսակցու-
թյան և կառավարության կարևորագույն որոշումներին նվիրված դասախոսու-
թյուններ, կատարում փորձի փոխանակումներ։ Պրոպագանդիստների առջև
պարբերաբար հանդես են գալիս շրջանի ղեկավարները, հանրապետության
անվանի գիտնականներ, արվեստի ու գրականության գործիչներ։

Պրոպագանդիստները մասնակցում են նաև ՀԿԿ Կենտկոմի քաղլուսատանը
կազմակերպվող դասընթացներին։ Միայն վերջին երկու տարում այդ դասըն-
թացներում իրենց որակավորումն են բարձրացրել 287 պրոպագանդիստներ։

Պրոպագանդիստական կադրերին համակողմանի օգնում է կուսշրջկոմի
քաղլուսկաբինետը։ Այստեղ ստեղծվել և գործում են համապատասխան մե-
թոդական խորհուրդներ, կազմակերպվում է կոնսուլտանտների հերթապահու-
թյուն, ստեղծվել է «պրոպագանդիստի անկյուն», առանձնացվել համապա-
տասխան գրականություն։ Պրոպագանդիստները պարապմունքից առաջ լինում
են կաբինետում, զրույցների նյութերը հարստացնում անհրաժեշտ փաստե-
րով, տվյալներով, օրինակներով։

Մենք անչափ կարևորում ենք պրոպագանդիստների շահագրգռության
բարձրացումը։ Այդ նպատակով կիրառում ենք նրանց խրախուսելու զանազան
միջոցներ. լավագույնների լուսանկարները փակցնում ենք գաղափարախոսա-
կան աշխատանքի առաջավորների պատվո տախտակին, պարգևատրում ար-
ժեքավոր նվերներով, ընդհանրացնում ու տարածում ուսանելի փորձը։

Իհարկե, ինչպես պրոպագանդիստների ընտրությունն ու դաստիարակու-
թյունը, այնպես էլ կոմպլեկտավորումը կարևոր նախադրյալներ են կուսակ-
ցական և տնտեսագիտական կրթության բարելավման գործում։ Բայց գլխա-
վորն ու հիմնականը պարապմունքների արդյունավետությունն ու ուսուցման
պրոցեսի կատարելագործումն են։ Ահա թե ինչու մենք ձգտում ենք, որպեսզի
յուրաքանչյուր պարապմունք անցնի տեսական, գաղափարաքաղաքական բար-
ձըր մակարդակով, ունենա որոշակի նպատակ, ներգործի ունկնդիրների վրա,
ծառայի նրանց համոզմունքների ձևավորմանը։ Շրջանում ստեղծվել են պա-
րապմունքների անցկացման միասնական օրեր։ ՀԿԿ շրջկոմի պատասխանա-
տու և արտահաստիքային աշխատողները, կուսակցական, սովետական, կոմե-
րիտական ակտիվի ներկայացուցիչները, քաղլուսկաբինետի մեթոդական խոր-
հուրդների անդամները միասնական օրերին լինում են տեղերում, ունկնդրում
պարապմունքները, անհրաժեշտության դեպքում ամփոփում այն, նշում թե-

րությունները, դրվատում լավն ու օրինակելին։ Հետագայում պարապմունք-
ների արդյունքները հանգամանորեն վերլուծվում են շրջկոմի բաժնում կամ
քաղլուսկաբինետի մեթոդական խորհրդում, մշակվում են կոնկրետ հանձնա-
րարականներ՝ ուսուցման պրոցեսն ավելի կատարելագործելու նպատակով։
Բաժնում և մեթոդական խորհուրդներում հաճախակի լսվում են նաև պրոպա-
գանդիստների հաշվետվությունները։ Տարեկան առնվազն երկու անգամ քաղ-
ուսուցման հարցերը, ինչպես նաև պրոպագանդիստների հաշվետվությունները
քննարկվում են շրջկոմի բյուրոյի նիստերում և սկզբնական կուսկազմակեր-
պություններում։ Այդ ամենը էապես բարձրացնում է պրոպագանդիստների պա-
տասխանատվությունը, նպաստում կուսակցական ուսուցման և տնտեսագի-
տական կրթության բարելավմանը։

Շրջանի գաղափարաքաղաքական ողջ կյանքի և մասնավորապես կուսակ-
ցական ուսուցման ու տնտեսագիտական կրթության բովանդակության վրա
բարերար ազդեցություն ունեցան ընկեր Լ. Ի. Բրեժնևի՝ ՍՄԿԿ գաղափարական
աշխատանքի հրատապ հարցերը աշխատությունը, ինչպես նաև Վերածնունդ,
Փոքր երկիր և Խոպան հուշագրությունները, որոնց պարզաբանման, ուսում-
նասիրության ու պրոպագանդման նպատակով անցկացրել ենք լրացուցիչ պա-
րապմունքներ, իսկ «Հայբյուրեղապակի» գործարանում, Գառնիի սովխոզում,
ծխախոտի հայկական փորձակայանում, Աբովյան քաղաքի № 6 միջնակարգ
դպրոցում և այլուր՝ գիտատեսական, գիտագործնական կոնֆերանսներ, ռեֆե-
րատների բաց քննարկումներ։

Ուսուցման արդյունավետության բարձրացման նպատակին ուղղված մի-
ջոցառումների համակարգում ուշադրության արժանի են սոցիոլոգիական հե-
տազոտությունները, որոնք լայնորեն արմատավորվել են մեր աշխատանքի
պրակտիկայում։ Սոցիոլոգիական ուսումնասիրությունների արդյունքները,
ինչպես նաև հանրային արտադրության հետագա վերելքի շահերը մեզ թելա-
դրեցին հիմնովին բարելավել հատկապես մասսաների տնտեսագիտական կր-
թության գործը։ Այս առնչությամբ մեզ համար ուղեցույց են ՍՄԿԿ XXV հա-
մագումարի նյութերը և աշխատավորների տնտեսագիտական կրթության բա-
րելավման վերաբերյալ ՍՄԿԿ Կենտկոմի որոշումները։ Լուրջ եզրակացություն
արեցինք Հայաստանի կոմկուսի Կենտկոմի պլենումում (1979 թ.) արված քըն-
նադատական դիտողություններից։ Արդյունքը եղավ այն, որ նյութական ար-
տադրության ոլորտում աշխատող բանվոր-ծառայողների 80 տոկոսից ավելին
ընդգրկվեց տնտեսագիտական կրթության ցանցում։ Այստեղ սովորում են շի-
նարարներն ու մասնագետները, արտադրամասերի ու տեղամասերի պետերը,
ինժեներատեխնիկական աշխատողները, բանվորներն ու կոլտնտեսականները,
դաշտավարներն ու մեխանիզատորները, պտղաբույծներն ու անասնապահ-
ները։

Աշխատավորները մեծ հետաքրքրությամբ ուսումնասիրում են «Տնտեսա-
կան գիտելիքների հիմունքները», «Կուսակցության տնտեսական քաղաքակա-
նության պրոբլեմները» և մյուս դասընթացները։ Տնտեսական մեխանիզմի
կատարելագործման և պլանավորման բարելավման մասին ՍՄԿԿ Կենտկոմի և
ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի որոշումների հիման վրա նախատեսվել են նաև
նոր դասընթացներ։

Ելնելով ժամանակի պահանջներից, շրջկոմը հոգում է ո՛չ միայն քանա-
կական, այլև գլխավորապես որակական ցուցանիշների մասին։ Շրջկոմի որոշ-
մանը համապատասխան սկզբնական կուսկազմակերպությունները հետևողա-
կանորեն զբաղվում են տնտեսագիտական ուսուցման բարելավմամբ։ Պարբե-
րաբար ուսումնասիրում և ընդհանրացնում ենք տնտեսագիտական ուսուցման
կազմակերպման այս կամ այն ձեռնարկության կամ հիմնարկության փորձը։
Միայն վերջին երկու տարում շրջկոմը հինգ անգամ անդրադարձել է այդ հար-
ցին։ Խորությամբ ուսումնասիրել ենք աշխատավորների տնտեսագիտական
կրթության կազմակերպման «Հայբյուրեղապակի» գործարանի կուսկազմա-
կերպության փորձը, քննարկել տնտեսագիտական ուսուցման վերահսկողու-
թյան ասպարեզում «Աբովյանշին» տրեստի քաղլուսկաբինետի ծավալած աշ-
խատանքի հարցը։



Քաղաքական ու տնտեսագիտական կրթության արդյունավետության մա-
սին կոնկրետ պատկերացում կարող են տալ տնտեսական ցուցանիշները։
Հարցն այնպես է դրվում, որ մարքս-լենինյան գիտությունը խորապես յուրացնի
յուրաքանչյուր ունկնդիր, այն նրա համար դառնա համոզմունք, հուսալի
կողմնացույց՝ տնտեսական խնդիրների լուծման ասպարեզում։ Շրջանը երկու
անգամ անընդմեջ (1978 և 1979 թթ.) արժանացել է Հայաստանի կոմկուսի
Կենտկոմի, Հայկական ՍՍՀ Մինիստրների խորհրդի, ՀԱՄԽ-ի և ՀԼԿԵՄ Կենտ-
կոմի փոխանցիկ կարմիր դրոշին։ Միութենական և հանրապետական բազմա-
թիվ փոխանցիկ դրոշներ և հուշադրոշներ են նվաճել շրջանի արդյունաբերա-
կան ձեռնարկությունների, կոլեկտիվ ու պետական տնտեսությունների կոլեկ-
տիվները։ Հաջողությունները, ինչ խոսք, մեծապես պայմանավորված են նաև
գաղափարաքաղաքական աշխատանքի և մասնավորապես կուսակցական
ուսուցման ու տնտեսագիտական կրթության որոշակի բարելավմամբ։

Կոմունիստների, անկուսակցական ակտիվիստների քաղաքական ուսուց-
ման և տնտեսագիտական կրթության գործն ամուր հիմքերի վրա է դրված
հատկապես «Հայբյուրեղապակի», հացի գործարաններում, Կոտայքի ու Ակուն-
քի կոլտնտեսություններում, Գառնիի, Կապուտանի սովխոզներում, Աբովյան
քաղաքի №№ 6, 7 միջնակարգ դպրոցներում և այլուր։ Պրոպագանդիստներ Ջ.
Մարկոսյանը, Հ. Կարախանյանը, Վ. Խոցանյանը, Կ. Ավետիսյանը, Ա. Նալ-
բանդյանը և շատ ուրիշներ պարապմունքները վարում են աշխույժ զրույցի
մեթոդով։ Ունկնդիրների ակտիվ մասնակցությամբ նրանք հանգամանորեն
պարզաբանում են ծրագրով նախատեսված թեմաները, դրանք հիմնավորում
տվյալ ձեռնարկությունից ու կազմակերպությունից վերցված կոնկրետ փաս-
տերով և օրինակներով, տեսական հարցերը սերտորեն շաղկապում կոլեկտիվ-
ների պրակտիկ խնդիրների հետ։ Հաճախ պարապմունքը վերածվում է տվյալ
ձեռնարկության տնտեսական գործունեության վերլուծության, լուրջ խոսակ-
ցություն է ծավալվում արտադրության առանձին տեղամասերում եղած թերու-
թյունների ու թերացումների շուրջ, ունկնդիրները կոնկրետ առաջարկություն-
ներ են անում դրանց վերացման վերաբերյալ։ Քիչ չեն դեպքերը, երբ պարապ-
մունքների ժամանակ արծարծված առանձին արմատական հարցեր դառնում
են ձեռնարկության կուսկոմիտեի, ղեկավարության քննարկման առարկա։
Նման դեպքերում կոլեկտիվին հուզող հարցը, առանց հապաղելու, լուծվում է,
նպաստում աշխատանքի ճիշտ կազմակերպմանը, թերությունների վերացմա-
նը, արտադրության առաջընթացին։

Պատահական չէ, որ հիշատակված ձեռնարկությունները տարիներ շարու-
նակ ընթանում են սոցիալիստական մրցության առջևից, ապահովում բոլոր
տեղամասերի առաջընթացը, կատարում ու գերակատարում պետական պլա-
նային առաջադրանքները։

Տնտեսագիտական կրթությունն աշխատավորներին, ղեկավարներին սովո-
րեցնում է հաշվենկատություն՝ արտադրության գործերը վարելիս, նրանց հա-
մակում ավելի քիչ նյութական ու աշխատանքային ծախսումներով ավելի շատ
արտադրանք թողարկելու ձգտումով։ Բնորոշ է Ակունքի կոլտնտեսության փոր-
ձը։ Այստեղ կադրերի, գյուղատնտեսության աշխատողների տնտեսագիտական
ուսուցման գործը ղեկավարում է կոլտնտեսության վարչության նախագահ,
մասնագիտությամբ գյուղատնտես Պարսամ Հարությունյանը։ Մի ժամանակ
տնտեսությունում ցածր էր արտադրության վարման կուլտուրան. սակավ բերք
էր ստացվում պտղատու այգիներից, նվազ եկամտաբեր էին ծխախոտագոր-
ծությունը, անասնապահությունը։ Թույլ էր քաղաքական-մասսայական աշ-
խատանքը, որի համար ՀԿԿ շրջկոմը տնտեսության ղեկավարներից ոմանց
ազատեց զբաղեցրած պաշտոններից։ Այդ ամենը լրջորեն անհանգստացրեց
կոլտնտեսության վարչությանը, մասնագետներին, սկզբնական կուսկազմա-
կերպությանը։ Տնտեսագիտական դպրոցի ունկնդիրների առաջարկով ու ցան-
կությամբ կոլեկտիվ քննարկման դրվեցին տնտեսության տեական եւ մնալը
հաղթահարելու հարցերը։

Պրոպագանդիստն անհանգստացած էր գործերի վիճակի համար։ Նա որո-
նեց պրոբլեմի լուծման հնարավոր ուղիներ, խորհրդակցեց մասնագետների

հետ, ծանոթացավ առաջավոր տնտեսությունների փորձին ու աշխատանքի մեթոդներին: Ստացվեցին հարուստ նյութեր, արվեցին տնտեսագիտական լուրջ հաշվարկներ ու խոր վերլուծություններ, որոնք ռեֆերատների հետ միասին նորից արծարծվեցին տնտեսագիտական դպրոցի պարապմունքում: Ապա այդ ամենը հանգամանորեն քննարկվեց սկզբնական կուսկազմակերպության ժողովում, մշակվեց միջոցառումների կոնկրետ ու հստակ պլան: Արտադրական խնդիրների լուծումը դարձավ ողջ գաղափարադաստիարակչական աշխատանքի նպատակը: Այդ պլանին համապատասխան ապահովվեց պտղատու այգիների լիարժեքությունը, սնուցման ու մշակության բարելավմամբ վերացվեց բերքատվության պարբերականությունը: Ծխախոտի հայկական փորձակայանի գիտնականների օգնությամբ կարգավորվեցին այդ ճյուղի գործերը. ներդրվեցին առավել բերքատու սորտեր, ճշտորեն կիրառվեց մշակության ագրոկոմպլեքսը: Գործնական աշխատանք ծավալվեց անասնապահության առաջընթացի ապահովման համար. բարելավվեց անասունների ցեղը, ամրապնդվեց կերի բազան, բարձրացվեց անասնապահների ու մասնագետների պատասխանատվությունը հանրային հոտի խնամքի ու կերակրման, զոոանասնաբուժական պահանջների կատարման նկատմամբ:

Այդ ամենը լավ արդյունք տվեց: Տնտեսությունն սկսեց առաջադիմել: Նախկին 15—20 ցենտների փոխարեն պտղատու այգիների հեկտարի միջին բերքատվությունը կազմեց 60—70 ցենտներ: Բարձր եկամտաբեր ճյուղ դարձավ ծխախոտագործությունը: Հեկտարից միջին հաշվով ստացվեց 35—37 ցենտներ բարձրորակ հումք: Ավելացավ մսի, կաթի, բրդի և անասնապահական մյուս մթերքների արտադրությունը, կովերի միջին կաթնատվությունն անցավ 3000 կիլոգրամից: Բարձր արդյունքներ ձեռք բերելու, պլանային առաջադրանքներն ու ստանձնած սոցիալիստական պարտավորությունները կատարելու և գերակատարելու համար 1978 թվականին տնտեսության կոլեկտիվն արժանացավ ՍՄԿԿ Կենտկոմի, ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի, ՀԱՄԿԽ-ի և ՀամԼԿԵՄ Կենտկոմի փոխանցիկ կարմիր դրոշին: Անցյալ տարվա վերջերին միլիոնատեր կոլտնտեսության մարդիկ զեկուցեցին տասներորդ հնգամյակը հիմնական ցուցանիշներով ժամկետից մեկ տարի շուտ կատարելու մասին:

Նման օրինակներ կարելի է բերել Կապուտանի, Ջոլքի, Գառնիի սովխոզներից, «Հայբյուրեղապակի», քարերի մշակման գործարաններից, շինարարական և տրանսպորտային մի շարք կազմակերպություններից:

Եվ, ընդհակառակը, այն ձեռնարկություններում, տնտեսություններում և կազմակերպություններում, ուր ցածր մակարդակի վրա է գաղափարադաստիարակչական աշխատանքը, անհրաժեշտ ուշադրություն չի դարձվում քաղաքական ուսուցմանն ու տնտեսագիտական կրթությանը, սիստեմատիկորեն ձախողվում է պլանային առաջադրանքների ու ստանձնած սոցիալիստական պարտավորությունների կատարումը, պատշաճ բարձրության վրա չի գտնվում արտադրության վարումը: Աբովյանի գարեջրի, Արզնու հանքային ջրերի գործարաններում, ավտոտեխսպասարկման կայանում լուրջ ուշադրություն չէր նվիրվում մասսաների շրջանում տարվող բանավոր քաղաքական ագիտացիային, քիչ էին կազմակերպվում դասախոսություններ, զրույց-զեկուցումներ, պրոպագանդիստների մեղքով կամ ունկնդիրների բացակայության պատճառով ձախողվում կամ գաղափարական ցածր մակարդակով էին անցնում քաղաքական ուսուցման և տնտեսագիտական կրթության դպրոցների ու խմբակների պարապմունքները: Եվ բոլորովին էլ պատահական չպետք է համարել, որ այդ ձեռնարկություններում թերակատարվում էին պլանային առաջադրանքներն ու ստանձնած սոցիալիստական պարտավորությունները, թույլ էր պետական ու աշխատանքային կարգապահությունը: Նրանց գործունեությունը վերցվեց հսկողության տակ, պրոպագանդիստներ, ագիտկոլեկտիվների ղեկավարներ հաստատվեցին տնտեսությունների ղեկավարներն ու սկզբնական կուսկազմակերպությունների քարտուղարները: Մի շարք կոնկրետ միջոցառումների իրականացմամբ տեղերում վիճակն անհամեմատ բարելավվել է:

Քաղաքական ուսուցման և տնտեսագիտական կրթության, բանավոր ագիտացիայի կազմակերպման, դասախոսական պրոպագանդայի գործում կան նաև



այլ կարգի թերություններ: «Արարատ» տրեստի ավտոձեռնարկությունում, № 396 շինմոնտաժային գնացքում և այլուր, առաջին հայացքից թվում է, թե ամեն ինչ բարեհաջող է, քաղխմբակների ու դպրոցների պարապմունքներն անցկացվում են ժամանակին, ծրագրային թեմաները պարզաբանվում են խորությամբ: Մինչդեռ ուսումնասիրություններից պարզվում է, որ նշված տեղերում ուսուցումը տարվում է կոլեկտիվների առջև ծառացած խնդիրներից կտրված, ծրագրային թեմաները չեն շաղկապվում ունկնդիրների կոնկրետ անելիքների հետ: Սրանով է բացատրվում ունկնդիրների պասիվությունը, նրանց նվազ հետաքրքրասիրությունը պարապմունքների նկատմամբ: Նմանօրինակ ուսուցումը չի կարող արդյունավետ ու նպատակային լինել, էական ազդեցություն ունենալ տնտեսությունների գործերի բարելավման վրա:

Կուսշրջկոմը, իհարկե, հոգ է տանում, որպեսզի ինչպես պրոպագանդիստները, այնպես էլ ունկնդիրներն ապահովվեն անհրաժեշտ գրականությամբ, ուսումնական ձեռնարկներով, ծրագրերով: Սակայն ուսուցումը տեխնիկական միջոցներով ապահովելու գործում կան լուրջ դժվարություններ: Կուսշրջկոմի քաղլուսկաբինետում կան բավարար քանակությամբ պրոպագանդայի տեխնիկական միջոցներ: Զանազան դիաֆիլմերն ու ձայնագրված ժապավենները, քարտեզները, սխեմաները հնարավորության սահմաններում տրամադրվում են շրջկենտրոնից ոչ հեռու գտնվող կազմակերպություններին: Մինչդեռ հեռավոր գյուղերի պրոպագանդիստները զրկված են նման հնարավորությունից: Պրոպագանդայի տեխնիկական միջոցները դեռևս անբավարար են օգտագործվում նաև դասախոսությունների, զրույց-զեկուցումների ժամանակ: Այս հանգամանքը, անշուշտ, ազդում է քաղաքական ուսուցման, գաղափարադաստիարակչական մյուս աշխատանքների ու միջոցառումների արդյունավետության վրա: Պակասը ինչ-որ չափով կարելի է լրացնել փաստավավերագրական կինոնկարների ցուցադրման, կինոլեկտորիումների կազմակերպման միջոցով: Սակայն կազմակերպություններում այդ հնարավորությունները առայժմ լրիվ չափով չեն օգտագործվում:

Հիշատակված թերությունները, որքան էլ դրանք փոքր ու առաջին հայացքից աննշան լինեն, որոշակի բացասական ազդեցություն են ունենում կուսակցական ուսուցման ու տնտեսագիտական կրթության և ընդհանրապես գաղափարաքաղաքական աշխատանքի արդյունավետության վրա: Մասսաների հետ տարվող աշխատանքում մանրուքներ չկան: ՀԿԿ շրջկոմը, նրա պրոպագանդայի և ագիտացիայի բաժինը, սկզբնական կուսկազմակերպությունները մշակել և իրականացնում են կոնկրետ միջոցառումներ՝ նշված և մի շարք այլ թերություններ վերացնելու, կոմունիստների և անկուսակցական ակտիվիստների քաղաքական և տնտեսագիտական կրթության գործը արմատապես բարելավելու, այն շրջանի էկոնոմիկայի հետագա վերելքի ու առաջընթացի նպատակին ծառայեցնելու համար:

# ՊԱՐՏՔԻ ԽՈՐ ԳԻՏԱԿՑՈՒԹՅԱՄԲ

Կ. Խ. ՍԱՐԳՍՅԱՆ

Արդի պայմաններում քաղաքական ուսուցման կարևորությունը մեկ անգամ ևս շեշտվեց «Գաղափարախոսական, քաղաքական-դաստիարակչական աշխատանքի հետագա բարելավման մասին» ՍՄԿԿ Կենտկոմի հայտնի որոշման մեջ, որով այժմ ղեկավարվում են կուսակցական կազմակերպությունները:

Քաղաքական ուսուցումը նոր խնդիրների մակարդակին բարձրացնելու, այդ գործում դեռևս նկատվող ձևականությունն ու մակերեսայնությունը հաղթահարելու նշանաբանով ընթացավ շրջանում 1979—80 ուսումնական տարվա նախապատրաստությունը: Եվ գաղտնիք չէ, որ ուսումնական տարվա բազմակողմանի նախապատրաստմամբ են մեծ չափով պայմանավորված նրա կանոնավոր ընթացքը, գաղափարական խոր բովանդակությունը, վերջին հաշվով՝ քաղաքական ուսուցման բարձր արդյունավետությունը, նպատակայնությունը և հաջողությունը: Նոր ուսումնական տարում քաղաքական ուսուցման և ընդհանրապես գաղափարադաստիարակչական աշխատանքի խնդիրների շուրջ գործնական լուրջ խոսակցություն ծավալվեց պրոպագանդիստների շրջանային ժողովում, որն անցկացվեց «Կուսակցական ուսուցման և տնտեսագիտական կրթության 1978—79 ուսումնական տարվա արդյունքները և կուսակցական կազմակերպությունների ու գաղափարական աշխատողների խնդիրները նոր ուսումնական տարում՝ ՍՄԿԿ Կենտկոմի «Գաղափարախոսական, քաղաքական-դաստիարակչական աշխատանքի հետագա բարելավման մասին» որոշման լույսի ներքո» օրակարգով:

Քաղաքական ուսուցման գործը կազմակերպելիս կուսշրջկոմը և սկզբնական կուսկազմակերպությունները ղեավարվում են ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար, ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության նախագահ ընկեր Լ. Ի. Բրեժնևի ցուցումով. «Կուսակցությունը շատ կարևոր է համարում, որ կոմունիստները հաստատակամորեն տիրապետեն մարքսիզմ-լենինիզմի տեսությանը, հասարակական զարգացման օրենքների իմացությանը, կարողանան վստահորեն կողմնորոշվել կյանքի նոր երևույթների մեջ, ճիշտ գնահատական տան դրանց և գործնական ճիշտ հետևություններ անեն»: (Լենինյան կուրսով, հ. 3, էջ 421): Այդ ցուցումից ճիշտ եզրակացության հանգելու պերճախոս վկայությունը քաղխմբակների և դրանց ունկնդիրների անընդհատ աճն է: Եթե 1977—78 ուստարում շրջանում գործում էին մարքսիզմ-լենինիզմի հիմունքների 164 դպրոց՝ 3.510 կոմունիստ-ունկնդիրներով, ապա ընթացիկ ուստարում դպրոցների քանակը հասել է 201-ի, իսկ ունկնդիրների թիվը՝ 4.116 մարդու: Տեսական սեմինարների քանակը նույն ժամանակաշրջանում ավելացել է 9-ով: Զգալիորեն աճել է նաև կոմերիտական ուսուցման խմբակների ու դրանցում ընդգրկված ունկընդիրների թիվը:

Վերջին երկու տարում զգալիորեն ավելի շատ աշխատավորներ են ներգրավվել նաև տնտեսագիտական կրթության ցանցում: Դա տնտեսական գիտելիքների նկատմամբ նրանց հարաճուն հետաքրքրության արդյունք է: Այսպես, 1977—78 ուսումնական տարում շրջանի ձեռնարկություններում կոմպլեկտավորվել էր տնտեսագիտական 259 դպրոց, որոնցում ընդգրկվել էր 7.495 մարդ, իսկ այժմ տնտեսագիտական գիտելիքներ են ստանում ավելի քան 21 հազար աշխատավորներ՝ 760 դպրոցներում: Հետաքրքրական է նաև կոմունիստական աշխատանքի դպրոցների աճի դինամիկան: Նորից դիմենք թվերին. 1977—78 ուստարում գործում էր 147 դպրոց՝ 4.708 ունկնդրով, մինչդեռ 1978—79 ուստարում դրանց թիվը կրկնապատկվել է, իսկ ընթացիկ ուստարում՝ համապատասխանաբար կազմել՝ 422 դպրոց և 12.272 ունկնդիր:

Նկատելիորեն ընդլայնվել է քաղուսացանցում ուսումնասիրվող թեմաների շրջանակը: Նախորդ ուսումնական տարիների 7—8-ական պրոբլեմի փոխարեն, տեսական սեմինարների ունկնդիրներն այժմ ուսումնասիրում են 23 պրոբլեմ: Դա մեծ մասամբ բացատրվում է նրանով, որ Վ. Ի. Լենինի ծննդյան 110-րդ տարեդարձի առթիվ ավելի մեծ թվով կոմունիստներ են ցանկություն հայտնել ուսումնասիրելու առաջնորդի տեսական հարուստ ժառանգությունը, ՍՄԿԿ-ի գործունեության հետ առընչվող զանազան պրոբլեմներ, կոմունիստական շինարարության հրատապ հարցեր:

Արդյունաբերական ձեռնարկություններում, շինարարական ու տրանսպորտային կազմակերպություններում գործող 73 տեսական սեմինարների ունկնդիրները մեծ հետաքրքրությամբ ուսումնասիրում են ՍՄԿԿ տնտեսական քաղաքականության պրոբլեմները, դրանք առընչում կոլեկտիվների առջև ծառացած կոնկրետ խնդիրների հետ: Ուղեցույց ունենալով «Տնտեսական մեխանիզմի հետագա կատարելագործման և կուսակցական ու պետական մարմինների խնդիրների մասին» ՍՄԿԿ Կենտկոմի, «Պլանավորումը բարելավելու և արտադրության արդյունավետության ու աշխատանքի որակի բարձրացման վրա տնտեսական մեխանիզմի ներգործությունն ուժեղացնելու մասին» ՍՄԿԿ Կենտկոմի և ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի որոշումները, ժողովրդական տնտեսության ղեկավար և ինժեներատեխնիկական աշխատողները, որոնք պրոպագանդիստներ կամ սեմինարների ունկնդիրներ են, իրենց ձեռնարկությունների կոլեկտիվների ջանքերն ուղղում են արտադրության ներքին ռեզերվների ու հնարավորությունների գործադրմանը, անարտադրողական ծախսերի կրճատմանը, խնայողության խստագույն ռեժիմի կիրառմանը, մարդկային ու նյութական նվազագույն միջոցներով առավելագույն արդյունքների ձեռքբերմանը: Շրջանի գյուղատնտեսական հիմնարկությունների ու տնտեսությունների տեսական սեմինարների ունկնդիրները, ՍՄԿԿ Կենտկոմի 1978 թ. հուլիսյան պլենումի որոշումների լույսի ներքո, ուսումնասիրում են ՍՄԿԿ ագրարային տեսության ու քաղաքականության հարցերը: Ուսումնական հաստատությունների և կուլտուրլուսավորական հիմնարկությունների կուսկազմակերպություններին կից գործող տեսական սեմինարների ավելի քան 1.200 ունկնդիրների ուսումնասիրության նյութը ընկեր Լ. Ի. Բրեժնևի ՍՄԿԿ գաղափարախոսական աշխատանքի ակտուալ հարցերը աշխատությունն է:

Հանրահայտ է, որ քաղաքական ուսուցման գլխավոր դեմքը պրոպագանդիստն է: Ճշմարտություն է նաև այն, որ ունկնդիրները քաղուսուցման նկատմամբ մեծ հետաքրքրություն են ցուցաբերում և սիրով հաճախում պարապմունքներին այն դեպքում, երբ ուսումնասիրվող թեմաներն ու հարցերը պրոպագանդիստը մատուցում է խորությամբ, պարզ ու մատչելի լեզվով, դրանք շաղկապում կոլեկտիվի առջև ծառացած կոնկրետ խնդիրների հետ:

Պրոպագանդիստական աշխատանքի ուսանելի փորձ ունի Վ. Ի. Լենինի անվան մետաքսի կոմբինատի գործվածքային № 2 արտադրության մարքսիզմ-լենինիզմի հիմունքների դպրոցի պրոպագանդիստ Խաչիկ Ռաֆայելյանը: Իր գլխավոր խնդիրը նա տեսնում է այն բանում, որ ունկնդիրներին տոգորի կոմունիստական գաղափարներով, պատշաճ ձևով բացատրի նրանց հնգամյակի առաջադրանքների կատարման նշանակությունը, պարզաբանի սովետական ապրելակերպի սկզբունքները: Պրոպագանդիստը ջանում է, որպեսզի ունկնդիրների ստացած տեսական ու քաղաքական գիտելիքները դառնան համոզմունք, ամենօրյա գործունեության նորմ և նպաստեն նրանց ստեղծագործական կարողությունների ըստ ամենայնի բացահայտմանը:

Խ. Ռաֆայելյանի ղեկավարած դպրոցի ունկընդիրների կազմը տարիների ընթացքում քիչ է փոխվում: Այժմ դպրոցում ընդգրկված է տարբեր տարիքի ու մասնագիտության 18 ունկնդիր: Նրանք ջուլհակներ, հենողներ, ենթավարպետներ, մեխանիկներ են, որոնք աչքի են ընկնում ո՛չ միայն իրենց աշխատանքային հարուստ փորձով, այլև մասնագիտական հմտությամբ ու հասարակական-քաղաքական ակտիվությամբ: Պրոպագանդիստը մշտապես հետևում է, թե ունկնդիրներն ինչպես են յուրացնում մատուցվող նյութը, ինչպես են շաղկապում այն գործնական ու հասարակական խնդիրների հետ:

Դպրոցն ընթացիկ ուսումնական տարում ուսումնասիրում է «Զարգացած սոցիալիզմի սահմանադրությունը» դասընթացը: «ՍՍՀՄ-ը սոցիալիստական, համաժողովրդական պետություն է», «ՍՍՀՄ-ում աշխատանքի կարգավորման սահմանադրական հիմունքները», «Սոցիալիստական էկոնոմիկայի կառավարման հիմունքները» և այլ թեմաներ ուսումնասիրելիս պրոպագանդիստը հանգամանորեն կանգ է առնում նաև ձեռնարկության արտադրության կազմակերպման ու կառավարման, թողարկվող արտադրանքի որակի բարելավման, աշխատանքի արտադրողականության բարձրացման և մյուս կարևոր հարցերի վրա: Այսպես, անդրադառնալով ՍՍՀՄ-ի էկոնոմիկան միասնական ժողովրդատնտեսական կոմպլեքս է հարցին, Խ. Ռաֆայելյանը ունկնդիրներին ցույց տվեց, որ ՍՍՀՄ բոլոր հանրապետու-

թյունների էկոնոմիկայի բուռն զարգացման վճռական գործոնը նրանց տնտեսական բազմակողմանի, սերտ համագործակցությունն ու եղբայրական օգնությունն են: Այս հանգամանքը վերլուծվեց հենց մետաքսի կոմբինատի օրինակով:

— Մեր կոմբինատը,— ասաց նա,— տարեկան թողարկում է ավելի քան 21 միլիոն մետր գործվածք, որն առաքվում է երկրի տարբեր շրջաններ: Այդ առաջադրանքը մետաքսագործները չէին կարող կատարել, եթե չլիներ եղբայրական հանրապետությունների օգնությունը: Մեր ձեռնարկության համաչափ աշխատանքն ապահովելու համար մոգիլյովցիներն ուղարկում են լավսանի փայլուն թելեր, օրենբուրգցիները՝ շտապել, մոսկվացիները՝ բամբակի մանվածք, ուժգորոդցիները՝ կապրոն, Ուզբեկստանի շերամապահները՝ բոժոժի հումք:

Պրոպագանդիստն իր խոսքը եզրափակեց հետևյալ մտքով. «Եթե չլիներ սովետական եղբայրական հանրապետությունների համագործակցությունը, երբեք հնարավոր չէր լինի իրականացնել այնպիսի խոշոր կառույցների շինարարությունը, ինչպիսիք են Արփա-Սևան ջրատարն ու Հայաստանի ատոմային էլեկտրակայանը»: Ունկնդիր Պայծառ Ազատյանը լրացնում է. «Երևանյան մետաքսի նախշազարդման համար ներկեր ու քիմիկատներ են տրամադրում Մոսկվայի ու Վորոշիլովգրադի քիմիական ձեռնարկությունները»:

Յուրաքանչյուր պարապմունքի վերջում Խ. Ռաֆայելյանը կոնկրետ հանձնարարականներ է տալիս ունկնդիրներին: Նրանցից շատերը հաճույքով գրում են ռեֆերատներ, որոնք այնուհետև քննարկվում են պարապմունքների ժամանակ: Ուսումնասիրվող նյութն ավելի համոզիչ դարձնելու նպատակով պրոպագանդիստն օգտագործում է իր կազմած դիագրամները, սխեմաները և դիտողական այլ նյութեր:

Հաշվի առնելով պրոպագանդիստ Խ. Ռաֆայելյանի ուսանելի փորձը, կոմբինատի կուսկոմիտեն և քաղաքական լուսավորության կաբինետը մասսայականացրել են այն, այդ նպատակով կազմակերպել բաց դասալսումներ, քննարկումներ ու սեմինար պարապմունքներ:

Արձագանքելով «Պրոպագանդիստը հնգամյակին» նախաձեռնությանը՝ Խ. Ռաֆայելյանն օգնում է դպրոցի ունկնդիրներին՝ ճիշտ հաշվի առնելու իրենց հնարավորությունները սոցիալիստական պարտավորություններ ստանձնելու գործում: Չէ՛ որ նա կոմբինատում աշխատում է քառորդ դարից ավելի. սկզբում եղել է ավագ տնտեսագետ, իսկ վերջին 17 տարում՝ մեքենահաշվողական կայանի պետ: Եվ պատահական չէ, որ ունկնդիրներ Գուրգեն Զաքարյանը, Կնյազ Ղահրամանյանը և Ելենա Դավթյանը ավարտել են իրենց անձնական հնգամյակը և արտադրանք են թողարկում 1981 թվականի հաշվին: Առաջադրանքները սիստեմատիկաբար գերակատարում են նաև Անդրանիկ Ասլանյանը, Արուսյակ Քոսակյանը, Շուշանիկ Մանուկյանը և ուրիշներ: Նրանց ընդհանուր ջանքերով աճում է առաջին տեսակի արտադրանքի ծավալը:

Գաղափարական աշխատանքի պրակտիկան, քաղաքական ուսուցման պարապմունքների հաճախակի ունկնդրումները համոզում են, որ միայն տեսական հարուստ գիտելիքները բավական չեն պրոպագանդիստական աշխատանքի հաջողությունն ապահովելու համար: Պրոպագանդիստը պետք է տիրապետի մարդկանց հետ աշխատելու վարպետությանը, հանդես բերի մանկավարժական տակտ, լավ իմանա ունկնդիրների նախասիրությունները, նրանց բնավորության հատկանիշները, առավելություններն ու թերությունները. չէ՞ որ դաստիարակության բարդ ու դժվարին պրոցեսում մանրուքներ չկան: Պրոպագանդիստը դաստիարակչական անհրաժեշտ արդյունքի կհասնի միայն այն դեպքում, երբ գիտե յուրաքանչյուր ունկնդրի վրա ազդելու եղանակը, օգնի նրան՝ պարապմունքների ժամանակ ստացած գիտելիքները համոզմունք դարձնելու, վերջին հաշվով, տիրապետելու մարքս-լենինյան ուսմունքին:

Որպես կանոն պրոպագանդիստը պետք է կարողանա լսարանում ապահովել հանգիստ, գործարար, միմյանց նկատմամբ հարգալից վերաբերմունքի մթնոլորտ: Եթե հարցերի քննարկման ընթացքում ունկնդիրը տալիս է թերի կամ ոչ ճիշտ պատասխաններ, փորձված պրոպագանդիստը չի շտապում նրան հուշել, այլ ձգտում է լրացուցիչ հարցերով օգնել նրան՝ ինքնուրույն գտնելու և շարադրելու ճիշտ պատասխանը: Դա էլ վկայությունն է պրոպագանդիստի մանկավարժական հմտության, որը պարապմունքների ժամանակ օգնում է ունկնդիրներին մտածելու ստեղծագործաբար: Այդպիսի հատկանիշներով է օժտված № 2978 ավտոշարասյան մարքսիզմ-լենինիզմի հիմունքների դպրոցի պրոպագանդիստ Արամ Գևորգյանը: Հիսուն տարի առաջ զինվորագրվելով կոմկուսակցությանը՝ նա դեռևս 1935 թվականին, Մոսկվայի սննդի արդյունաբերության ակադեմիայում ուսանելիս, ստանձնել է պրոպագանդիստի պատվավոր պարտականությունը, որն այսօր էլ նրա կուսակցական գլխավոր հանձնարարությունն է: 1970 թվականին, աշխատանքի անցնելով շրջանի № 3 տեխնիկական ուսումնարանում, որպես արտադրական ուսուցման վարպետ, Ա. Գևորգյանը ուսումնական տարվա նախօրյակին սրտի թելադրանքով մտավ կուսշրջկոմի պրոպագանդայի և ագիտացիայի բաժին և խնդրեց իրեն պրոպագանդիստական աշխատանք հանձնարարել: Նրա խնդրանքը բավարարվեց: Եվ ահա տասը տարի հմուտ պրոպագանդիստը ղեկավարում է ավտոշարասյան մարքսիզմ-լենինիզմի հիմունքների դպրոցը: Ա. Գևորգյանն իր բարեխղճությամբ, պատասխանատվության բարձր զգացումով դարձել է այդ կոլեկտիվի անբաժան անդամը, ավագ ընկերն ու խորհրդատուն:

Յուրաքանչյուր պարապմունքի նախապատրաստվելիս պրոպագանդիստը հաշվի է առնում ունկնդիրների նախասիրություններն ու ցանկությունները, կազմում մանրամասն կոնսպեկտ, ընթերցում սկզբնաղբյուրներն ու լրացուցիչ գրականությունը: Պարապմունքի պլանկոնսպեկտում սովորաբար ամփոփում է այն հիմնական հարցերը, որոնք անհրաժեշտ են թեման խորությամբ ուսումնասիրելու, պարապմունքը արդյունավետ ու բովանդակալից անցկացնելու համար: Նա միաժամանակ հարկ է համարում ունկնդիրներին իրազեկ դարձնել երկրի ներքին կյանքում և արտաքին աշխարհում կատարված կարևոր դեպքերին ու իրադարձություններին:

Դպրոցի 28 ունկնդիրներ աշխատանքից հետո շտապում են ձեռնարկության լենինյան սենյակ՝ որևէ նոր բան լսելու և սովորելու ակընկալիքով ու չեն սխալվում: Նրանց մեծ մասը տասնյակ տարիների աշխատանքային փորձ ունեցող վարորդներ են, արտադրության առաջավորներ: Ունկնդիրներ Ռաֆիկ Սարգսյանը, Վարդան Մարտիրոսյանը, Աղվան Գասպարյանը, Երջանիկ Մելքոնյանն արժանացել են սոցիալիստական մրցության հաղթողի կրծքանշանի, Լյուդվիգ Գրիգորյանի հայրենանվեր աշխատանքը բարձր է գնահատվել. նա պարգևատրվել է Լենինի շքանշանով: Իր շատ աշխատանքային ընկերների նման գերակատարելով առաջադրանքները, տալով վառելանյութի, պահեստամասերի ու ավտոդողերի խնայողություն, Լ. Գրիգորյանն ավտոմեքենայի վազքը, առանց հիմնական նորոգման, հասցրել է 900 հազար կիլոմետրի և հնգամյակի եզրափակիչ տարում ձգտում է նվաճել մեկ միլիոն կիլոմետրի ռեկորդային բնագիծը:

Պրոպագանդիստ Ա. Գևորգյանը պարապմունքներն անցկացնում է ակտիվ զրույցի ձևով: Պարապմունքի առաջին մասը նվիրում է անցած թեմայի խոր յուրացմանը, ապա հաղորդում նոր նյութը և ունկնդիրներին առաջադրում կոնկրետ հարցեր: Հարցերի պարզաբանմանը մասնակցում է ունկնդիրների մեծ մասը: Գործի հաջողությանը նպաստում է նաև այն հանգամանքը, որ ունկնդիրների թվում են ավտոշարասյան կուսբյուրոյի քարտուղար Վարդգես Սահակյանը, արհմիության տեղկոմի նախագահ Վահան Սերգոյանը, կադրերի բաժնի վարիչ Արև Հովհաննիսյանը, որոնք իրենց ակտիվ մասնակցությամբ օրինակ են ծառայում մյուսներին: Պատահական չէ, որ պարապմունքից հետո շարունակվում է մտքերի աշխույժ փոխանակությունը, երբեմն էլ՝ ծայր առած բանավեճը:

Քաղաքական ուսուցման և աշխատավորների տնտեսագիտական կրթության ցանցում ընդգրկված մարդկանց թվի անընդհատ ավելացումը, անտարակույս, իր հետ բերում է նոր պահանջներ ու հոգսեր: Եթե 1977—78 ուսումնական տարում կուսակցական ու կոմերիտական ուսուցման, տնտեսագիտական կրթության ցանցում և կոմունիստական աշխատանքի դպրոցներում պրոպագանդիստի պարտականություն էր կատարում 984 մարդ, ապա այժմ պրոպագանդիստների թիվը շրջանում կրկնապատկվել և անցել է 1.900-ից: Չնայած որ նրանցից ավելի քան 83 տոկոսն ունի բարձրագույն կրթություն, հարյուրավոր պրոպագանդիստներ ունեն որոշակի փորձ ու հմտություն, սակայն քիչ չեն նաև այն ընկերները, որոնք առաջին անգամ են ներգրավվել այդ աշխատանքում և դեռևս սովորելու շատ բան ունեն: Հաշվի առնելով այդ հանգամանքը՝ կուսշրջկոմն ու ընկըզբնական կուսկազմակերպությունները հատուկ ուշադրություն են նվիրում պրոպագանդիստների ուսուցմանն ու վերապատրաստմանը, պրոպագանդիստական աշխատանքի լավագույն փորձի ուսումնասիրմանը, ամփոփմանն ու տարածմանը: Նրանց համար գործողության ուղեցույց է Վ. Ի. Լենինի այն դիտողությունը, որ «...չբավականանանք այն հմտությամբ, որ մշակել է մեր մեջ մեր նախկին փորձը, այլ անպայման ավելի առաջ գնանք, անպայման ավելի շատ բան ձեռք բերենք, անպայման ավելի հեշտ խնդիրներից անցնենք ավելի բարդ խնդիրների» (Երկեր, հ. 28, էջ 235):

Շրջկոմի պրոպագանդայի և ագիտացիայի բաժինը մշտապես իր տեսադաշտում է պահում գաղափարական կադրերին ցույց տրվող բազմապիսի օգնության հարցերը: Միայն վերջին երկու ուսումնական տարում պրոպագանդիստների համար կազմակերպվել են սեմինար-պարապմունքներ ինը թեմայի վերաբերյալ, «ՍՄԿԿ XXV համագումարը ՍՍՀՄ ժողովուրդների բարեկեցության հետագա զարգացման ու ամրապնդման խնդիրների մասին» թեմայով գիտագործնական կոնֆերանս. գաղափարական

ակտիվի և պրոպագանդիստների շրջանային ժողովներ: Վերջին ժամանակներս իրենց գործունեությունը զգալիորեն ակտիվացրել են Վ. Ի. Լենինի անվան մետաքսի կոմբինատի, «Էլեկտրասարք» և քաղաքացիական ավիացիայի հայկական հանրապետական արտադրական միավորումների, ինչպես նաև «Էլեկտրոն», տրիկոտաժի № 2 արտադրական միավորումների և համաշինարարական № 1 տրեստի հասարակական հիմունքներով գործող քաղաքական լուսավորության կաբինետները:

Քաղաքական ուսուցման ու տնտեսագիտական կրթության կազմակերպման գործում մեծ անելիքներ ունեն մեթոդխորհուրդները: Նրանք ո՛չ միայն մեթոդական, այլև պրակտիկ օգնություն են ցույց տալիս պրոպագանդիստական կադրերին: Այս առումով հետաքրքրական է շրջկոմի մեթոդխորհրդի գործունեությունը: Դրա նիստերում պարբերաբար լսվում են պրոպագանդիստների, սեմինարավարների հաշվետվություններ, ամփոփվում են քաղպարապմունքների ունկնդրումների արդյունքները: Մեթոդխորհրդի նախաձեռնությամբ կազմակերպվում են բաց դասեր ու կոնսուլտացիաներ, պրոպագանդիստների համար կազմվում քաղուսուցման և տնտեսագիտական կրթության առանձին հրատապ պրոբլեմների, այս կամ այն թեման պարապմունքներում ուսումնասիրելու վերաբերյալ մեթոդական հանձնարարականներ: Ուժեղացել է հսկողությունը պարապմունքների անցկացման նկատմամբ: Մեթոդական խորհրդին կից ստեղծված երկու խմբերում ընդգրկված գաղափարական ակտիվիստների ուժերով ամեն անգամ լսվում է մինչև 50 պարապմունք: Նրանք պրոպագանդայի և ագիտացիայի բաժին են ներկայացնում շրջկոմի մշակած ձևերը, որոնց կտրոնային մասերը իրենց դիտողություններով ու առաջարկություններով մնում են պրոպագանդիստների մոտ:

Պրոպագանդիստական կադրերին ցույց տրվող օգնության և նրանց գործունեության նըկատմամբ հսկողության կարևոր միջոցներից մեկը շրջկոմի բյուրոյի և պրոպագանդայի ու ագիտացիայի բաժնի նիստերում նրանց հաշվետվությունների ու հաղորդումների ունկընդրումն ու քննարկումն են, որոնք իրականացվում են պլանավորված կարգով:

Քաղաքական ուսուցման գաղափարական մակարդակի և արդյունավետության հետագա բարձրացման գործում քիչ նշանակություն չունի պրոպագանդիստական կադրերի բարոյական և նյութական խրախուսումը: Անցած ուսումնական տարվա արդյունքներով խրախուսանքի են արժանացել շրջանի 15 պրոպագանդիստներ ու սեմինարավարներ, իսկ 10-ի լուսանկարները փակցված են շրջկոմի քաղլուսկաբինետի պատվո տախտակին:

ՀԿԿ Շահումյանի շրջկոմն ու սկզբնական կուսկազմակերպությունները պրոպագանդիստական կադրերի ստվար ջոկատի ջանքերն ուղղում են «Գաղափարախոսական, քաղաքական-դաստիարակչական աշխատանքի հետագա բարելավման մասին» ՍՄԿԿ Կենտկոմի որոշման պահանջների կատարմանը, ՍՄԿԿ Կենտկոմի 1979 թ. նոյեմբերյան պլենումի կողմից գաղափարական աշխատողների առջև դըրված լուրջ ու պատասխանատու խնդիրների անթերի լուծմանը:

# ՄԻՇՏ ԶԻՆՎՈՐ

## Ա. Ս. ՀՈՎՀԱՆՆԻՍՅԱՆ

1948-Ի ՆՈՅԵՄԲԵՐԻՆ կուսակցության Ապարանի շրջկոմ ներկայացավ զինվորական շինելը հագին մի երիտասարդ: Նախկին զինվոր, դասակի ագիտատոր Արարատ Ծագոյանը հաստատվեց Վարդենուտի կոլտնտեսության կուսկազմակերպության պրոպագանդիստ: Դպրոցում, ուր նա աշխատում էր որպես ռազմագիտության դասատու, նրան հանձնարարվեց նաև պատի թերթի լույսընծայումը: Մարտաշունչ տարիների հոգնությունը մոռացած զինվորը մի առանձին եռանդով էր կատարում հասարակական նոր պարտականությունները: Աշխատանքին զուգընթաց սովորեց ու ավարտեց Երևանի պետական հեռակա մանկավարժական ինստիտուտի աշխարհագրության ֆակուլտետը, նշանակվեց դպրոցի ուսմասվար:

... Քաղաքական ուսուցման առաջին պարապմունքից անցել է երեսուներկու տարի: Երեք տասնամյակից ավելի անընդմեջ Արարատ Ծագոյանը ղեկավարում է Վարդենուտի կոլտնտեսության կուսկազմակերպության «Մարքսիզմ-լենինիզմի հիմունքներ» դասընթացն ուսումնասիրող քաղդպրոցը: 1979—80 ուսումնական տարվանից դպրոցի ունկնդիրները սկսեցին ուսումնասիրել «Զարգացած սոցիալիզմի սահմանադրությունը» դասընթացը:

Ուսմասվարի առանձնասենյակում ենք: Քիչ առաջ ավարտվեց մանկավարժական խորհրդի նիստը, որտեղ զեկուցումով հանդես էր գալիս ինքը՝ Արարատ Ծագոյանը: Իսկ հիմա պատրաստվում է քաղդպրոցի հերթական պարապմունքին: Առանձնացնում է դիաֆիլմերի ժապավեններ, պլակատներ, երկրի տնտեսական քարտեզը: Անցնելիք թեմայի («Կոլտնտեսությունների և մյուս կոոպերատիվ կազմակերպությունների ու դրանց միավորումների սեփականությունը») մասին պրոպագանդիստն ունկնդիրներին համառոտ պատկերացում է տվել դեռևս նախորդ պարապմունքում: Այսօր նա լսելու է ունկնդիրներից մի քանիսին, հարցերով ամրապնդելու է ստացած գիտելիքները և Վարդենուտի օրինակով պատմելու է կոլեկտիվ տնտեսության առավելությունների ու ձեռք բերած հաջողությունների մասին:

Սկսվում է պարապմունքը: Պրոպագանդիստը դիմում է հանձնարարություններ ստացած ունկընդիրներին: Հանդես են գալիս մեխանիզատոր Մկրտիչ Առաքելյանը, գյուղական սովետի գործկոմի նախագահ Նինել Հարությունյանը, դաշտավարական բրիգադի բրիգադավար Կորյուն Կնյազյանը: Նրանք խոսում են կոլտնտեսային-կոոպերատիվ սեփականության առաջացման ու զարգացման ուղիների, աշխատավորների կամավոր միավորմամբ ստեղծված արտելային տնտեսությունների առանձնահատկությունների, կոլտնտեսային արտադրության միջոցների գոյացման ու պահպանության մասին:

Տնտեսագետ Լյուդվիգ Հարությունյանը անդրադառնում է կոլտնտեսային արտադրության կազմակերպման, տնտեսավարման առավել արդյունավետ ձևերի կիրառման, ագրոարդյունաբերական կոմպլեքսների ստեղծման հարցերին, վերլուծում անհաշվենկատության մի քանի փաստեր, օգտավետ առաջարկություններ անում արտադրվող մթերքների որակական ցուցանիշները բարձրացնելու վերաբերյալ:

Կոլտնտեսության վարչության նախագահ Հաբեթ Հարությունյանն իր խոսքը նվիրում է արտադրության հիմնական միջոց հանդիսացող հողի արդյունավետ օգտագործմանը, շեշտում, որ «Սահմանադրությունը կոլտնտեսություններին և մյուս հողօգտագործողներին պարտավորեցրել է խնամքով օգտագործել ի-

Բայց եթե դիմելու լինենք նենց իրենց՝ լավագույն պրոպագանդիստներին, ապա նրանք ամենից առաջ կհիշատակեն Արարատ Ծագոյանի անունը: Ինչպես ընդունված է ասել, նախկին զինվորը նորից շարքում է՝ միշտ պատրաստակամ և միշտ պարտաճանաչ: Խորհրդավոր գաղտնիքներ չկան Ծագոյանի պրոպագանդիստական աշխատանքում: Մարդը պարզապես սիրում է իր գործը, ողջ էությամբ նվիրված է դրան: Խոսքի պատկերավորությունն ու համոզչականությունը նրա մոտ անխախտ միասնություն են կազմում: Ծագոյանը խոսում է պատկերավոր, խոսքը համեմում կենդանի օրինակներով, հավաստի փաստերով ու թվերով: Յուրաքանչյուր տեսական դրույթին հաջորդում է պրակտիկ հարցադրումը, տեղական կյանքի ճշմարտացի վերլուծությունը: Նրա ուշադրությունից չեն վրիպում արտադրական բնույթի թերությունները, մարդկանց կենցաղն ու ապրելակերպը: Կոլտնտեսային գործերին քաջատեղյակ Ծագոյան-պրոպագանդիստը յուրաքանչյուր պարապմունքը վարում է լրջախոհ ձևով, կոմունիստական կրքոտ համոզվածությամբ: Հենց դրա համար էլ նրան հավատում և սիրում են բոլոր ունկնդիրները:

Արարատ Ծագոյանը յոթ անգամ արժանացել է կուսակցության Ապարանի շրջանային կոմիտեի պատվոգրին, շրջագայել լենինյան վայրերով, եղել առաջնորդի անունը կրող թանգարաններում ու գրադարաններում:

***

Ապրում է մարդը հայրենի Վարդենուտում, ապրում լիարյուն կյանքով: Թեև շա՜տ-շա՜տ են գործերը, բայց նա ամենևին չի նեղսրտում և հասցնում է կատարել հասարակական բազում հանձնարարություններ, մտածել հանրակրթական դպրոցի ուսման բարձր առաջադիմության մասին, ագիտատորի պարտականությամբ լինել կաթնապրանքային ֆերմայում, հետաքրքիր մի զեկուցում կարդալ աշխատավորների համար:

Եվ ամեն անգամ, երբ գյուղի վրա իջնում է խաղաղ երեկոն, հին զինվոր Ծագոյանը նորից շտապում է, յուրովի աշխուժությամբ անցնում ծանոթ փողոցով, քայլերն ուղղում դեպի մշակույթի պալատ: Քիչ հետո այնտեղ, կահավորված սենյակներից մեկում կսկսվի քաղդպրոցի հերթական պարապմունքը:



# ԴԱՎԻԹ ԱՆՀԱՂԹԸ ԵՎ ՆՐԱ ՓԻԼԻՍՈՓԱՅՈՒԹՅԱՆ ՊԱՏՄԱԿԱՆ ՆՇԱՆԱԿՈՒԹՅՈՒՆԸ

(ԾՆՆԴՅԱՆ 1500-ԱՄՅԱԿԻ ԱՌԹԻՎ)

**Ս. Ս. ԱՐԵՎՇԱՏՅԱՆ**
Փիլիսոփայական գիտությունների դոկտոր,
ՀՍՍՀ պետական մրցանակի դափնեկիր

**ՄԵԾԱՆՈՒՆ ՓԻԼԻՍՈՓԱ** և գիտնական Դավիթ Անհաղթը հայ հոգևոր մշակույթի այն երախտավորներից է, որոնց ստեղծագործությունը բախտորոշ դեր է խաղացել գիտության և առհասարակ տեսական մտքի զարգացման գործում:

Դավիթ Անհաղթի փիլիսոփայական ժառանգությունը հայ գիտական մտքի գագաթներից է: Հին և միջնադարյան Հայաստանի փիլիսոփայական գիտության ձևավորման և անկախ գոյության համար նրա աշխատությունները ունեցել են բացառիկ նշանակություն: Անտիկ փիլիսոփայության ավանդույթների պաշտպանությունը, մտածողության աշխարհիկ բնույթը, հումանիզմը, գիտության ուժի հանդեպ ունեցած խոր հավատը, մի շարք առաջավոր, մատերիալիստական գաղափարների զարգացումը Դավիթ Անհաղթին ըստ արժանվույն պատվավոր տեղ ապահովեցին իր ժամանակի առաջադեմ գիտնականների շարքում: Անուրանալի է նրա հսկայական ազդեցությունը հայ միջնադարյան փիլիսոփայության վրա: Սակայն նրա փիլիսոփայության նշանակությունը չի սահմանափակվում հայ իրականությամբ: Նա որոշակի հետք է թողել հարևան ժողովուրդների, հատկապես բյուզանդական, վրացական և պարսկա-արաբական փիլիսոփայական մտքի պատմության մեջ: Դավիթ Անհաղթի ստեղծագործությունը Սովետական Միության ժողովուրդների փիլիսոփայական մտքի պատմության ամենավառ և հնագույն էջերից է:

Դավիթ Անհաղթի զուտ աշխարհիկ փիլիսոփայության տարածումը և արմատավորումը հայ իրականության մեջ նախապատրաստված էր, այսպես կոչված, «հունաբան դպրոցի» գործունեությամբ, մի խումբ գիտնականների, գրողների և թարգմանիչների ջանքերով. 460-ական թվականներից սկսած, մաշտոցյան «թարգմանչաց դպրոցի» գործիչների երկու սերունդներից անմիջապես հետո հոգևոր մշակույթի ասպարեզում մեծ աշխատանք էին ծավալել նրանք: Իրենց ինքնուրույն երկասիրություններով և արժեքավոր թարգմանություններով հունաբան դպրոցին պատկանող գործիչները հայ հին մատենագրության և գիտության մեջ արկանեցին աշխարհիկ մտածողության հիմքերը: Արիստոտելի, Պլատոնի, Փիլոն Աղեքսանդրացու, Դիոնիսիոս Թրակացու, Պորփյուրի, Ափտոնիոսի և անտիկ այլ հեղինակների երկերի թարգմանությունները, որ իրագործել էին հունաբանները V դարի երկրորդ կեսում և VI դարի սկզբում, կարևոր նշանակություն ունեին երկրի մշակութային կյանքի համար: Դրանք կարճ ժամանակամիջոցում բարձրացրին հայ փիլիսոփայական, տեսական միտքը ժամանակի առաջավոր ժողովուրդների գիտության մակարդակին: Եվ միանգամայն օրինաչափ է, որ հին Հայաստանի փիլիսոփայական մտքի խոշորագույն ներկայացուցիչ Դավիթ Անհաղթը հենց այդ միջավայրի ծնունդն է, հունաբան դպրոցի այն երախտավորներից, որոնք հայրենի գիտությունը և գրականությունը զարգացնում էին անտիկ մշակույթի ավանդույթների հիման վրա:

Ըստ միջնադարյան ձեռագրերի, Դավիթ Անհաղթին էին վերագրվում փիլիսոփայական

բովանդակությամբ բազմաթիվ գործեր և անտիկ մտածողների երկերի մի շարք թարգմանություններ: Սակայն բանասիրական և պատմափիլիսոփայական հետազոտությունները վկայեցին, որ Դավթի գրչին են պատկանում հետևյալ չորս աշխատությունները՝ Սահմանք իմաստասիրութեան (կամ Գիրք սահմանաց), Վերլուծութիւն ներածութեանն Պորփիւրի, Մեկնութիւն Ստորոգութեանցն Արիստոտէլի և Մեկնութիւն ի Վերլուծականն Արիստոտէլի: Ինչ վերաբերում է Արիստոտելի, Պլատոնի, Պորփյուրի և այլ անտիկ փիլիսոփաների երկերի հայերեն թարգմանություններին, ապա դրանք կատարված են Դավթից առաջ և արդեն պատրաստի վիճակում օգտագործված են նրա աշխատություններում:

Դավիթ Անհաղթի մասին կենսագրական տվյալները բավականին սուղ են: Հայտնի է, որ նա ծնվել է Արևմտյան Հայաստանում, V դարի 70-ական թվականների կեսերին: Հին հայկական աղբյուրների համաձայն, նրա ծննդավայրն էր Տարոնի Ներգին գյուղը և այդ պատճառով ձեռագրերում հաճախ նա հիշատակվում է նաև որպես Դավիթ Ներգինացի: Երիտասարդ հասակում մեկնել է հունական կողմերը, երկար տարիներ սովորել է Ալեքսանդրիա քաղաքում՝ Օլիմպիոդորոս հռչակավոր փիլիսոփայի դպրոցում, այնուհետև ինքը դասավանդել է նույն քաղաքում, եղել է Աթենքում և Կոստանդնուպոլսում, ուր մասնակցել է փիլիսոփայական բանավեճերին, փայլուն հաղթանակներ տարել և արժանացել Անհաղթ և Եռամեծ փիլիսոփայի պատվավոր կոչման: Արևմտյան գրականության մեջ նա հիշատակվում է նաև որպես Դավիթ Հայ, Դավիթ Արմենիոս՝ աստվածասեր և աստվածային իմաստությամբ օժտված իմաստասեր:

Դավթի երկերը, բացի Անալիտիկայի մեկնությունից, պահպանվել են երկու լեզվով՝ հայերեն և հունարեն: Համեմատական վերլուծությունը ցույց է տվել, որ Դավիթն իր գործերը սկզբնապես գրել է հունարեն: Հայերեն տեքստերը հունարենից կատարված թարգմանություններ են: Սակայն այն հանգամանքը, որ հայերեն տարբերակները երևան են եկել գրեթե միաժամանակ, VI դարի առաջին կեսում, վկայում է հեղինակային թարգմանությունների կամ էլ հեղինակի կողմից հունաբան դպրոցի թարգմանիչների ընդհանուր ղեկավարության մասին: Այդ իսկ պատճառով հավաստի պետք է համարել հին հայկական աղբյուրների հաղորդումն այն մասին, որ Դավիթ Անհաղթը՝ հունական աշխարհում մեծ հռչակ ու հեղինակություն վաստակած փիլիսոփան, ծեր հասակում է վերադարձել Հայաստան և հայ հասարակության լուսավորյալ խավերի շրջանում եռանդուն գործունեություն ծավալել աշխարհիկ փիլիսոփայական գիտելիքների և իր ուսմունքի տարածման նպատակով: Նրա այդ գործունեությունը հանդիպեց պահպանողական, կղերական շրջանների դիմադրությանը: Ամենայն հավանականությամբ, Դավիթ Անհաղթի աշխարհիկ փիլիսոփայությունը և ազատամտությունն են պատճառ հանդիսացել հայոց եկեղեցու մոլեռանդ ներկայացուցիչների դժգոհության և հալածանքների համար: Նա ստիպված է լինում հեռանալ Հայաստանի հյուսիսային ծայրագավառը և մեկուսանալ Հաղպատի դժվարամատչելի հին մենաստանում: Սակայն Դավիթը հասցնում է կատարել իր խնդիրը: Նրա ուսումնասիրությունները լայնորեն տարածվում և վճռական դեր են խաղում այն ժամանակաշրջանի փիլիսոփայական գիտության ձևավորման գործում:

Դավիթ Անհաղթի երկերի, նրա աշխարհիկ հայացքների և անտիկ գիտության առաջավոր ավանդույթների տարածման շնորհիվ հին Հայաստանի փիլիսոփայական միտքը կարողացավ դուրս գալ քրիստոնեական աստվածաբանության ոլորտից և ինքնուրույն ճանապարհ հարթել: Հին հայկական փիլիսոփայության ձևավորման և հետագա զարգացման գործում Դավթի երկերի խաղացած բացառիկ դերը բացատրվում է նաև այն հանգամանքով, որ նրա նորպլատոնական հայացքները ներդաշնակում էին արևելյան-քրիստոնեական եկեղեցու հելլենականացման պրոցեսին: Հայաստանում այդ պրոցեսն արտահայտվել է ինչպես կրոնադավանաբանական գրականության, այնպես և պատմագրության, փիլիսոփայական մտքի և հոգևոր մշակույթի այլ ասպարեզներում: Լինելով հելլենականացած հայ մտածող, Դավիթ Անհաղթն իր ժամանակակիցների մեջ ամենից լավ և ճշտորեն արձագանքեց այդ երևույթին և պատմամշակութային առումով անգնահատելի ներդրում կատարեց հարազատ ժողովրդի մտավոր կյանքում:

Լինելով Ալեքսանդրյան դպրոցի սան, Դավիթ Անհաղթը նորպլատոնական ուսմունքի հետևորդներից էր, մի ուսմունք, ուր Պլատոնի հայացքները զուգորդվում էին Արիստոտելի, Պյութագորասի և ստոիկների գաղափարների հետ՝ իդեալիզմի հիմքի վրա: Սակայն այդուհանդերձ, Դավթի փիլիսոփայությունը հայ իրականության մեջ հիմնականում հանդես էր գալիս որպես արիստոտելյան գաղափարների հաղորդիչ, որովհետև Ալեքսանդրյան դպրոցը, ուր իր գիտական մկրտությունն էր ստացել Դավիթը, պատկանում էր նորպլատոնականության այն ուղղությանը, որը, ի տարբերություն նորպլատոնական այլ դպրոցների, գտնվում էր արիստոտելյան փիլիսոփայության առավել զորեղ ազդեցության տակ: Դրանով պետք է բացատրել մի շարք մատերիալիստական դրույթների առկայությունը Դավթի հայացքներում: Ընդհանուր առմամբ V—VI դարերի ալեքսանդրյան նորպլատոնականության գնահատականը, որպես նորպլատոնականացված արիստոտելիզմի, առանց որևէ էական վերապահումների պետք է տարածել նաև Դավթի փիլիսոփայության վրա:

Դավիթ Անհաղթի ժառանգությունն ընդգրկում է փիլիսոփայական գրեթե բոլոր բնագավառները՝ գոյաբանությունը, իմացաբանությունը, տրամաբանությունը, հոգեբանությունը, բարոյագիտությունը, գեղագիտությունը, գիտությունների դասակարգման և փիլիսոփայության հետ դրանց ունեցած առնչության խնդիրը և այլն: Պետք է ասել, որ դրանք բոլորն էլ այս կամ այն չափով շոշափել են Դավթի նախորդները, V դարի հայ ականավոր մտածողներ Մաշտոցը, Եզնիկ Կողբացին, Եղիշեն, Մովսես Խորենացին: Սակայն Դավթի և նրանց միջև էական տարբերությունն այն է, որ փիլիսոփայական գիտության յուրաքանչյուր բնագավառում նա գերազանցեց իր նախորդներին՝ ինչպես պրոբլեմների մասնագիտական դրվածքի մակարդակով, անպես և դրանց ընդգրկմամբ. V դարի քրիստոնեական ջատագովական փիլիսոփայության համեմատությամբ սկզբունքորեն բոլորովին տարբեր էին նրա աշխարհիկ ելակետերն ու հիմնական դրույթները:

Հայ փիլիսոփայության պատմության մեջ Դավիթ Անհաղթը առաջին գիտնականն է, որը զատորոշեց բուն փիլիսոփայության պրոբլեմների շրջանակը, հստակորեն սահմանեց այդ գիտությունը՝ միաժամանակ հաստատելով դրա խնդիրներն ու նպատակները, այսինքն կատարեց այն, ինչ վաղուց արդեն հասունացել էր, բայց որը չէր իրագործել իր նախորդներից և ոչ մեկը: Ընդ որում, այդ կարևոր խնդիրը նա լուծեց՝ բոլորովին հրաժարվելով կրոնական-եկեղեցական նկատառումներից: Փիլիսոփայությունը որպես գիտություն ձեռք բերեց սեփական դեմք, վերջնականապես ձևավորվեց որպես գիտելիքի առանձին մի բնագավառ և որոշարկեց իր տեղը հին և միջնադարյան Հայաստանի գիտությունների համակարգում:

Դավիթ Անհաղթի չորս պահպանված աշխատությունների մեջ ամենակարևորը Սահմանք իմաստասիրութեան (Փիլիսոփայության սահմանումները) երկն է: Դրանում պարունակվող ագնոստիցիզմի և սուբյեկտիվ-իդեալիստական սկեպտիցիզմի քննադատությունը Դավթին հնարավորություն է ընձեռել երկի գլխավոր խնդիրը դարձնել փիլիսոփայության սահմանման պրոբլեմը և ապացուցել ո՛չ միայն աշխարհի ճանաչելիությունը, այլև դրանով զբաղվող գիտության անհրաժեշտությունը՝ մտավոր և բարոյական կատարելության հասնելու համար: Բացահայտելով ագնոստիկների և ռելյատիվիստների, սկեպտիկների և սոփեստների հայացքների սնանկությունը, որոնք ժխտում էին աշխարհի ճանաչման հնարավորությունը, այդ կապակցությամբ հաստատելով փիլիսոփայության գոյության իրավունքը, Դավիթ Անհաղթը հանդես է գալիս որպես գիտության պաշտպան և անտիկ փիլիսոփայության առաջավոր ավանդույթների շարունակող: Նրա հերքած փիլիսոփաների շարքում գլխավորը մ. թ. ա. 365—275 թթ. ապրած սկեպտիցիզմի հիմնադիր Պիհռոն Էլիդացին է, որի հետևորդների դեմ է ուղղված Դավթի քննադատության սլաքը:

Փիլիսոփայությունը որպես գիտություն սահմանելու համար Դավիթ Անհաղթը հայ միջնադարյան տեսական մտքի հետագա զարգացման առումով կատարեց չափազանց կարևոր մի քայլ: Նա դասակարգեց իր ժամանակաշրջանի գիտելիքի բոլոր մասնաճյուղերը և առաջադրեց գիտությունների հիմնավորված մի համակարգ, որը նպաստեց գիտելիքի տարբեր բնագավառների ինքնորոշմանը և դարձավ միջնադարյան աշխարհիկ կրթության հիմքը:

Այդ դասակարգման մեջ կենտրոնական տեղ է գրավում փիլիսոփայությունը, որին կրթության համակարգում նախորդում են քերականությունը, ճարտասանությունը և տրամաբանությունը: Ըստ Դավթի, տրամաբանությունն ինքնին արդեն հանդես է գալիս որպես փիլիսոփայության բաղկացուցիչ մասը և միաժամանակ դրա գործիքը: Տրամաբանության միջոցով գիտությունների նախնական, ստորին աստիճանը կապվում է երկրորդ, բարձրագույն աստիճանի հետ, ուր արդեն հանդես է գալիս բուն փիլիսոփայական գիտությունը, որը բաժանվում է տեսական և գործնական իմաստասիրության: Տեսական փիլիսոփայությունը բաժանվում է բնագիտության (ֆիզիկայի), մաթեմատիկայի և մետաֆիզիկայի (աստվածաբանության): Մաթեմատիկական չորս գիտությունները՝ թվաբանությունը, երաժշտությունը, երկրաչափությունը և աստղաբաշխությունը միջանկյալ կապող օղակ են ֆիզիկայի և մետաֆիզիկայի միջև: Նրանք այն անհրաժեշտ աստիճանն են, որ նախապատրաստում է միտքը նյութական գոյերի ըմբռնումից անմարմին աստվածային գոյերի ըմբռնմանն անցնելու: Գիտությունների համակարգը կառուցվում է փիլիսոփայության շուրջը և դրա ստորաբաժանման և համակարգման պահանջներին համապատասխան: Եվ դա միանգամայն հասկանալի և օրինաչափ է. որովհետև, ըստ Դավթի, «բոլոր բանական

արվեստները, կարիք ունեն բաժանման, սահմանման և ապացուցման, որոնց մայրն է փիլիսոփայությունը» (Դավիթ Անհաղթ, Սահմանք իմաստասիրութեան, քննական բնագիրը աշխատասիրությամբ Ս. Ս. Արևշատյանի, Երևան, 1960, էջ 98):

Մերժելով ագնոստիկների՝ փիլիսոփայությունը որպես գիտություն վերացնելու փորձերը և հաստատելով մարդկային բանականության իրավունքներն ու հնարավորությունները, Դավիթն առաջադրում է փիլիսոփայության վեց սահմանումներ: Առաջին սահմանումը՝ «Փիլիսոփայությունը գիտություն է գոյերի մասին». երկրորդը՝ «փիլիսոփայությունը գիտություն է աստվածային և մարդկային իրողությունների մասին». երրորդը՝ «փիլիսոփայությունը խորհրդածություն է մահվան մասին». չորրորդը՝ «փիլիսոփայությունը աստծուն նմանվելն է ըստ մարդկային կարողության». հինգերորդ սահմանումը՝ «փիլիսոփայությունը գիտությունների գիտությունն է և արվեստների արվեստը». և վեցերորդը՝ «փիլիսոփայությունը սեր է իմաստության հանդեպ» (նույն տեղը, էջ 57): Այս սահմանումները, որ հայ մտածողը վերցրել է անտիկ գիտության դասականներ Պյութագորասից, Պլատոնից ու Արիստոտելից և յուրովի համակարգել ու մեկնաբանել իր խնդիրներին համապատասխան, Դավթի կարծիքով, տալիս են փիլիսոփայության առարկայի, էության ու նպատակի սպառիչ ըմբռնում:

Ըստ Դավթի, մարդուն յուրահատուկ է հիմնականում փիլիսոփայել գոյի և սեփական վարքի մասին: Այդ իսկ պատճառով փիլիսոփայությունը բաժանվում է տեսական փիլիսոփայության, որը զբաղվում է օբյեկտիվորեն առկա գոյերի ճանաչումով, և գործնական փիլիսոփայության, որի նպատակն է ճիշտ վարքի տեր դառնալը, հոգևոր կատարելություն և բարոյական իսկական անաղարտություն ձեռք բերելը:

Փիլիսոփայության՝ տեսականի և գործնականի բաժանվելու մյուս պատճառը, ըստ Դավթի, մարդկային հոգու այն բնորոշ հատկությունն է, որ այն օժտված է երկու կարգի ունակությամբ՝ ճանաչողական և կենդանական: Ճանաչողական ընդունակություններն են զգայությունը, երևակայությունը, կարծիքը, տրամախոհությունը և միտքը, իսկ կենդանական՝ կամքը, ընտրողությունը, հոժարությունը, ցանկությունը և ցասումը: Եթե ճանաչողական ունակությունները հիմք են հանդիսանում իրար հաջորդող և նախապատրաստող տարբեր աստիճանների համար և տանում են անգիտությունից դեպի գիտություն, մասնավոր, եզակի գոյացություններից դեպի համընդհանուր գոյի, սուբստանցի ճանաչում, ապա կենդանական հատկությունները առաքինության, բարոյական վեհ հատկանիշների ձեռքբերման հիմք են, որն իրագործվում է հոգու բացասական հատկությունների՝ ցասումի և ցանկության զսպման, կրքերի սանձահարման միջոցով:

Փիլիսոփայության առաջնահերթ նպատակն է մաքրել մարդկային հոգին և մարել արատավոր կրքերը: Դա «աստվածանմանությանը» հասնելու նախապատրաստական աստիճանն է և նախապայմանը: Կատարյալ մարդը, հատկապես փիլիսոփան, ըստ Դավթի, իրոք նմանվում է աստծուն: Բարությունը, իմաստությունը և կարողությունը՝ սրանք են այն հիմնական հատկանիշները, որ փիլիսոփային նմանեցնում են աստծուն: Որոշելով փիլիսոփայության նպատակը, Դավիթը դրան հիմնականում տալիս է էթիկական կողմնորոշում: Գիտելիքը, չնայած դրա ողջ կարևորությանը և անհրաժեշտությանը, ըստ Դավթի, օժանդակ դեր է խաղում. այն օգնում է հոգեկան կատարելության հասնելուն, որովհետև մարդուն հնարավորություն է ընձեռում տարբերելու սուտը ճշմարտից, չարը՝ բարուց, որպեսզի նա խուսափի չարից: Առաքինությունը, հոգեկան կատարելությունը փիլիսոփայության վերջնական ու գերագույն նպատակն է: Այս կարևորագույն դրույթը, որին ուշադրություն չեն հատկացրել նախորդ հետազոտողները, բնութագրում է Դավթի ողջ աշխարհայեցողությունը և կենտրոնական տեղ ունի նրա փիլիսոփայական կոնցեպցիայում:

Տեսական փիլիսոփայության գերագույն սկզբունքն է խոհականությունը, իսկ գործնական փիլիսոփայության համար գերագույն սկզբունքը է արդարությունը, որն առաջնորդում է մարդուն և մարդկային հասարակությանը դեպի առաքինություն: Ըստ Դավթի, բարին ճշմարտից վեր է, որովհետև ամեն մի բարի բան ճշմարտություն չէ, և պետք է կարողանալ բարու համար երբեմն անտեսել ճշմարտությունը: Գործնական փիլիսոփայության նպատակն է մշտապես ձգտել խուսափելու չարից և նախապատրաստել հոգին՝ սրա զնդանից՝ մարմնից ազատվելու համար: Այդ նպատակին պետք է ծառայեն գործնական փիլիսոփայության երեք բաղկացուցիչ մասերը՝ բարոյագիտությունը (ուսմունք առանձին մարդու ճիշտ վարքի), տնտեսագիտությունը (ուսմունք ընտանիքի և հասարակության տնտեսական կյանքի ճիշտ ղեկավարման) և քաղաքագիտությունը (ուսմունք հասարակության կառուցվածքի լավագույն ձևի և պետական գործերի ղեկավարման մասին):

Փիլիսոփայության հիմնական հարցը գոյաբանական առումով Դավիթ Անհաղթը լուծում է օբյեկտիվ իդեալիզմի դիրքերից: Աստված, ըստ նրա, բոլոր գոյացությունների սկիզբն ու



պատճառն է, մտահասու և աննյութական գոյերի գագաթը: Այդ գոյերի ճանաչումը հնարավոր է միայն զգայապես ընկալվող հասարակ գոյացություններից՝ իրերի անմարմին ձևերի ճանաչման միջով աստիճանաբար բարձրանալու շնորհիվ: Վերասլաց այդ ուղու առաջին աստիճանը նյութական աշխարհի, իրերի ճանաչումն է, որով զբաղվում է տեսական փիլիսոփայության առաջին, ստորին մասը՝ ֆիզիկան, բնագիտությունը: Այդ աստիճանը համապատասխանում է ճանաչման զգայական փուլին. այստեղ լիովին բացահայտվում և դրսևորվում են մարդու զգայարանների կարողությունները: Առանց այդ աստիճանի, պնդում է Դավիթը, անհնար է ճանաչել աշխարհը: Հաջորդ, երկրորդ աստիճանում ճանաչվում են նյութական գոյերի ձևերը՝ դրանց նյութական սուբստրատից անջատ, այնպես, ինչպես մոմն իր վրա վերցնում է մատանու դրոշմը՝ ոչինչ չվերցնելով մատանու նյութից: Այդ երկրորդ աստիճանում անցում է կատարվում զգայականից դեպի բանական ճանաչումը: Վերջին երրորդ աստիճանն է հանդիսանում աննյութ գոյերի ճանաչումը, «ինչպիսիք են աստված, հրեշտակը, բանականությունը, հոգին» (նույն տեղը, էջ 123): Դրանք անմատչելի են զգայական ընկալմանը և ենթակա են միայն բանական ճանաչման:

Ըստ Դավթի, մարդու հինգ զգայարաններն ու բանականությունը լիովին բավարար են ողջ աշխարհի ճանաչման համար: Նա սրամտորեն հերքում է ագնոստիկների՝ փիլիսոփայությունը որպես ճանաչումով զբաղվող գիտություն վերացնելու ձգտումը, ասելով, որ դրա համար նրանք պետք է ապացույցներ բերեն, իսկ այդ արդեն նշանակում է, որ նրանք դիմում են իրենց կողմից վերացվող գիտության, փիլիսոփայության և դրա բաղկացուցիչ մասը հանդիսացող տրամաբանության ծառայություններին: Դրանով իսկ, իրենց կամքին հակառակ, նրանք ցույց են տալիս, որ կա ճանաչում և կա դրանով զբաղվող հատուկ գիտություն:

Մարդու ճանաչողական ունակություններին համապատասխան իմացության պրոցեսն ունի հինգ վերասլաց, իրար նախապատրաստող աստիճաններ: Դրանք են՝ փորձը, փորձառությունը, արվեստը, գիտությունը և փիլիսոփայությունը: Փորձը և փորձառությունը ճանաչման առաջին երկու ձևերն են, որոնք հենվում են զգայության, երևակայության և կարծիքի վրա: Արվեստը ճանաչման զգայական և բանական աստիճանների միջև գտնվող իմացության անցման ձևն է: Այն հենվում է երևակայության, կարծիքի և տրամախոհության վրա: Այնուհետև, ըստ Դավթի, հաջորդում է գիտությունը, կամ գիտական գիտելիքը (հին տերմինով՝ մակացությունը), որը հենվում է տրամախոհության վրա: Իսկ իմացության բարձրագույն ձևը բանականության վրա հենվող փիլիսոփայությունն է, կամ փիլիսոփայական գիտելիքը, որն ամփոփում է աշխարհի ճանաչման ողջ պրոցեսը, օգտագործելով իմացության նախորդ աստիճաններում ձեռք բերած արդյունքները: Այն գործ ունի հավիտենական և աներկբայելի ճշմարտությունների հետ: Փիլիսոփայությունը բացում է մարդու առջև բնության և ողջ աշխարհի էությունը, սկզբունքներով օժտում մյուս գիտությունները, որոնք ունեն ճանաչման նեղ, կոնկրետ բնագավառներ, իրեն վերապահելով և՛ համընդհանուր սկզբունքների մշակումը, և՛ մյուս գիտություններից ստացված ճշմարտությունների համադրումն ու ընդհանրացումը:

Դավիթ Անհաղթի իմացաբանությունը բավականին մոտ է Արիստոտելի իմացության տեսությանը և ներառել է նրա մատերիալիստական դրույթները: Նյութական աշխարհի օբյեկտիվ, գիտակցությունից անկախ գոյության և ճանաչելիության հաստատումը այն հիմնականն է, ինչ բնութագրում է Դավթի իմացաբանությունը: Հայ իմաստասերը մեծ կարևորություն է տալիս աշխարհի ճշգրիտ ճանաչմանը, նրա մասին ճշմարիտ գիտելիքների ձեռքբերմանը, որովհետև այդ ամենն օգնում է մարդուն բնության ճանաչման միջոցով ճանաչել նրա արարչին և դեպի բարոյական կատարելությունը տանող երկար ճանապարհին հստակ տարբերել սուտն ու ճշմարիտը, չարն ու բարին:

Դավիթ Անհաղթը կարևոր դեր է խաղացել հայ իրականության մեջ տրամաբանության ձևավորման գործում: Լինելով առաջին խոշոր տրամաբանը, նա փաստորեն հանդես է եկել որպես այդ գիտության հիմնադիրը հին Հայաստանում: Եթե նրա Փիլիսոփայության սահմանումներ երկը հիմնական աղբյուրն է նրա աշխարհայացքի և փիլիսոփայական համակարգի ուսումնասիրման համար, ապա մյուս աշխատությունները՝ Պորփյուրի Ներածության վերլուծությունը, Արիստոտելի Կատեգորիաների մեկնությունը և Արիստոտելի Անալիտիկայի մեկնությունը բացառապես նվիրված են տրամաբանության հարցերին: Դրանք հսկայական ազդեցություն ունեցան հայ տրամաբանական մտքի շուրջ հազարամյա ընթացքի վրա և չեն կորցրել իրենց գիտական արժեքը նաև մեր օրերում:

Դավիթ Անհաղթի տրամաբանությունն ունի մատերիալիստական կողմնորոշում և սերտորեն կապված է նրա իմացաբանության հետ: Նրա տրամաբանական հայացքները ելնում են Արիստոտելի ուսմունքից, որին նա անվանում

է տրամաբանական գիտության բուն ստեղծող, «որովհետև միայն Արիստոտելը բացահայտեց դատողությունների (տրամաբանական կապերի) եղանակները, ելնելով բուն իսկ իրերից, և ձևակերպեց այդ, այսինքն բացահայտեց օրինաչափությունը» (Դաւիթ Անյաղթ, Մեկնութիւն ի Վերլուծականն Արիստոտէլի. աշխատասիրությամբ Ս. Ս. Արևշատյանի, Երևան, 1967, էջ 64): Այդ առավելապես վերաբերում է հավաքաբանության (սիլլոգիզմի) ուսմունքին, որը ստեղծել է Արիստոտելը:

Հավաքաբանության և ապացուցման դեդուկտիվ մեթոդի մասին ուսմունքները Դավիթը համարում է տրամաբանության միջուկը և երբեմն նույնացնում դրանք, գտնելով, որ տրամաբանության մեջ ամենակարևորը ապացուցման գիտությունն է, որը հենվում է նաև հավաքաբանությունների վրա: «Բնությունը մեզանից ամեն ինչ չի թաքցրել,— գրում է Դավիթը,— որովհետև հակառակ դեպքում հնարավորություն չէր լինի որևէ բան ըմբռնել, և ամեն բան չի արել ակնհայտ, որովհետև այդ դեպքում էլ հետազոտելու անհրաժեշտություն չէր լինի: Բայց բնությունը ամեն բան արել է այնպես, որպեսզի նրան հնարավոր լինի ճանաչել հետազոտության և որոնման միջոցով: Եվ ահա այդ պատճառով էլ մարդկային տրամախոհությունը կարիք է զգում հավաքաբանական մտածողության» (նույն տեղը, էջ 94): Ինչպես որ Արիստոտելի տրամաբանական ուսմունքի հիմնական խնդիրը ապացուցման տեսությունն է, այնպես էլ Դավթի մոտ տրամաբանության վերջնական նպատակն է ապացուցման ուսմունքի, որպես ճիշտ մտածելու և իրերի էությունն ըմբռնելու կարևորագույն միջոցի, զարգացումը: Արիստոտելի օրինակով Դավիթը ապացուցման գիտությունը հակադրում է Պլատոնի դիալեկտիկային, որը տալիս է միայն հավանական գիտելիք:

Հավաքաբանությունը, որպես ճշմարտության ապացուցման միջոց, ինչպես նաև դատողությունները, ըստ Դավթի, ներառում են օբյեկտիվ ճշմարտություն, եթե արտահայտում են առարկաների ու երևույթների օբյեկտիվ կապերը, հակառակ դեպքում դրանք կեղծ կլինեն: «Գոյություն ունի ապացուցման երկու տեսակ,— ասում է Դավիթը,— քանի որ մի դեպքում խոսվում է այն բնության մասին, որը գոյություն ունի իրենից իսկ՝ իրերի մեջ... իսկ ապացուցման մյուս տեսակը գտնվում է սահմանումների մեջ, այսինքն սոսկ մեր դիտողություններում և հայտարարություններում... Այս վերջինը գտնվում է միայն մեր մտքերում, իսկ այն առաջինը՝ նաև իրականության մեջ» (նույն տեղը, էջ 62):

Դատողությունների և ապացուցող հավաքաբանության հետևությունների ճշմարտության չափանիշը դրանց համապատասխանությունն է օբյեկտիվորեն ռեալ կապերին: Սակայն Դավիթը, ինչպես Արիստոտելը, միակողմանիորեն ուռճացնում է դեդուկցիան, հավաքաբանական ապացուցումը և գտնում, որ ճշմարտության որոնման առավել հավաստի միջոցն ընդհանուրից մասնավորին ընթանալն է, ի վնաս հակադիր ուղու՝ ինդուկցիայի: Դավիթը գտնում է, որ մասնավորից ընդհանուրին բարձրանալը հավաստի գիտելիք չի տալիս, քանի որ չի արտացոլում այն, ինչ պարունակվում է իրերի մեջ անհրաժեշտաբար:

Ապացուցումը Դավթի «դիալեկտիկական մեթոդում» ունի կենտրոնական տեղ: Նրան է հատկացվում հիմնական ուշադրությունը, քանի որ այն տալիս է փիլիսոփային անհերքելի ճշմարտություններ և տանում է անգիտությունից դեպի գիտություն: Սակայն Դավիթը չի շրջանցում «դիալեկտիկական մեթոդի» նաև մյուս ձևերը, որոնք բացի ապացուցումից երեքն են՝ բաժանումը, սահմանումը և վերլուծությունը: Անդրադառնալով սահմանմանը, Դավիթը հատկապես շեշտում է, որ սահմանումն ինքը սոսկ տրամաբանական մտածողության կամ զուտ մտահայեցողության արգասիքը չէ: Այն ծնունդ է առել մարդկանց հրատապ, գործնական կարիքներից, մասնավորապես, հողային հարաբերությունների պրակտիկայից, որտեղ հողային տիրույթների սահմանները որոշելու անհրաժեշտությունն աստիճանաբար հանգեցրել է սահմանման բուն գաղափարին նրա վերացական-տրամաբանական ձևով:

Դավթի տրամաբանության մեջ նշանակալից է հասկացության մասին ուսմունքը: Դրան են նվիրված նրա երկու ծավալուն տրակտատները՝ Պորփյուրի Ներածության վերլուծությունը և Արիստոտելի Կատեգորիաների մեկնությունը: Չնայած այդ երկու մեկնողական աշխատություններում քննության են առնվում սկզբունքորեն տարբեր ելակետերից մեկնող Արիստոտելի և Պորփյուրի երկերը, ըստ էության դրանք արիստոտելյան ուսմունքի պաշտպանությունն ու հիմնավորումն են:

Պորփյուրի Ներածության վերլուծության մեջ, անդրադառնալով եզակիի և ընդհանուրի հարաբերակցության պրոբլեմին, նա ասում է. «Ընդհանուրն ապրում և ծագում է մեր մտածողության մեջ, քանի որ նայելով Սոկրատին և ուրիշ մարդկանց, որոնք ունեն միևնույն բնությունը, մենք ասում ենք, թե ընդհանուրը գոյություն ունի» (Դաւիթ Անյաղթ, Վերլուծութիւն Ներածութեանն Պորփիւրի. աշխատասիրությամբ Ս. Ս. Արևշատյանի, Երևան, 1976, էջ 52): Նույնը վերաբերում է նաև ամեն մի



իրի հասկացությանը կամ անվանը, քանի որ այդ իրը պետք է ռեալ կերպով գոյություն ունենա, որպեսզի ստանա իր անվանումը: Այսպիսով, եզակի առարկայի հասկացությունը կամ անվանման ծագումը Դավիթը պայմանավորում է բուն իրի ծագմամբ կամ գոյացությամբ: Եվ այնուհետև. տեսակի կամ սեռի ընդհանուր հասկացության ծագումը իր ներքին պայմանավորված է ռեալ կերպով առկա միմյանց նման կոնկրետ իրերի բազմության գոյությամբ:

Այս հարցում Դավթի մոտ ուրվագծվում է նոմինալիստական տենդենցը, որը բխում է նրա գաղափարական ակունքներից մեկը հանդիսացող Արիստոտելի ուսմունքից: Եվ պատահական չէ, որ ավելի ուշ շրջանի հայ փիլիսոփա-նոմինալիստները, մասնավորապես Վահրամ Րաբունին, Հովհան Որոտնեցին և Գրիգոր Տաթևացին հիմք ընդունեցին Դավթի և նրա գաղափարական նախորդի այս դրույթները և կառուցեցին իրենց նոմինալիստական ուսմունքները:

Դավիթ Անհաղթի համար բնորոշ են տատանումները մատերիալիզմի և իդեալիզմի միջև, մի բան, որը հատուկ էր նրա անտիկ գաղափարական նախորդներից շատերին, մասնավորապես Արիստոտելին և պերիպատետիկյան դպրոցին: Սակայն նույնիսկ այն փոքր ծիլերը, որ Դավթի իմացաբանական-տրամաբանական հայացքներում երևան են գալիս ու նախանշում մատերիալիստական, գիտական մտածողության առատ բերքը, այդ ծիլերն ու սաղմերն ինքնին արդեն մեծ դեր խաղացին հին հայկական ձևավորվող փիլիսոփայության մասնագիտական մակարդակի բարձրացման և հետագա դարերի հայ գիտական մտքի աշխարհիկ միտումների խորացման գործում:

Հայ փիլիսոփայական միտքը ողջ միջնադարի ընթացքում ընդհուպ մինչև XIX դարը կրել է Դավիթ Անհաղթի բարերար ազդեցությունը: Նրա երկերը, Արիստոտելի, Պլատոնի, Փիլոն Ալեքսանդրացու, Պորփյուրի և անանուն մեկնիչի աշխատությունների հետ միասին, ամուր հիմք հանդիսացան միջնադարի իմացաբանական և տրամաբանական ուսմունքների համար, դառնալով օրինակելի դասական ժառանգություն և բազմաթիվ մեկնությունների առարկա: XI—XV դարերի այնպիսի ականավոր մտածողներ, ինչպիսիք են Գրիգոր Մագիստրոսը, Հովհաննես Սարկավագը, Վահրամ Րաբունին, Հովհան Որոտնեցին, Գրիգոր Տաթևացին և Առաքել Սյունեցին, Դավիթ Անհաղթի փիլիսոփայությունից էին քաղում և՛ աշխարհիկ գաղափարների պաշարը, և՛ գիտական մեթոդաբանությունը: Դավթի ժառանգության միջոցով նրանք շարունակում էին պահպանել կապերը անտիկ գիտության հետ, կապեր, որոնք հաստատվել էին վաղ միջնադարում հունաբան դպրոցի ջանքերով:

Դավիթ Անհաղթի գործերը լայնորեն տարածվել էին նաև բյուզանդական ու արաբական գիտական աշխարհում: Նրա հայացքների ազդեցությունն են կրել նշանավոր բյուզանդացի փիլիսոփաներ Հովհան Դամասկացին (VII—VIII դդ.) և Նիկիֆոր Վլեմիդասը (XIII դ.), իսկ արևելյան մահմեդական մտածողներից՝ Ալ-Քինդին (IX դ.), Ալ-Ֆարաբին (X դ.) և ուրիշներ: Հայացքների որոշակի ընդհանրություն է նկատվում նաև Դավիթ Անհաղթի և Իբն Սինայի (X—XI դդ.) միջև: Դավթի Փիլիսոփայության սահմանումները և Պորփյուրի Ներածության վերլուծությունը XVIII դարում թարգմանվել են վրացերեն և որոշակի դեր խաղացել Վրաստանի աշխարհիկ փիլիսոփայական մտքի, հատկապես տրամաբանության զարգացման գործում:

Հետաքրքրությունը Դավիթ Անհաղթի գիտական ժառանգության հանդեպ հետզհետե ուժեղանում է: Հատուկ հիշատակման արժանի է այն փաստը, որ նրա փիլիսոփայությանը նվիրված հետազոտությունները, աշխատությունների քննական բնագրերի և թարգմանությունների հրապարակումը, որ իրականացվել են վերջին տասնամյակների ընթացքում, սովետահայ պատմափիլիսոփայական գիտության զարգացման կարևոր փուլերից են: 1975 թ. նրա երկերի միհատորյակի լույսընծայումը «Փիլիսոփայական ժառանգության» համամիութենական մատենաշարում ռուսերեն թարգմանությամբ լայն ճանաչում բերեց հայ մեծ իմաստասերին և նրա ստեղծած հոգևոր արժույթները դարձրեց Սովետական Միության բոլոր ժողովուրդների սեփականությունը:

Սովետական Հայաստանի գիտական հասարակայնությունը, եղբայրական մյուս հանրապետությունների հետ միասին, հանդիսավորությամբ նշում է Դավիթ Անհաղթի ծննդյան 1500-ամյակը, արժանին հատուցելով ազգային և համամարդկային նշանակություն ունեցող նրա գիտական մեծ վաստակին:

# ՀԱՅ ԲՆԱՓԻԼԻՍՈՓԱՅԱԿԱՆ ՄՏՔԻ ԱԿՈՒՆՔՆԵՐԻ ՄՈՏ

Է. Լ. ԴԱՆԻԵԼՅԱՆ

**ՎԱՂ ՄԻՋՆԱԴԱՐՅԱՆ** հայ գիտությունը V—VII դդ. զարգանում էր՝ հարազատ մնալով անտիկ գիտության առաջադեմ ավանդույթներին։

Անտիկ գիտության ժառանգության մեջ առաջատար էր փիլիսոփայության ընդհանուր համակարգում հանդես եկող տիեզերագիտությունը։ Անդրադառնալով աշխարհագրական և տիեզերագիտական հայացքների զարգացմանն անտիկ դարաշրջանում, կարելի է նշմարել այն հիմքը, որը նախադրյալներ ստեղծեց դրանց զարգացման համար վաղ միջնադարյան Հայաստանում։ Անտիկ գիտության ընդհանուր տեսական հիմունքների զարգացման մարզում կարևոր տեղ էին գրավում կոսմոգոնիական հայացքները հին Հունաստանում։ Կոսմոգոնիական և աշխարհագրական տեսությունները, հանդես գալով փիլիսոփայության ընդհանուր համակարգի մեջ, պայմանավորեցին տիեզերագիտության առաջացումը։ Գիտության այդ բնագավառի զարգացման գործում նշանակալից դեր խաղաց Արիստոտելը (մ. թ. ա. 384—322 թթ.)։ Նա գիտականորեն հիմնավորեց Երկրի գնդաձևության գաղափարը։

Երկրի, որպես տիեզերական մարմնի, ուսումնասիրությունը հանգեցրեց աստղագիտության զարգացմանը, որն առավել ցայտուն արտահայտվեց Եվդոքսոս Կնիդացու (մ. թ. ա. 406—355), Արիստարքոս Սամոսացու (մ. թ. ա. 320—250 թթ.), Ապողոնիոս Պերգացու (մ. թ. ա. 250—205 թթ.) և Հյուպարքոսի (մ. թ. ա. 160—125 թթ.) աշխատություններում։ Քարտեզագրության հիմնադիրներից մեկը՝ Հյուպարքոսը, գտնում էր, որ մաթեմատիկան պետք է առաջնակարգ դեր խաղա երկրային մակերևույթի գրաֆիկ պատկերման մեջ։ Անտիկ գիտության վերջին խոշոր ներկայացուցիչն էր Կղավդիոս Պտղոմեոսը (մոտ 83—161 թթ.)․ ընդհանրացնելով իրեն հասած տիեզերագիտական, աշխարհագրական և քարտեզագրական բնույթի տեղեկությունները՝ նա ստեղծեց Երկրի ու Տիեզերքի մասին գիտության համակարգը։

Վաղ միջնադարում տիեզերագիտական գիտելիքների ընդհանուր տեսական հիմունքների զարգացման մակարդակի չափանիշը անտիկ գիտության նվաճումների յուրացման աստիճանն է։ Հայ իրականության մեջ տիեզերագիտական հայացքները, որոնց հիմքում ընկած է Երկրի և տիեզերական մյուս մարմինների գնդաձևության գաղափարը, առավել ցայտուն դրսևորվել են V դարում Դավիթ Անհաղթի և Գյուտ կաթողիկոսի, իսկ VII դարում Անանիա Շիրակացու աշխատություններում։

Հին հայկական փիլիսոփայության աշխարհիկ ուղղության հիմնադիրն իրավամբ համարվում է Դավիթ Անհաղթը։ Հետևելով անտիկ գիտության ավանդույթներին՝ մեծ մտածողն իր փիլիսոփայական երկերում լայնորեն համադրում էր գիտելիքների տարբեր բնագավառներից եկող դրույթները։ Դավիթ Անհաղթը բուն փիլիսոփայական խնդիրների հետ մեկտեղ անդրադարձել է նաև տիեզերագիտական կարգի որոշ դրույթների, որոնք մեծ արժեք ունեն վաղ ֆեոդալական դարաշրջանի բնափիլիսոփայական մտքի ձևավորման պատմությունն ուսումնասիրելու համար։

Բնության երևույթների գիտական մեկնաբանման ձգտումն այն առաջադիմական սկզբունքն էր, որն ակնբախ էր անտիկ դարաշրջանի և Հայաստանի հունաբան դպրոցի գիտնականների հետազոտություններում։ Ինչպես նշել է Հ. Մանանդյանը, հունաբան դպրոցի ներկայացուցիչները «լինելով առանձնահատուկ մի երևույթ մեր հնագույն մատենագրության, այնուհետև դարեր շարունակ ազդել են թե՛ հայ մտքի և թե հոգեկան մշակույթի վրա»[1]։

Բնական ճանապարհով բնության զարգացման ուսումնասիրության առաջին աստիճանի վրա գիտնականները դնում էին տարրերի առաջացումը և դրանց փոխազդեցությունը։ Հին մտածողները գտնում էին, որ նյութական աշխարհի հիմքում ընկած էին չորս տարրեր՝ կրակ, օդ, ջուր, հող։ Արիստոտելը նշում էր, որ տարրերի մասին եղած հասկացությունը վերջնականապես ձևավորել է Էմպեդոկլեսը (մ. թ. ա. 495—435 թթ.)։ Արիստոտելն իր հերթին հանգամանորեն անդրադառնում է այդ խնդրին և տարրերի տեսության լուծումը տալիս է այն ձևով, ինչպես իր հիմնական եզրակացությունները հանդես են գալիս նրա հետևորդների երկերում։ Այսպես, անդրադառնալով իմաստասիրության սահմանմանն ըստ Արիստոտելի, Դավիթ Անհաղթը գրում է, որ այն «առնլով զըստ գիտութեան զնիւթ և զտեսակ, զսկզբունս ամենայնի բացակատարէ՝ զչորս տարերս...» («ուսմունքի համաձայն վերցնում է նյութը և ձևը, բացահայտում է բոլոր իրերի հիմքը՝ չորս տարրերը...»)[2]։ Իսկ մեկ այլ տեղ նշում է. «Ի չորից տարերցդ բաղկացեալ գոյ մարմին, զորոյ զպատճառսն բնական իմաստասէրն գիտէ»[3] («Մարմինը բաղկացած է չորս տարրերից, որի պատճառը գիտե բնափիլիսոփան»)։ Իր հերթին Գյուտը, որը Դավիթ Անհաղթի ժամանակակիցն էր, մեծ նշանակություն տալով բնական գիտություններին, դրանց իմացությամբ էր պայմանավորում նյութական աշխարհի ճանաչումը, որի հիմքում նա նույնպես ընկած էր համարում չորս տարրերը։ Իր նամակում, ուղղված Աղվանից թագավոր Վաչեին (մինչև 462 թ.), նա գրում է. «...բանս զչորեքնիւթեանս աշխարհ ոչ կարէ ասել։ Եւ այս վիճակ ոչ ամենեցուն, այլ որք քաջն դեգերացն յուսումնասիրութեան՝ ի թուականին, յերկրաչափականին, յաստեղաբաշխականին, ի բժշկականին...» («Խոսքը ի վիճակի չէ չորս նյութից կազմված աշխարհը ներկայացնել։ Եվ այս ամենքին չի վիճակվում, այլ նրանց է բաժին ընկնում, որոնք ջանասիրաբար զբաղվեցին գիտություններով, այսինքն՝ թվաբանությամբ, երկրաչափությամբ, աստղաբաշխությամբ, բժշկությամբ...»)[4]։

Արիստոտելի այն դրույթը, թե տարրերն առաջացել են մեկը մյուսից, Դավիթը տրամաբանորեն փորձում է հետևյալ կերպ բացատրել. «և թէպէտ և ասես զջուր ի հրոյ լինել, սակայն յառաջագոյն գոյր հուրն. եթէ ասես ի ջրոյ լինել օդ, այլ սակայն յառաջագոյն գոյր ջուրն։ Արդ, յաղագս այսորիկ պատասխանատրութիւն, եթէ է ինչ մեջ, որ ոչ յոչուրեքէ յոչերբէքէն է, և ոչ դարձեալ զգոյն ունի յինքեան, այլ ընդ մեջ երկաքանչիւրոց ծայրիցն է, որ զօրութեամբ կոչի»[5] («չէ որ եթե դու ասում ես ջուրն առաջանում է կրակից, դրանով իսկ դու ընդունում ես արդեն, որ սկզբից գոյություն ուներ կրակը, իսկ եթե ասում ես, որ ջրից առաջանում է օդը, դրանով ընդունում ես, որ ջուրն ավելի առաջ է գոյություն ունեցել։ Կա մի բան, որ գտնվում է մեջտեղում, այսինքն չի պատկանում ոչ մի ձևով գոյություն չունեցող բաների թվին, բայց նաև ինքը գոյություն չունի, այլ գտնվում է այդ երկու ծայրամասերի մեջտեղում, որը կոչվում է հնարավորությամբ գոյություն ունեցող»)։

Արիստոտելը գտնում էր, որ տարրերի հակադարձ հատկությունների առկայությամբ է պայմանավորված անընդհատ առաջացումը և ոչնչացումը տիեզերքում։ Նա գրում է. «Չորս տարրերի գոյությունից հետևում է, որ առաջացումը պետք է լինի այն պատճառով, որ դրանցից ոչ մեկը հավերժ չէ, քանի որ հակառակությունները գործում են երկուստեք և կործանարար են մեկը մյուսի համար»[6]։

Արիստոտելի տարրերի տեսության հիման

---

[1] *Հ. Մանանդյան.* Հունաբան դպրոցը և նրա զարգացման շրջանները, *Վիեննա, 1923, էջ 3 (օգտագործված աղբյուրները վկայակոչված են հապավումով)։*

[2] *Դաւիթ Անյաղթ,* Սահմանք իմաստասիրութեան *համահավաք քննական բնագիրը, թարգմանությունը գրաբարից ռուսերեն, առաջաբանը և ծանոթությունները Ս. Ս. Արևշատյանի, Երևան, 1960, էջ 94 (աշխարհաբար թարգմանությունը այստեղ և այսուհետև Ս. Ս. Արևշատյանի)։*

[3] *Նույն տեղը, էջ 52։*

[4] *Մովսեսի Կաղանկատուացւոյ* Պատմութիւն Աղուանից աշխարհի, *Թիֆլիս, 1912, էջ 31 (Մովսես Կաղանկատվացի,* Պատմություն Աղվանից աշխարհի, *թարգմ. Վ. Առաքելյանի, Երևան, 1969, էջ 17) տե՛ս Է. Լ. Դանիելյան* V դարի տիեզերագիտական մի պատառիկ, *«Լրաբեր» (հաս. գիտ.) № 12, 1975, էջ 100։*

[5] *Դաւիթ Անյաղթ,* Վերլուծութիւն «Ներածութեանն» *Պորփիւրի, համահավաք քննական բնագիրը, թարգմանությունը գրաբարից ռուսերեն, առաջաբանն ու ծանոթությունները Ս. Ս. Արևշատյանի, Երևան, 1976, էջ 142։*

[6] *Արիստոտել, III. 2։ Ընդհանուր մեթոդոլոգիական տեսանկյունից հետաքրքիր է Դավիթ Անհաղթի հետևյալ միտքը. «բաժանականքն ապականութեան գոն արարչականք, իսկ բաղկականքն՝ բաղկացութեան» (Դաւիթ Անյաղթ, «Վերլուծութիւն «Ներածութեանն» Պորփիւրի», էջ 130) («բաժանական հատկանիշները ապականության արարիչներ են, իսկ բաղկացական հատկանիշները՝ գոյացման»)։*

մեծ ավանդ էր անտիկ տիեզերագիտության մեջ: Դրա և դրանից բխող այլ դրույթների արտացոլումը Անանիա Շիրակացու տիեզերագիտական աշխատություններում կարևոր և առաջադիմական երևույթ էր վաղ միջնադարյան գիտության համար: Հետևելով Արիստոտելի և Պտղոմեոսի երկրակենտրոն ուսմունքին, որի ռացիոնալ հատիկն էր Երկրի գնդաձևության գաղափարը, Անանիա Շիրակացին ընտրում է հետազոտության առավել ճիշտ ճանապարհ, որը տանում էր դեպի նյութական աշխարհի ճանաչողությունը: Անանիա Շիրակացու տիեզերագիտական աշխատությունները ամփոփում են վաղ միջնադարյան Հայաստանի բնափիլիսոփայական մտքի նվաճումները:



Адрес редакции: 375033, Ереван 33, Барекамутян 59 г.

Խմբագրության հասցեն՝ 375033, Երևան—33, Բարեկամության 59 գ: Հեռախոսներ՝ գլխավոր խմբագրի տեղակալ՝ 27—25—29, պատ. քարտուղար՝ 27—12—92, պրոպագանդայի և էկոնոմիկայի բաժիններ՝ 27—37—80, կուսակցական կյանք և կուլտուրայի բաժիններ՝ 27—19—80, գրական աշխատողներ՝ 27—60—64:

ՎՖ 04741 Պատվեր 952 Թղթի չափսը 70×108¹/₁₆: Տիրաժ՝ 16.497 Գինը՝ 20 կոպ.: Տպ. 6 մամուլ, մամուլում 68840 նիշ: Ստորագրված է տպագրության 29/IV 80 Թ.

ՀԿԿ Կենտկոմի հրատարակչության տպարան, Ալ. Խանդիկյան փող. № 28:

## ՆՈՐ ԳՐՔԵՐ

Լ. Ի. ԲՐԵԺՆԵՎ— Մեր կուրսը խաղաղ, ստեղծարար աշխատանքն է: *Ճառ Մոսկվայի Բաումանյան ընտրական օկրուգի ընտրողների նախընտրական ժողովում, 1980 թ. փետրվարի 22-ին: «Հայաստան» հրատ., 1980:*

Հայկական սովետական հանրագիտարան: *Հ. 5: Ե., ԳԱ հրատ., 1980:*

Բ. ՅԱՐՈՑԿԻ— Դմիտրի Ուլյանով: *«Հայաստան» հրատ., 1980:*

Մ. ՍԱՐՅԱՆ— Գրառումներ իմ կյանքից: *Ե., «Սովետական գրող», 1980:*

Վ. ՄԱԹԵՎՈՍՅԱՆ— Մարտիրոս Սարյան: *Գրքային նկարազարդումները: Ե., «Սովետական գրող», 1980:*

ԴԱՎԻԹ ԱՆՅԱՂԹ— Երկասիրութիւնք փիլիսոփայականք: *(Համահավաք քննական բնագրերը և առաջաբանը Ս. Ս. Արևշատյանի): Ե., ԳԱ հրատ., 1980:*

Վ. ՍՈՒԽՈՄԼԻՆՍԿԻ— Ինչպես դաստիարակել իսկական մարդ *(խորհուրդներ դաստիարակներին): Ե., «Լույս» հրատ., 1980:*

Ա. ՏԵՐՏԵՐՅԱՆ— Երկեր: *ԵՊՀ հրատ., 1980:*

ԷԴ. ՋՐԲԱՇՅԱՆ— Գրականության տեսություն: *ԵՊՀ հրատ., 1980:*

Հայ ազգագրություն և բանահյուսություն: *Նյութեր և ուսումնասիրություններ, №10, Ե., ԳԱ հրատ., 1980:*

Ռ. ՄԵԼԻՔՍԵԹՅԱՆ— Մոսկվան օլիմպիադայի մայրաքաղաք: *«Հայաստան» հրատ., 1980:*

Գ. ԱՎԱԳՅԱՆ— Երևանի դյուցազնական քայլերը: *«Հայաստան» հրատ., 1980:*

Ս. ԲՈՒՆԻԱԹՅԱՆ— *Հայաստանը և սելջուկները XI—XII դդ: Ե., ԳԱ հրատ., 1980:*

Բ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ— XIX—XX դարերի հայ թատրոնի տարեգրություն *(1801—1922): Հ. 1 (1801—1900): Ե., ԳԱ հրատ., 1980:*

В. И. ЛЕНИН — **О культуре.** М., Политиздат, 1980.

Л. И. БРЕЖНЕВ — **Наш курс—мирное созидание.** Речь на встрече с избирателями Бауманского избирательного округа г. Москвы 22 февраля 1980 г. М., Политиздат, 1980.

**Дело Ленина живет и побеждает.** М., «Знание», 1980.

Н. БАЛАЦКИЙ и В. ТАЛАЛАЕВ — **КПСС—организатор колхозного строя.** М., Политиздат, 1980.

Л. ГАТОВСКИЙ — **Вопросы развития политической экономии социализма.** М., «Наука», 1979.

С. ТЮТЮКИН — **Революция 1905—1907 гг. в России и мировое революционное движение.** М., «Знание», 1980.

А. АРБАТОВ — **Безопасность в ядерный век и политика Вашингтона.** М., Политиздат, 1980.

Գինը՝ 20 կ.
Индекс 77783

ISSN 0130—8114

# ԳԻՏՈՒԹՅԱՆ ԵՎ ՏԵԽՆԻԿԱՅԻ ՆՈՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ

## ՕԴԵՐԵՎՈՒԹԱԲԱՆՆԵՐԻ ԵՎ ԲԺԻՇԿՆԵՐԻ ԴԱՇԻՆՔԸ

*Մոսկվայի կուրորտոլոգիայի և ֆիզիոթերապիայի կենտրոնական գիտահետազոտական ինստիտուտում կազմակերպվել է հատուկ ծառայություն, որն օդերևութաբանական կանխագուշակման հիման վրա կազմում է բժշկաօդերևութաբանական բյուլետեն և տալիս այն բժշկական մի շարք հաստատությունների, այդ թվում՝ շտապ օգնության ծառայությանը։ Բժշկաեղանակային այդ բյուլետենում նշվում են որոշակի հիվանդություններ ունեցող հիվանդների ինքնազգացման հնարավոր փոփոխությունները, դրանց կանխարգելման միջոցների մասին, խորհուրդներ բժիշկներին, թե եղանակի փոփոխման համեմատ ինչպիսի ուղղումներ է նպատակահարմար կատարել բուժման կուրսում։*

*Ինստիտուտի մասնագետներն այդ կանխագուշակումները մշակում են՝ սերտորեն համագործակցելով Ա. Ի. Վոեյկովի անվան գլխավոր գեոֆիզիկական աստղադիտարանի գիտնականների հետ։ Մոսկվացիների փորձը տարածվում է և երկրի այլ քաղաքներում, ինչպես՝ Մերձբալթիկայում, Ուկրաինայում, Սիբիրում։*

## ԵՐԱԺՇՏՈՒԹՅՈՒՆԸ ՉԵԶՈՔԱՑՆՈՒՄ Է ԱՂՄՈՒԿԸ

*Մինսկի բրդեղենի կոմբինատի տեքստիլագործներին այլևս չի խանգարում մանածագործական հաստոցների աղմուկը։ Արտադրական աղմուկի «խլացմանն» օգնեցին երաժշտական հաղորդումները, որոնք բանվորները լսում են անհատական փոքր ռադիոընդունիչներով։ Փոքր ականջակալներն ավտոմատորեն կիսով չափ նվազեցնում են ամեն մի արտաքին աղմուկ, իսկ հաղորդումների պահին մարդն, ընդհանրապես, աղմուկ չի լսում։ Երաժշտական բոլոր ծրագրերն ընտրված են բժիշկների, հոգեբանների, ֆիզիոլոգների, երաժշտագետների հանձնարարականով։*

## ԼԱԶԵՐՆ ՍՏՈՒԳՈՒՄ Է ՄԹՆՈԼՈՐՏԸ

*Սովետական գիտնականների մի խումբ, մթնոլորտում գազային միացությունների քանակը որոշելու նպատակով, մշակել է արդյունավետ ու պարզ մի եղանակ, որի օգնությամբ ճշտվում է լազերային լույսի կլանման աստիճանը ուսումնասիրվող գազում։*

*Այժմ ստեղծվել է լազերային շարժական սարք՝ շրջակա միջավայրի պահպանության ծառայության համար։ Այդ սարքը հնարավորություն է ընձեռում ուսումնասիրելու մթնոլորտի աղտոտված տեղամասերը, հետևելու արդյունաբերական ձեռնարկությունների արտանետումներին՝ բնակելի շրջանների, անտառային զանգվածների, այգիների և արգելոցային գոտիների օդային ավազանները աղտոտումից պաշտպանելու համար հանձնարարականներ մշակելու նպատակով։*

*Հաշվարկը ցույց է տվել, որ լազերային շարժական սարքը ամենից լավ բանում է մինչև 8 կմ տարածության վրա։*

## ԱՐԵՎԱՊԱՇՏՊԱՆ ԱԿՆՈՑՆԵՐԸ՝ ՀԵՌՈՒՍՏԱԴԻՏՈՂԻՆ

*Երևի շատերն են լսել բժիշկների խորհուրդը՝ երկար չնստել հեռացույցի առջև. էկրանի լույսը վատ է ազդում աչքերի վրա։ Սակայն շատ քչերն են հետևում այդ խորհրդին։ Բժիշկները որոնում են կոմպրոմիսային լուծումներ։ Օրինակ՝ օգտագործել արևապաշտպան ակնոցներ։ Քեմբրիջի համալսարանի ֆիզիոլոգիական լաբորատորիայի հետազոտողներն ապացուցել են, որ լուսաֆիլտրերը ո՛չ միայն նվազեցնում են աչքերի հոգնածությունը, այլև բարձրացնում են սև-սպիտակ պատկերի որակը։ Գունավոր ապակին պարզեցնում է էկրանի օպտիկական ֆոնը, այսինքն՝ կետերի ու գծերի անհարկի ռեկայծումները։*

*Անգլիացի մասնագետները գտնում են, որ արևապաշտպան ակնոցներն առաջին հերթին անհրաժեշտ են արդյունաբերական հեռուստատեսության օպերատորներին։*